ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԹ.

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԲՈՒՍԱԿԻ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1925

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԲՈՒՍԱԿԻ

ԳՐԵՑ

ՆՈՐԱՅՐ Ն. ԲԻՒԶԱՆԴԱՑԻ





ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1925

## ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆՍ ԱՌԹԻՒ

1895ին լոյս տեսաւ առանձին հատորով Հ. Ղ. Ալիշանի Հայկական Բուսաբանութիւնը, որ մաս առ մաս տպուած էր նախնաբար Բազմավէպի մէջ։ Հ. Ալիշան հաւաքած էր հոն հին եւ նոր գրականութենէն բոյսերու բոլոր ծանօթ եւ անծանօթ անունները եւ փորձած էր մեկնել եւ նոյնացնել ծանօթ բոյսերու հետ։ Գործն իր մէջ առաջին փորձն ներկայացնելով՝ չէր կրնար բնականաբար ընծայել նիւթին սպառումը ամէն տեսակէտով։ Շատ բան կը մնար դեռ կարօտ քննութեան, լուսաբանութեան եւ նոր յաւելուածներ պէտք է ճոխացնէին յընթացս Ալիշանի հաւաքածոյքը։ Աւելի հում նիւթերու հաւաքածոյի նկարագիրն ունէր Հ. Ալիշանի գործը, քան մանրազնին ուսումնասիրութեան։

Ժամանակն աւելի զարմացաւ մեղուաջան հաւաքչին աշխատասիրութեան վրայ քան փորձեց քննութեան բովէ անցնել գործը։ Միայն Նորայր Բիւզանդացին գտնուեցաւ, որ Հ. Ալիշանի աշխատութեան լուրջ ուշադրութիւն դարձուց։ Նորայր, որ ունէր ձեռքին տակ "Հայ

Տնկարանի,, համար նիւթեր, որոնց վրայ կ'աշխատէր տարիներէ ի վեր, բնականաբար վեր հանեց ''Հայկական Բուսաբանութեան,, մէջ շատ մը կէտեր, որոնք կամ սխալ մեկնութիւն ընդունած էին եւ կամ կը կարօտէին դեռ նոր լուսաբանութիւններու։ Ահա այսպէս մղուեցաւ նա գրելու Հայբուսակի ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ, որուն համար պէտք եղաւ իրեն միայն երեքամսեայ ժամանակ մը (1895. Մայիս 27 — Ապրիլ 16)։

Ձեռնարկութիւնս յայտարարեց հեղինակը Հայրենիքի մէջ 1895, թ. 1175 (Մայիս 31), ի վաճառ հանելով զայն ձեռագիր՝ 500 ֆրանքի։ Հայրենիքի խմբագրութիւնն ապա թ. 1180 (5 Յունիս) իր առաջնորդողականին մէջ աւելի վառ խօսքերով կը յանձնարարէր զայն հայ Մեկենասներու ուշադրութեան։

Արդեամբք ալ առնուեցաւ այն ուշադրութեան։ Նոյն թերթն 20 Օգոստոս թուով կը ծանուցանէր. ''Բարիզաբնակ ծանօթ հայ բանասէր մը 500 ֆրանք ղրկելով Գ. Նորայր Բիւզանդացիի գնած է անոր երկասիրութիւնը, որ անշուշտ մօտերս տպագրուելով հրապարակ կ'ելլէ,,։ Գնողն էր իշխ. Գուիտոն Լուսինեան, որուն հասուցած է Նորայր իր ձեռագիրը 1895 Սեպտեմբերին։

Նորայրի Քննադատութիւնն բախտ չունեցաւ տպագրուելու։ Սակայն Հեղինակն իր պրպըտումները կը շարունակէ. եւ 1896 Մարտ 14ին կրնայ Նոր ''Յաւելլիք ի Քննադատութիւնն Հայ-

բուսակի,, զոկել Լուսինեանին, տպագրութեան դէպքին ներս առնուելու համար։ Լուսինեան յաջորդ տարին թէ Քննադատութիւնն եւ թէ Յաւելլիքը կը նուիրէ Գեր. Հ. Գաբրիէլ Ծ. Վ. Մէնէվիշեանի, երբ վերջինս պարապած էր իւր Բուսաբանութեան հրատարակութեամբ։ Այսպէս կը մնէ Նորայրի աշխատութիւնն Մխիթարեան Մատենադարանը գիտութեամբ հեղինակին։

1898, Յուլիս 2 թուակիր գրութեամբ մը կը փութայ Նորայր յղել առ Գեր. Արսէն Այտընեան "Վերադարձութիւնք յիմ քննադատութիւն Հայբուսակի,,, ուր կը հաղորդէ ինչ ինչ սրբագրութիւններ, լրացումներ եւ անդրադարձութիւններ, զորոնք թելադրած է իրեն Traité des Simples par Ibn el-Beithar, զոր R. Leclercի գաղղիերէն թարգմանութեամբ (Paris 1877—1883) ձեռք բերած է 1896 Յունիսին։ Հոս կը գրէր Նորայր ի մէջ այլոց՝ "...Միանգամայն ուրախայայ ոչ սակաւ՝ որ Լըկլէր կը հաստատէ զիմ գրածներն (բայց յերից տեղեաց), կը լրացնէ զիմ գիտողութիւնս, եւ զայն բազում տարակուսանս ի մասին արաբականին զորոց խղճած էի գրել՝ կը փարատէ յիմ օգուտ եւ ոչ Հ. Ալիշանի։ Այժմ նիւթ ունիմ "չորեքպատիկ ընդարձակել,,ոյ զՔննադատութիւնս օգնութեամբ Լըկլէրի եւ իմ սեպհական նորանոր գիտողութեամբք եւ յաւելուածովք։ Բայց թող մնայ այս այլում ժամանակի,,։

Ը.

Թէ ինչո՞ւ մինչեւ այսօր անտիպ մնացած է Նորայրի այս պատուական Քննադատութիւնը, որ հակառակ իր 25 ամեայ հնութեան՝ դեռ այսօր թարմ է եւ մեծարժէք մէն մի տողերու մէջ, դիւրին է բացատրել. Հ. Ալիշանի համբաւն թոյլ չէր տար առ կենդանութեան հրապարակ հանել Քննադատութիւն մը, որ նուիրուած էր անոր տարիներու աշխատութեան: Սակայն չենք տարակուսիր, որ այն ամէնէն աւելի Հ. Ալիշանն պիտի հետաքրքրէր, որուն կենաց մեծագոյն մասն միջնադարեան աշխարհին եւ գրականութեան նուիրուած՝ այն շրջանի լուսաւորութեան համար ամէն նշոյլ, ամէն կայծ ինքն պիտի գնահատէր ամէնէն աւելի հմտութեամբ եւ անաչառութեամբ: Ինչ որ ժամանակն փափկանկատութեամբ զանց ըրաւ, չենք ուզեր մենք այժմ ծածկել ազգային բանասիրութեան. մանաւանդ որ նիւթը, զոր կը շօշափէ Քննադատութիւնս, զուտ մասնագիտական ըլլալով՝ դժուարաւ թէ գտնէ նման հմտութեամբ ուրիշ մասնագէտ մը քան որ է Նորայր: Այս մտածութեամբ դիմեց “Հանդիսի„ խմբագրութիւնս 1911ին Հեղինակին, խնդրելով հաւանութիւն գործոյն տպագրութեան համար, փափաքելով նաեւ որ ճոխացնէ զայն նոր յաւելուածներով: Հեղինակն սիրով շնորհեց իր հաւանութիւնը, միանգամայն պատրաստ ընծայեց ինք զինք առաքել նոր յաւելուածներ. բայց իր հիւանդագին վիճակն թոյլ չտուաւ իրեն ի գլուխ հանել իր խոստումն, եւ այսպէս խմբա-

գրութիւնն իր ակնկալութեան մէջ յուսախաբ եղաւ։ Յարգելով սովորական առածն՝ «Ուշ քան երբեք», կը ձեռնարկենք այսօր գործոյն տպագրութեան, բաղձալով միանգամայն կանգնել Հեղինակին անուան կոթող մը Հայ բանասիրութեան Սրահին մէջ։

Հեղինակին ձեռագիրն անփոփոխ կը պահենք։ «Յաւելուածք»ն, որ գրած է 1896 Մարտ 14ին, պատշաճ դատեցինք ագուցանել ակնարկուած տեղերը, կրկին գծերու (‖ ‖) մէջ։ իսկ «Վերադարձութիւնք»ը կը հրատարակենք յաջորդ էջերու մէջ։

ԽՄԲ. «ՀԱՆԴ. ԱՄՍ.»Ի

ԱՌ ԱՍՏՈՒԱԾԱՊԱՏԻՒ ՏԷՐ

# Հ. ԱՐՍԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՅՏԸՆԵԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԱՂԱՄԻՆԱՅ

ԵՒ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՎԻԵՆՆԱՅ

ՎԵՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՔ ՅԻՍ

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԲՈՒՍԱԿԻ

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանի Հայբուսակն յայն գրուածոց կարգէն է՝ որ շատ աւելի դիւրութեամբ եւ համարձակութեամբ կը յօրինուին եւ ի հրապարակ կը հանուին քան թէ կը քննադատուին, առելով դրան գաղղիացի թատերգակին՝ որ կ'ըսէ, թէ Ննաշխատ է խրծբիծ, եւ դժուարին է արուեստ[1]:

Մեթոդ եւ կարգաբանութիւն՝ ոչ ինչ. հմտութիւն՝ ոչ ինչ. արամտութիւն եւ քննադատական ոգի՝ ոչ ինչ. փոյթ եւ խնամ ստուգագրութեան եւ ուսումնական ճշդութեան՝ ոչ ինչ. այլ անբաւ խառնակութիւն հայ, յոյն, լատին, գաղղիերէն, արաբիկ, պարսիկ եւ թուրք բառերու, որ ընդ միմեանս կը կռուին, — վկայութիւնք ի տպագրեալ մատենից՝ լի անհաւատարմութեամբք եւ անճշդութեամբք, իսկ ի Ձեռագրաց՝ թերատ եւ կրճատ, եւ այն՝ յետին խամութեամբ եւ անհոգու-

1 “La critique est aisée, et l'art est difficile„. Destouches.

թեամբ, — ծանրատաղտուկ կրկնութիւնք մի եւ նոյն հայերէն կամ օտարալեզու բուսոյ անուան, որ եւ յաճախ խեղաթիւրեալ ձեւերով կը յեղյեղուին իբր զանազան բոյսք, — տղայական ստուգաբանութիւնք, — ցուրտ եւ անհամ բանաստեղծութիւն, — ցրտագոյն եւ անհամագոյն հոգեւորութիւն: Աւասիկ Հայկական Բուսաբանութիւնն, զոր լաւ եւս էր կոչել Հայկական Խառնաբնդորութիւն, ուր անդամագիտութեան, բժշկութեան, դեղագործութեան, կենդանաբանութեան, հանքաբանութեան եւ խոհակերութեան բաներ՝ որպէս բուսոյ անուանք կը ներկայացուին եւ կը նկարագրուին՝ հանդերձ իւրեանց կարծեցեալ հոմանիշներովն յայլեւայլ բարբառս, թող զայնպիսիս որ հայ լեզուի մէջ անէ անգոյ են ամենեւին: Ի հաստատութենէ Մխիթարեան Տպարանին՝ Մխիթարեանի անուամբ այսպիսի տխմարական եւ ագիտական գիրք դեռ եւս հրատարակեալ չէր: Խիստ է բառս, գիտեմ, բայց ոչ անիրաւ, ինչպէս ամենայն ճշմարտասէր մարդ կարող է ինքնին վկայել՝ եթէ իբրեւ գիս աշխատութիւն յանձն առնու մանր քննելոյ զՀայբուսակն:

Երբ յամին 1895 հազիւ երեքամսեայ ժամանակի մէջ (27 Մայիս — 16 Օգոստոս) գրեցի զիմ Քննադատութիւն եւ յղեցի նոյն տարւոյ Սեպտեմբերի առաջին օրը առ մեծարգոյ ստացողն՝ Տ. Գուիտոն Լուսինեան, համոզումս այն չէր որ զբոլոր վրիպակս եւ պակասութիւնս Հայբուսակի հաւաքած եւ յանդիմանած էի. Հարիւրաւոր ծիծաղելի եւ ողորմելի՝ արտաքոյ մնացին իմ Քննադատութենէն: Թէպէտ եւ ներքին ձայն մի կ'ազդէր ինձ թէ ամենայն հաւանականութեամբ սխալած էր եւ յայնսմիկ "բազմահմուտ„ հեղինակն "հմտալից եւ ճոխ պարունակութեամբ ընտիր երկ„ին[1], սակայն

[1] Չակերտներով նշանակեալ բառերն են յայնմ ծանուցմանէ Հայբուսակի զոր գրած է Վենետկոյ Մխիթարեան

ես սովորեալ գոլով ճաշակել իբր ճշմարիտ զայն միայն՝ զոր վստահ եմ կամ գրեթէ վստահ, թողի ի միակողմն զհարիւրաւոր երկբայականսն, եւ շատացայ ինչ ինչ Յաւելլիս հաղորդելով առ ազնուական ստացողն ի 14 Մարտի 1896. յուսալից էի որ Հ. Ալիշանի գլխաւոր առաջնորդն — Լըկլէրի գաղղիական թարգմանութիւնն Իպն Էլ-Պէյթարայ — վաղ կամ անագան պիտի լուծէր զիմ տարակուսանաց մեծագոյն մասն (գէթ արաբականին նկատմամբ)։

Յետ երկար թղթագնացութեան եւ խուզարկութեան, — զի սպառեալ կ'ըսուէր մատեանն, — վերջապէս ընկալայ ի Լայպցիգէ 1896 տարւոյ Յունիսի ամսագլխին զպատուականն ի պատուականաց Traité des Simples par Ibn el-Beithar, քառածալ եռահատոր, զոր թարգմանած է L. Leclerc եւ հրատարակած ի Պարիս, Imprimerie Nationale. ԴԱ. հատորն յամին 1877, երեսք I—XVI+1—476, համարք 1—732. ԴԲ. հատորն, 1881, երեսք I—II +1—489, համարք 733—1617. ԴԳ. հատորն, 1883, երեսք 1—483, համարք 1618—2324 [1]։

---

ումն եւ **Արեւելեան Մամուլն** ալ հրատարակած իւր 1895 տարւոյ ութ ամսաթերթերու ծածկութին վերայ. Ապրիլ 1 եւ 15, Մայիս 1 եւ 15, Յունիս 1 եւ 15, Յուլիս 1 եւ 15։

Չեմ զարմանար որ "հմտալից եւ ճոխ պարունակութեամբ ընտիր երկ„ս *առաջնակարգ թիկունք* եղած ըլլայ Հ. Մինասն Երեմեանի, ինչպէս կ'ըսէ նա ի ծանուցման իւր երկասիրութեանն **Բուսաբերք Գողթ. Եւ Հայ [illegible]**. "Գիտական բառերու մասին *առաջնակարգ թիկունք եղած է* այս գործիս Վ. Հ. Քաջունւոյ **[illegible]** ընդարձակ ընտիր բառագիրքն. իսկ *բուսոց մասին* Վ. Հ. Ալիշանի **Հայբուսակն**„։ Ծանուցումս եհաս առ իս ի Ս. Ղազարու վանաց ի Մարտ ամսեան տարւոյս (1898)։

[1] Սխալ է **Հայբուսակի** Յառաջաբանին տուած տեղեկութիւնն, երես 3, ծան. 1. S. Leclerc ... "պա-

Ապշութեամբ լցայ թէ այսպիսի տեղեակ եւ հմուտ առաջնորդ ունելով ի ձեռին՝ ինչպէս կարացած է Հ. Ալիշան ստէպ ստէպ խորխորատէ ի խորխորատ կործանիլ: Միանգամայն ուրախացայ ոչ սակաւ՝ որ Լէկլէր կը հաստատէ զիմ գրածներն (բաց յերից տեղեաց), կը լրացնէ զիմ դիտողութիւնս, եւ զայն բազում տարակուսանս ի մասին արաբականին զորս խղճած էի գրել՝ կը փարատէ յիմ օգուտ, եւ ոչ Հ. Ալիշանի: Այժմ նիւթ ունիմ "չորեքպատիկ ընդարձակելոյ զՔննադատութիւն օգնութեամբ Լէկլէրի եւ իմ սեպհական նորանոր դիտողութեամբք եւ յաւելուածովք: Բայց թող մնայ այս այլում ժամանակի, եւ ես դառնամ յիմ Քննադատութիւն առ ի ճշդել, լրացնել եւ հաստատել:

### Ա. Լէկլէր կ'ուղղէ զերիս տեղիս իմ Քննադատութեան:

**ԺԳ.** Գրած եմ "Զինճարակ, Զինճըֆըր", որպէս թէ Զինճըֆըր = արաբ. Սինճէֆր = գղ. Cinabre, նոյնանիշ ըլլար ընդ Զինճարակի: Զայս սխալ գործած եմ նա եւ յիմ Գաղղիերէն-Հայերէն Բառագիրս ի բառն Cinabre. "Խըրմըզ, կինաբարիս. Ս. Զինճարակ":

Զինճարակ ոչ է Cinabre, այլ է արաբ. Zendjâr, գղ. Verdet. տես ի Լէկլէր, Հ. Բ. համար 1131: Նոյն է եւ պրս. Ժէնկեար կամ Ճէնկեար, զոր հայացուցեալ կը կոչենք Ժանգար: Ի համարն ԻԹ. յիշած եմ ի Գաղիանոսի բառից. "Քալգանթոյ. ծաղիկ պղնձոյ, որ է ժանգար եւ զՔալգանթոյ նոյնացուցած եմ ընդ յն. Χάλκανθον = Couperose ou Sulfate de cuivre (Alex.). կը գրէ եւ Լէկլէր ի Հ. Բ. համար 1134 bis. "Zahrat

գրեալ յամի 1876—1877ն: Ս: մատենին մակագիրն կայ, ոչ տպարանին անունն:

en-nohâs [Զ-ն՚րէՂ է-ն-ն--ն-- = Ծաղիկ պղնձոյ], Vert-de-gris, [յն.] *Χαλκοῦ ἄνθος*„:

Հետեւելով Նոր Հայկազեանի, Զախջախեանի, Պօղաճեանի (Զինճէֆր, Սինճէֆ, Սինճէֆր), Ճամճեանի (Cinabro) եւ Էմինեանի՝ Խր--է եւս կոչած եմ զCinabre յիմ Բառագիրս. բայց սխալ է. Խր--է բանջար է (Հոյք-----է, Թիւ 1151, Խ----է. Թիւ 1164, Խր--է. գոր տես ի Քնն--ք., Համար ՃԼԱ), ինչպէս այլուր պիտի ցուցանեմ: Հ. Ալիշան կարէր իմանալ ի Լրկլերէ թէ ինչ բանջար է Խր--է՝ որ կը գտնուի եւ ի բառս Գաղիանոսի, փոխանակ համարելոյ զայն Cinabre ի թիւն 608. ուր սխալ է նաեւ "Ներկատու խէժ„ն:

ՀԹ. Գրած եմ որ "Հացի„ բառ հեղինակութեան "Գաղիանոսի բառից է զզ. Érable, եւ ոչ Frêne. գրած եմ դարձեալ թէ Frêne կոչելի է հայերէն "Կռանի„ կամ "Կռանի ծառ„, եւ թէ Մոթ. Ուռհայեցւոյ "բիր մի է--նէ„ կամ "գաւազան է--նէ. կը նշանակէ Un bâton de frêne:

Ամիրտովլաթայ Մ-ր-ն = Կ--նէն ծ--ն՝ է արաբ. Morrân = Qarâniâ. տես ի Լրկլէր. Հ. Գ.. Համար 2101, ուր եւ կ'բսուի ի ծան. "Quand au Qarâniâ, c'est le nom du Cornouiller en grec„: Տես ի նմին Հատորի եւ զՀամարն 1753, Qarâniâ, Cornouiller: Ուրեմն Կ--նէ կամ Կ--նէ ծ--ն է յն. *Κράνεα*, Cornouiller, arbre; poétiquement Lance ou Bois de lance, souvent de Cornouiller (Alex.) (= "իր փայտէն ----մք կու շինեն„, Ամիր.). որով եւ Մոթ. Ուռհայեցւոյ բանն թարգմանելի է Un bâton de cornouiller: Յայտ է թէ այս ծառ կը կոչուի հնագոյն հայերէն անուամբք Հոյնի եւ Դուարայ:

Իսկ "Հացի„ ունի երկու նշանակութիւն. 1. Érable, բառ Գաղիանոսի բառից. 2. Frêne, բառ Բժշկարանաց, ինչպէս այլուր պիտի ցուցանեմ:

**ԾԿԹ.** Գրած եմ որ Ա. Բժշկարանի "Հուպոկտաս. Մուսթաճըլէ„ գրութիւնն՝ թուի "Հումու տակդոս. Սմըրճէ = ἑρμοδάκτυλος, Շէմլիճէ։

Մուսթաճըլէ ուղիղ է. տես Mosta'djela (= Մուսթաճըլէ) ի Լըկլէր, Հ. Գ. համար 2130, ուր ի ծանօթութեան ի մէջ կը բերուին cheikh Daoudի բանքն. "Certains auteurs la confondent à tort avec le sourendjân ou colchique„. այսու կը հաստատուի կարծեմ իմ գուշակութիւնս՝ թէ Հուպոկտաս է աղաւաղութիւն ἑρμοδάκτυλος բառի։ Անդ, Հ. Ա. համար 366, Mosta'djelaյի կը տրուի եւ անունն Behedj, որ եւ ի ծանօթութեան նոյնանշան կը համարուի ընդ յն. Σατύριον (գղ. եւ Satyrion). իսկ Հ. Բ. համար 1531, Mosta'djela բոյսն կը կոչուի նաեւ O'rouk bidh (որ կը նշանակէ Racines blanches)։

Բ. Լըկլէր կը լրացնէ։

**Բ.** "Blattes de Byzance„ անգիտացած եմ։ — Լըկլէր է որ այսպէս կը կոչէ զարար. Adhfâr et-Thib, Հ. Ա. համար 104։ Իսկ Pomette de doux closes, զոր նոյնպէս անգիտացած եմ (Քննադ., համար ՄՃՁ), չկայ ի Լըկլէր։

**ԻԷ.** "Պագլէթ-էլ-համգա... գնշանակութիւն համգա բառին՝ բոյս է թէ այլ ինչ, չգիտեմ„։ — Լըկլէր կ'ըսէ Հ. Ա. համար 313, ի ծան., թէ համգա կը նշանակէ Անհամ, ըստ Յակոբայ Գոլիոսի. "Ajoutons que Baklet et-hamkâ signifie: l'herbe insipide, Golius„. Հ. Ալիշան պարտական էր դնել ամէնուրեք զստուգաբանութիւնս արաբերէն եւ պարսկերէն բառից, ինչպէս արդէն ըսած եմ (Քննադ., համար ԴԱ)։

**ԽԸ.** "Իսկ յԱնդունն եւ Պաղունն գրութեանց յայտ է թէ մին սխալ է, զոր չկարացի ստուգել։

Թերեւս զՊաղոսն պէտք է կարդալ Պ. Աղօն, այսինքն Պօրօշերէն Աղօն.: — Ուղիղն է Անղօն. “Anikoun, Rose fétide„. Հ. Ա. Համար 169. — Ouard montîn, Rose fétide„. Հ. Գ. Համար 2276, ուր սխալ տպեալ է anison, փոխանակ anikon: Այս եւս կը հաստատէ զիմ կարծիս թէ Մնբին առանձին՝ չէ բուսոյ անուն: Ջնջելի են նա եւ Հ. Ալիշանի (“կամ մթինն„) բառքն:

**Ծ.** Գրած եմ թէ Պարաջին սխալ է, եւ թէ Պարադին եւս՝ ուղղելի թուի Պարղօն: — Թէպէտ եւ ստոյգ է որ արաբ. Պէրղօն է լու, այլ Ամիրտովլաթայն Հաշիշաթ ուլ-պարաղիթն՝ ուղղելի է Հաշիշաթ ուլ-պարաղիթն (յոքնական Պէրղօն բառի՝ն գիմորոշ յօդիւ). տես Հ. Բ. Համար 970, Հաշիշէթ էլ-պէրաղիթ (արաբերէն նշանագրօք), Herbe aux puces. եւ Համար 1301, Chedjret el-beraghîth (պէրաղիթ), Conyza, Herbe aux puces:

**Ձթ.** Գրած եմ որ Մաղապ է ուղիղն, եւ ոչ Մաջապ: — Սխալ է նա եւ Սուքիասնի Մաղաբն. բայց նորա գղ. Mahlabն ուղիղ թուի, քանզի Իպն Էլ-Պէյթար կ'ըսէ զMahleb ծառոյ, Հ. Գ. Համար 2090, թէ պտուղն “compte parmi les substances aromatiques... On fait entrer sa graine dans les onguents et les parfums choisis„. Հիւբշմանի կարծիքն, Մադապ = Malabathrum (Հանդէս Ամսօրեայ 1893, երես 263, բ.) ուղիղ չերեւար. Իպն Էլ-Պէյթար կ'ըսէ զտերեւոյ Sâdedj = Malabathrumի, Հ. Բ. Համար 1150, թէ Հնդիկ Նարդոսի հոտ ունին, բայց ոչ թէ կը գործածուին յիւղեփեցութեան. իսկ արդ Խորենացւոյ Աշխարհագրութեան ընդարձակողն Էօղ անոյշ կ'անուանէ զՄաղապ: Տես Սադէճ = Malabathrum եւ ի ·քննադ·., Համար ԽԹ. եւայլն եւայլն:

**Է.** Ասրունճ = գղ. Minium (Asrendj, Minium. Հ. Ա. Համար 74. — Zerkoun, Salîkoun, Asrendj, Minium. Հ. Բ. Համար 1109):

**ԺԶ.** Լեպեդիսքաղկու = յն. Լեպիդոսքաղկոս: (Անստուգոյդ է գրածս. տես Հ. Ա. Համար 438, Toubal, Battitures, ուր կը յիշուի եւ Battitures de cuivre [= Պղնձի փերձակ. Մխ. Հեր. ԻԷ. 74], եւ ի ծան. կ'ըսուի. "Il s'agit ici de ce que les Grecs appellent lepis ou écailles" եւ այլն:)

**ԻԷ.** Կող = արաբ. Զէրըրա՛ = "գղ. Cantharide, եթէ չեմ սխալիր": (Derarîh, Cantharides. Հ. Բ. Համար 995: Ուրեմն Զէրըրա՛ է եզականն, Զէրարէ՛ յոգնականն: Բայց պարտ է նաեւ գիտել որ Լըկլէր յետ գրելոյ ի վերնագրին "Derarîh, Cantharides", կը յաւելու ի կարգի բանին. "Les cantharides (qui sont une espèce de derarîh)" եւայլն: Որով եւ է օրինակաւ՝ ուղիղ գուշակած էի անդստին յամէ 1880 (Հայկ. Բառագ. երեսք 117—119) թէ Դարէրէ ոչ է յն. Διάρροια, այլ թէ Դարէրէ, Դարարէ՛, Զարարէ՛ յարաբիկ լեզուի որոնելի են):

**ԼԱ.** Մորէ = գղ. Garum (Morry, Garum. Հ. Գ. Համար 2111 bis: Նոյնպէս յայլեւայլ վկայութիւնս Հայքառագի ուր Հայն ունի Մորէ՝ Լըկլէր կը թարգմանէ Garum):

**ԼԵ.** ԶՄաղրէ, Հայերէն Սուսր, ուղղած եմ Մաղրէ, եւ գղ. կոչած Rubrique (Maghra, Terre de Sinope. Հ. Գ. Համար 2148. ուր եւ կ'ըսուի ի ծան. "La terre de Sinope, rubrica des Latins, est une espèce d'ocre". Իսկ Լիտրէ, ի ստուգաբանութեան Sinople բառի, զterre de Sinope կը կոչէ sorte de rubrique):





**ՃԿԸ.** "Շամամն տեսակ մի է Սեխոյ, եւ ոչ Ձմերկի„։ ("Chemmâm, Cucumis Dudaim. C'est le nom d'une espèce de petit melon„ եւ այլն. Հ. Բ. համար 1343.)

**ՃԿԹ.** Ասսաբէա՛ էլ-Հարմաս = Մատունք Հերմէսի„։ ("Les mots assabea' hermès ont le même sens que hermodactyle et signifient: doigts d'Hermès„. Հ. Ա. համար 92, ի ծան.։)

**ՃՁՁ.** Այշխայթան = Թուրք. Այշխիոն = դդ. Aurone (Հ. Ալիշան կ՚անգիտանայ զՍարաղաթանայ? ի թիւն 2811, որ սակայն կը գտնուի ի Լըկլեր, Հ. Բ. համար 1169, Seraksâna [= Սարաղսանա, եւ ոչ Սարաղաթանա]. "Elle a des feuilles petites, pareilles à celles de l'aurone„ եւ այլն, ինչպէս գուշակած էի)։

**ՄԺԲ.** Յաշտահան "Թուփ նշանակել Ութ բերան„։ ("Hecht-dehân [huit bouches]„. Հ. Գ. համար 2258։)

**ՄԿԳ.** Վասմա = Տերեւ լեղակի։ ("Ouesma, C'est la feuille de l'indigotier„ եւայլն. Հ. Գ. համար 2291։)

**ՄՁԱ.** Մաշրեգէ = Արեւելեան։ (Հայքաւազէ, թիւքն 883 եւ 3186 կը գտնուին ի Լըկլեր, Հ. Գ. համար 1902, ուր գրեալ է Քէրէֆս էլ-Մէշրէգի [արաբերէն նշանագրօք], եւ թարգմանեալ l'Ache orientale. կայ անդ, համար 2304, եւ Ache du levant, Քէրէֆս Մէշրէգի։ Հ. Ալիշանի Մաշրեղէն ի թիւ 3186 այնչափ հեռի է ի Մէշրէգիէ որչափ արեւելք յարեւմտից։ Անհեթեթ սխալ է եւ Ջըրայէն?ն ի թիւ 883, ստուգաբանեալ ի Մա = Ջուր բառէ։)

**ՄՁԲ.** Յաֆէ = արաբ. Իֆ՚ա, Օ՛, Իժ, Քարբ։ (Afa', Vipère. Հ. Ա. համար 120։)

**ՄՂԵ.** *Լի հաւանդ?* = Նիհաւանդ։ (Լըկլեր կը գրէ ի բառն Mahleb, Հ. Գ. համար 2090.

"On les tire de l'Aderbaidjan et de Nehaouend„: Ի՞նչպէս չէ տեսած զայս Հ. Ալիշան։)

**ՄՂԸ**. *Հալահիլ* = *Հալահիլ*։ ("Dans les environs de Halahil, canton de la Chine„. Հ. Ա. Համառ 472։ Գէորգ Սէթ կ'ըսէ, ոչ թէ ճենաստան). եւայլն եւայլն։

ՅԻՆԷՆ

**ՃԸ**. *Կոճկոյակ* սխալ բառն, փոխանակ Խոճկորուկ, կը գտնուի եւ յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս, ի բառն Pourpier։

**ՃԻՁ**. Սուրբ ծաղիկն է Թուրք. Սուրբ չիչէկ, գրած եմ, ոչ թէ Հայերէն Սրբածաղիկ (= Սուրբ ծաղիկ)։ Ամիրտովլաթայն Սուրբ Հալէլա (Թուրք. Սուրբ չիչէկ) ի թիւ 1590 Հայբուսակէ կը հաստատէ զիմ կարծիս։

**ՄԼԱ**. Գրած եմ որ "Հազարդարս„ (ըստ ընթեռնլոյ Հ. Ալիշանի ի Տաղին Սալաձորեցւոյ) թուի Անիսոն, թուրքերէն Հաւուսրբուր ըստ Ամիրտովլաթայ։ — Սալաձորեցւոյ բանքն են.

"Խաժն ու Խալիծն եւ Լալազարն, հոտիկն
անուշ Հաւուրտուրան,
Վարդն ու Գուլվարդն եւ Հազրէվարդ, նրա-
մըն ծանր է Վարդենոյն„.

այսպէս յօրինակին Հ. Սուքի. Վ. Եազըճեանի (տես Հայկ. Բառարան., Յաւելուած, երես 127)։ իսկ ի հրատարակութեան Գարեգին Վ. Սրուանձտեանցի (Արեւ. Մամուլ, 1884, Ապրիլ) եւ Կ. Կոստանեանցի (Նոր Ժողովածու, Բ. Պրակ, Թիֆլիս 1892, երես 72)։

"Խաժն ու Խալինծն ու Լալազարն հոտիկն
անուշ էր աւրտուրան.
Վարդն ու Գուլվարդն ու Հարդէվարդ երամ
ծանր է վարդերուն„։

Ուղիղն է Հաւարփարան, ոչ թէ Եւ ւարփարան. եւ Հաւարփարան ուղղական է, չէ թէ ուղղական Հաւարփարա, սեռական Հաւարփարայ, դիմորոշ յօդիւ Հաւարփարա՛ն, ինչպէս կը կարծէ Հ. Ալիշան: Սալաձորեցին ըսել կ՚ուզէ՝ թէ “կը ծաղկին... Լալազարն եւ անուշահոտ Հաւարփարանն„: Այլ է երբ կ՚ըսէ նա (Քննաս. համար Թ). “Բարձունենեկին գոյնն է պակաս, հոտիկն անուշ է բէչարուն„. իմա՛ Քէւարէ (= հէք Բարձունենեակն անուշ հոտ ունի: Հաւարփարան ծաղկի անունն կը յիշատակուի եւ յայլ գրչաց ժամանակիս. “Ծաղկանց մէջ [Նոր Պայազիտի] անուանի են Կակաչ, Աղբերաց արիւն, ... Հաւարփարան (տպ. հաւար փարան), անուշահոտ սպիտակ մանր ծաղիկ, որ ցօղունին վրայ փնջաձեւ կը բացուի. սոր սերմերը հացի երեսը կը ցանեն[1] եփելու ժամանակ եւ շատ համեղ է„: Տեղագրական Պատառիկներ, Նոր Պայազիտ. Արէւ. Մուրճ, 1895, Հոկտ. 15, երես 619: — “Նոր-Պայազիտցւոց... ծաղիկների անունները համարեա բոլորը Հայերէն են, օր. Ցորնածաղիկ, Հաւարփարան, Հայավարդ„ եւայլն. Մեսրովբ Արքեպիսկոպոս Սմբատեանց, Տեղագիր Գեղարքունւոյ, Էջմ. 1896, երեսք 452—453: Նոյն Հաւարփարան է, ծաղիկ գեղարքունեաց [Նոր Պայազիտի] լերանց, զոր Հայքաւազն կը յիշատակէ [յո՛ր գրոց] ի թիւ 1578, սխալ գրելով Հաւարգարան:

Ստոքհոլմ, 2 Յուլիս 1898:

[1] Այս կը մերձենայ Ամիրտովլաթայ Հաւարբար — Անիսոնին:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԻՑ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐԱՑ ՅԻՇԱՏԱԿԵԼՈՑ Ի ՔՆՆԱԳՐԱՏՈՒԹԵԱՆՍ

Alex. — C. Alexandre, Dictionnaire Grec-Français, 21ème édit., Paris, Hachette, 1884. *Յոյն բառից ամենայն գաղղիերէն համանիշք եւ մեկնութիւնք յընթացս գործոյս են յայսմ բառարանէ։*

Ամիրդ. Անգ. անպ. — *Ամիրդովլաթայ Ամասիացւոյ* Անգիտաց անպէտ, *յօրինեալ թարգմանաբար յամին* 1478։ *Վկայութիւնքն զորս յառաջ բերած եմ՝ յայն Ձեռագրէ են զոր հաղորդած է ինձ ազնուաբար յամին* 1879 *ի Կ. Պոլիս Տ. Սերոբէ Ալիշան, Հ. Ղեւոնդ Վ. ի պատուական եղբայրն։*

Առձեռն. — Առձեռն Բառարան Հայկազեան լեզուի. Ս. Ղազար. Ա. տպ. 1846. Բ. տպ. 1865։

Աւգեր. — *Հ. Յարութիւն Աւգերեան,* Բառգիրք ի Գաղղիականէ ի Հայ եւ ի Տաճիկ բարբառս. Ս. Ղազար, 1840։

Բժշ. Ա. — Բժշկարան Ա. *Այսպէս կը կոչեմ զայն լաւ եւ ընտիր Բժշկարանն՝ զոր Հ. Ալիշան կ'անուանէ* Հին Բժշկարան, *գրեալ ի թուին* ՉԽԳ. = 1294 *ի վայելումն Հեթմոյ Կոռիկոսացւոյ։ Բժշկարանիս հնագոյն մասնն կ'ելնէ մինչեւ յաւուրս "յաղթող թագաւորին Հայոց Գագկայ* [*Առաջնոյ*]", *այսինքն յամին* 989—1019։ (*Տես զԲժշկարանէս ի Հ. Գար. Զ.,* Մատենադ. Հայկ. Թարգմ. Նախնեաց, Ս. Ղազար, 1889, *երես* 761—762։)

Գաղ. Ա. — Գաղիանոս Ա., այսինքն բառք Գաղիանոսի, վերնագրեալ Մեկնութիւն բառից Գաղիանոսի Բժշկապետի: Ընդօրինակած եմ ի Պարիս յամին 1877 ի Ձեռագրէ Ազգային Մատենադարանին (Bibl. Nat.), որոյ թուահամարն է Suppl. 43. Թիւ գրչութեան Ձեռագրիս է ՉԼԱ = 1282:

Գաղ. Բ. — Բառք Գաղիանոսի Բ. ընդօրինակած եմ ի Ս. Ղազար յամին 1862 ի Ձեռագրէն Վարդան Բ., որոյ գրչութեան թուականն է ՉԾԶ = 1307:

Գաղ. Գ. — Բառք Գաղիանոսի Գ. ընդօրինակած եմ ի Ս. Ղազար ի Ձեռագրէն Բառգիրք ԺԶ: Բնագիրն կարծեմ անթերի է. իսկ իմ ընդօրինակութիւն կը հասնի մինչեւ յառաջին բառս Հ գրոյ:

Գաղ. Դ. — Բառք Գաղիանոսի Դ. ընդօրինակած եմ ի Ձեռագրէ Ս. Ղազարու՝ զորոյ զմակագիրն չեմ յիշեր: Բնագիրն թերի է, եւ կը հասնի մինչեւ ի մէջ Ո գրոյ:

Գէորգ. — Գէորգ Տէր Յովհաննէսեան Պալատցի, Բառարան Պարսկերէն, Կ. Պոլիս 1826: Այս գործ՝ որ մեծ օգուտ կարէր մատուցանել Հ. Ալիշանի՝ հազիւ կը յիշուի ի հինգ տեղիս Հայբուսակի, Թիւք 10, 219, 236, 340, 759 (ի թիւսն 236 եւ 759, զգրեալն Շէդլէմէ՝ պէտք է խուզել Շէլդէմէ գրութեամբ):

Dezobry. — Dezobry et Bachelet, Dict. général de Biogr. et d'Hist., 2 vol., Paris 1857.

Էմին. — Հ. Սրապիոն Էմինեան, Բառգիրք Գաղղիերէն-Հայերէն-Տաճկերէն, Վիեննա 1853, Ա. տպ.:

Emm. Le Maout. — Botanique, Organographie et Taxonomie, Hist. naturelle des familles végétales, Paris, L. Curmer, 1852.

Fialon. — (Eugène.) Étude historique et littéraire sur Saint Basile, suivie de l'Hexameron traduit en français, 2ème édit., Paris, Ernest Thorin, 1869.

Թրգմ. Գեղոց. — «Թարգմանութիւն Գեղոց զոր ընտրեալ են իմաստունքն եւ կարգեալ ճշմարտութեամբ ի յայլ լեզուաց ի մերս»: Ընդօրինակած եմ ի Ս. Ղազար յամին 1862 ի նմին Ձեռագրէն ՎԱՐԴԱՆ Բ. զոր յիշեցի ի Գաղ. Բ.:

Ինճիճ. Նոր Հայս. — Հ. Ղուկաս Ինճիճեան, ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ, որ գտանի յԱ. հատորի ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԵԱՆ ՉՈՐԻՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ, Ս. Ղազար, 1806:

Լիտրէ. — E. Littréի ծանօթ բառագիրքն Գաղղիերէ-լեզուի, քառահատոր: — Յաւելուածն (Supplément) հրատարակեալ է յամին 1877:

Կելսիոս. — Olaus Celsius, Շուեդացի. Hierobotanicon, sive de Plantis Sacrae Scripturae dissertationes breves, 2 հատոր, Upsaliae, 1745—1747.

Հայկ. Բառաքնն. — Նորայրի ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՌԱՔՆՆՈՒԹԻՒՆ, Կ. Պոլիս 1880:

Ճամճեան. — (Հ. Փիլիպպոս.) ԲԱՌԱՐԱՆ ԻՏ.-ԳԱՂՂ.-ՀԱՅ.-ՏՃԿ., Վիեննա 1846:

— Նորին ՎԵՑԼԵԶՈՒԵԱՆ ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ ՔԷՐԹ, Վիեննա 1848:

M. Devic. — Marcel Devic, Dict. étymologique des mots d'origine orientale, հրատարակեալ յետկուստ Լիտրէի Յաւելուածին (Supplément):

Meninski. — Onomasticon. զայս գործ չունիմ այժմ ի ձեռին. քաղած եմ ինչ ինչ ի Պարիս յամին 1879 Ազգային Մատենադարանի (Bibl. Nat.) օրինակէն:

Նոր Հայկզ. — Ս. Ղազարու Մխիթարեան Հարց ծանօթ երկհատոր Բառարանն հայերէն լեզուի՝ մակագրեալ ՆՈՐ ԲԱՌԳԻՐՔ ՀԱՅԿԱԶԵԱՆ ԼԵԶՈՒԻ, 1836—1837:

Շահրիմանեան. — (Ստեփանոս.) Բժիշկ Տփղիսեցի, յօրինած է ՏՆԿԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՌԱՐԱՆ, յորմէ ինչ

ինչ քաղած է Հ. Եփրեմ Սեթեան։ Ընդօրինակած եմ զՔաղուածս Սեթեանի։

Pasini. — (Jos.) Vocabularium latinum et italicum, Venetiis 1823.

Payne Smith. — Thesaurus Syriacus, Oxonii, 1868—1893, Պրակք Ա.—Թ., մինչեւ ի գիրն Կոֆ (Qof). մնան հրատարակելի Րէշ, Շին, Թաւ։

Պօղաճ. — Հ. Յակոբոս Պօղաճեան, Բառարան Հայերէն-Տաճկերէն, Վիեննա 1838։

Ջախջ. Իտ.-Հայ. — Հ. Մանուէլ Ջախջախեան, Բառարան յիտալական լեզուէ ի Հայ եւ ի Տաճիկ բարբառ, Ս. Ղազար, 1804։

— Նորին Հայ.-Իտ. — Բառգիրք ի բարբառ Հայ եւ Իտալական, Ս. Ղազար, 1837։

Ռոշքեան. — "Գանձ Հայոց լեզուին, կամ Բառարան Ստեփանեան. այս է, յօրինեալ ի բազմապայծառ Տ. Ստեփաննոսէ Ստեփանեան Ռօշքայ աստուածաբան վարդապետէ կամենիցացւոյ։" Իմ քաղուածք են ի Ձեռագրէն Ս. Ղազարու եւ ի Ձեռագրէ Անտոնեան Հարց Կ. Պոլսի։

Րէտուէն. — (Միքայէլ.) Սորա Բառգիրքն հրատարակեալ է ի Ս. Ղազար յերկուս հատորս. քաղած եմ հարեւանցի առ անպարապութեան. այժմ չունիմ ի ձեռին։

Օղուլլուխեան. — (Յովակիմ.) Նոր Բառգիրք, Վենետիկ 1806։

Այլ մատենից մակագիրք եւ հրատարակութեան տեղիք նշանակեալք են իւրաքանչիւր յիւրում վայրի։

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՅԲՈՒՍԱԿԻ

—

## Ա.

*Ոչ բոյսք՝ նշանակեալք իբրեւ բոյսք:*

**Ա.** 81. "*Ամիճ:* Այս բառս պատմիչ մեր Եղիշէ գործածեր է (Ը.) իբրեւ քնքուշ կերակուր մի "փափկասուն Տիկնայց Հայոց աշխարհին... որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց եւ Ամճովք երէոց,,. Հաւանօրէն նշանակէ Ամիկ, այծու ձագ. իսկ Բուզանդ կ'ըսէ (Ն. Է), թէ մեր տարաբաղդ եւ աչազուրկ Արշակ թագաւորին առջեւ յետ կերակրոց՝ դրին "Միրգ, Խնձոր, Վարունգ եւ Ամիճ,,. եւ կարծել տայ թէ պտուղ մ'ըլլայ, գուցէ նոյն իսկ Ամլաճն, եթէ կարենայ սա ախորժելի ըլլալ քմաց:,,

== Յայտ է յԵղիշէի վկայութենէն որ Ամիճ՝ մսեղէն փափուկ ուտելի մի է, հանգոյն ուղղոյ զուարակի. այս Ամիճ էր նաեւ Արշակայ առջեւ դրուածն. "Զգանակն՝ ... որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել, եհար ի սրտի իւրում,,, Բիւզ. Ն, Է, երես 208 (տպ. Ս. Ղազարու

1832). *Եթէ միգեղէն ըլլար Աֆ՞, Բիւզանդայ թարգմանիչն չէր ըսեր "զմիրգն կամ զամիճն": համեմատէ զԱֆ՞ ընդ սանսկրիտ բառին Աֆշա, որ է Միս* (*ըստ Նոր Հայկազեանի ի բառն "Միս"*): *Ուրեմն յԱֆ՞ բառէ Ամ-բէր, որ յՈսկ. Մատթ. գ., ժե. Յորդորակ, երես* 69, *գրուած է փոխանակ յունին* ὀπσοποιός, *գղ.* Qui apprête les mets, les ragoûts (Alex.). "*Տեսցուք որչափ կատորուածք ի բարեկեցութեանն տննչանացն գործին. որչափ յամ-բերացն եւ խոհակերացն եւ ի սեղանայարինացն, ի պղակունտրագործացն եւ ծաղարարացն": Նոյնպէս եւ յՈսկ. Կողոս. Ա, Յորդ., երես* 532. "*Բազում հրամանս խոհակերացն տալ, ամ-բերացն պատուիրել, սեղանայարդարացն զգուշացուցանել":* ὀπσοποιός *բառին արմատն է* ὄπσον, *որ կը նշանակէ Ձկնեղէն կերակուր, բայց* plus généralement, mets délicat, ragoût, sauce, assaisonnement:

*Իսկ "աչազուրկ"ն ոչ էր Արշակ Բ, այլ նորա հայրն Տիրան Բ:*

**Բ.** 135. "*Աշտիպ: Բժշկարան* [*տպ. Բժկարան*] *մի այսօր դիմաց գրէ Աթոր, եւ կ՚ըսէ. "Ինքտ հետ մարտին ելանէ":* Ador, *Յորեն նշանակէ առ Հռոմայեցիս. Գալիենոսի բառից մէջ ալ հոմանիշ գրուած է Ձ---ր: Ասկից ալ շինուի Աշտըպեայ հոգ, ինչպէս գրուած է:*

= "*Աթոր, Աշտիպ: Ինքդ հետ մարտին ելանէ. լտ.* Ador", *կը գտնուի ի Գաղիանոս Գ.*

ըստ որում կը գրէ եւ Ռոշքեան· “Աշտիկ, տալատ. Տեսակ ինչ հացահատի զոր հինքն փոխանակ ցորենոյ ուտէին. այժմ յոմանց Զաւար ասի. Ador, Far. գաղ. բառ,,. յորմէ եւ “Աշտկեայ, Աշտկեղէն. Որ յաշտկէ լինի Adoreus, Farreus. գաղ. բառ. Աշտկեայ հաց տային,,. [յիմ գաղիանոսի բառս չիք այսպիսի վկայութիւն]: Աշտիկ, սովին նշանակութեամբ, ընդունած է եւ Ջախջախեան յիւր Հայ-իտալականն. եւ Հ. Արսէն Բագրատունի ի Մշակականն Վիրգիլի, Ա, տող 225. Գ., տող 206.

> “Այլ գերկիր թէ ցորենոյ վարես ի հունձ ու
> 'ի յոյր աշտիկ.
> Անդ ապա զգօնացելոյն յաշտիկ ասոք զիրանն
> աճուն թոյլ տուր պարարել:„

եւ ի Ցանկի բուսոց մատենին. “Աշտիկ կամ Զաւար,,. “Աշտիկ. տես Զաւար,,, կը գրէ եւ Առձեռնն Բ. տպ.:

Բայց փոխանակ “Ալթոր, Աշտիկ,, եւ այլն, գաղիանոս Ա կը գրէ. “Աբոր ու տէր. ինքդ հետ մարտին ելանէ,,: — գաղիանոս Դ՝ “Ադոր ու տէր. ինքդ յետ մարտի ամսոյ ելանէ,,: Դարձեալ. “Աբէդորտէյ. ինքն ի ծովէ ելանէ,,. գաղ. Ա: — “Ադէորտէյ. ինքդ ի ծովէ ելանէ,,. գաղ. Բ: — “Աբէդորտէյ. ինքդ ի ծովէ ելանէ,,. գաղ. Գ: Ցայլ գիրս. “Ադէոր ու տէր. ի ծովէ ելանէ,,. Թրգմ. Դեղոց: — “Ոդէոր ու տէր. ինքդ հետ մարգարտին ելնէ, որ է Սնբուլ,,

անդ։ — ''Աշֆուր ըշ տէդ. Դիվու ըղունկ[1],,. Բժշկարան մի Ս. Ղազարու։ Իսկ Ամիրտոլվաթ յԱնգիտի անպէտն. ''Աշֆուր ըշ տէդ. որ է Դիւու ըղունկ. կենդանի է ծովային, յերկայն. ի սատափ կու նմանի,,. երես 10 verso. որ եւ այլուր կը նկարագրէ թէ ինչ է այդ Դէվի եղունգնդ. ''Դիվու ըղունկն կենդանի է ծովային,, [այս է Գաղիանոսի բառից ''ի ծովէ ելանէ,,ն], յեր-կան, ի սատափ կու նմանի. եւ այս ըղընկնին զինքն ծածկել է՝ որպէս ձկան փող[2], որ խոշոր լինայ...։ Իսպն [Պայթարն] ասէ, թէ ինքն սա-տափի պէս կենդանու [այս է անտարակոյս թարգմանութեան Դեղոց ըսածն ''Ինքդ հէտ մուր-ֆուրտին ըլնէ,,. որ ի բառս Գաղիանոսի սխալ կը գրուի հէտ մուրտին, չէտ մուրտի ամոչ] վրայ կու բուսնի որպէս հագուստ. եւ զայս ի յայն ծո-վուն կու բերեն՝ որ ի ծովեզերքն Սունպուլ կու բուսնի [այս է թարգմանութեան Դեղոց ''որ է Սնբուլ,,ն]... մէկն... սպիտակ է, եւ մէկն... մանտր է եւ սեւուկ է. եւ լաւն այն է որ սպի-տակ է, որ ի Եամանու կու գայ...։ Պատեհին ասէ թէ պարսկերէն այսոր ''Նախունի տէվ ասեն,,. տես ի Հոյքուաս, թ. 1775, ուր լատիներէն կը գրուի Strombus lentiginosus, եւ գղ. Blattes de Byzance։ ԶԱմիրտոլվաթայ բանս կը հաս-տատէ եւ Գէորգ. ''Նախի-նխոշ. Տեսակ ինչ փեգենայի[3], որ նման է եղնգան. եւ է անու-

---

1 Զծանօթութիւնս իւրաքանչիւր համարոյ տես ի կատարածի նոյն համարոյն։

շահոտ, որ մտանէ յոմանս բաղադրութիւնս հոտաւէտ իրաց. Թուրքերէն Իպլիս թըրնաղը [= Դիւի Եղունգն]. եւ արաբերէն Էզֆար էթ-թըյպ[4] [= Ազֆար ուլ տիպ, Թրգմ. Դեղոց. Աֆար ուլ տիպ, բառք Գաղիանոսի]. որ եւ ասի [պարսկերէն] Նախունտէյվ [= Եղունգն Դիւի], եւ Նախունի ֆէրրիէան,,: Այսպէս ահաւասիկ Ազֆար ուլ տիպ ծովային ժժմակն փոխուեր է յԱթոր, Աշտիալ, Յորեան կամ Ջաւար: — Սոյն Դէւէ Եղընկըն նման է գղ. griffe du diable, զորմէ կ'ըսէ Լիտրէ ի բառն Crochet, 21. „Crochet de matelot; nom vulgaire et marchand d'une coquille (pterocera chiragra), encore appelée griffe du diable et grande araignée mâle". տես անդ. եւ Strombe, անուն այլեւայլ խեցեմորթից: Իսկ Հայքուանքին Blattes de Byzance չկայ ի Լիտրէ: — Տես աստէն եւ զՀամարն ԺԱ, 586, Դեւու Եղունգ:

Ծանօթութիւնք.

1. (Երես 4.) Այս է անտարակոյս Հ. Ալիշանի յիշածն ըստ այլում Բժշկարանի ի Թ. 586. "Դեւու Եղունգ, Արաբերէն ալ Սաֆար ըլ-տիպ. այսչափ միայն յիշուի ի Հաւաքման բառից":

2. (Երես 4.) Իմա որպէս Թուրքերէն ֆուլ այսինքն Թեփ ձկան:

3. (Երես 4.) Թուրքերէն Սէտէֆ կը նշանակէ Թէ Գաղտակուր, զոր Ամիրտոլվաթ Սատաֆ կը գրէ, գղ. Nacre, եւ Թէ փեգենայ խոտ, գղ. Rue, զոր մեր Բժշկարանք կը գրեն Սազապ, Սատապ, եւս եւ Սատաֆ: Գէորգ սխալ իմացած է ի տեղւոջս Փէգէնայ, փոխանակ Գաղտակուր կամ Գաղտակրակն խեցի:

4. (Երես 5.) Շահրիմանեան արաբերէն Եղ-ֆոր է-ւլ ճէն կ'անուանէ զբոյսն կաղնձի, զոր Հ. Ալի-շան, Թ. 1276, կը գրէ կաղնծնի, կաղնձնի, եւ Եղդոր է-ւ-ճէն։

Գ. 151. "Առաքեալ. Ասորայ Բժշկարանի բառից մէջ գրուած է. "Հավարիօն՝ Առաքեալն է,,. բայց այդ Հավարիօն անուն ուստի՞ ծագած է. — չեմ կարծեր որ ըլլայ Ամիրտովլաթայ յիշածն "Հաւարի, որ է լուացած ցորենին ալուրն, եւ բարակ մաղած եւ եփած,,։ — 1646. "Հաւարի, Հավարիոն։ Տես Առաքեալ, Թ. 151,,։

== Իտալերէն Apostolicóne կ'ըսուի "իւղ կամ օծանելիք [իմա՛ Unguento, գղ. Onguent] ինչ բաղադրեալ յերկոտասան նիւթոց,,, ըստ թուոյ Առաքելոց. տես Ջախջախեան, Իտ.-Հայ.։ Այս է եւ Ասորայ "Առաքեալ,,ն, արաբերէն Հավարի (յգ. Հավարիյուն), Աշակերտ Քրիստոսի, Առաքեալ (Պօղաճ.)։ Եթէ չեմ սխալիր՝ Բէստէն կը յիշէ յիւր Բժշկարանին Հավարիյուն մէրհէմ։

Դ. 171. "Ասպանակ։ Նարեկի աղօթագրոց լուծմանց մէջ կ'ըսուի. Ասպանակն է Սառապիսեայ փայտն,,։ — Serapias անուամբ բոյս ճանչնան բուսաբանք կոլոռճիկներու (Orchideae) ցեղէն. բայց բո՞յս կ'ուզէ նշանակել մեր հեղինակն, թէ Եգիպտացւոց Սերապիս չաստուածոյն գլխարկը՝ որ էր գրիւ մի, իբր նշանակ առատութեան բերոց,,։ — 2340. "Շնորեակ. Բոշ́քեանն յիշէ զայս ի բառից Գալիենոսի, լտ. հոմանիշն այլ Serapios. այսոր ինչ ըլլալը

յիշած եմք Ասպանակ անուան տակ, թ. 171,,։

— 2708 [տպ. 2808]. "Սառապխեայ փայտ: Տես Ասպանակ, թ. 171,,։

= Ս. Գրիգոր Նարեկացի յիւրում Ճառին "Որք յԵգիպտոսէ են՝ ողջունեմ,,, կը յիշէ զՍառապխեայ փայտն, որոյ համար կ'ըսէ Հայ մեկնիչն. "Սառապխեայ փայտ: Լծ. Ասպանակն է զոր երբեր գետն, զոր ի պաշտօն առին. զոր ասէին՝ թէ զուստն ոչ գիտենք,, (տես Լուծմունք Բ, երես 259, 22 Ս. Ղազարու)։ Կայ եւ առ Մխիթարայ Այրիվանեցւոյ, Ժամանակագրութիւն. "Իսկ Երկրաչափութիւնն գտաւ առ Եգիպտացիսն, զի Նեղոս գետ յամենայն ամի առոգանէ զերկիրն. եւ ասպանակաւն ձողաչափ առնեն զանդս,, (տպ. Էմին, երես 34, տպ. Պատկ., երես 49)։ Ասպանակ կամ Ասպանուք է այն զոր Դաւիթ Անյաղթ կը կոչէ Սպանակ, Սահմանք իմաստասիր. ԺԷ, երես 199. "Զերկրաչափականն Եգիպտացիք գտին ի հարկէ. քանզի Նիւղոս գետոյ ի ծովանալ ի վերայ Եգիպտոսի եւ խառնակել զսահմանս արտավարացն՝ կռիւք եւ սպանմունք լինէին Եգիպտացւոցն ի վերայ իւրաքանչիւր սահմանի. մինչեւ իմացան չափ մի՝ որում անուն էր Սպանակ. զայն դնելով գտանէին զսահմանս իւրաքանչիւր արտավարաց. ուստի ապա եւ Երկրաչափութիւն գտաւ,,։ — "Ասպանակն է Սառապխեայ փայտն,, կը գտնուի՞ ստուգիւ ի լուծմունս Աղօթից Գր. Նարեկացւոյ, թէ Հ. Ալիշան սխալ գրած է փոխանակ Լուծմունք Ճառից Գր. Նարեկացւոյ, չկարեմ

ասել. զի ես ընթերցած չեմ զՆուծմունս Նարեկացւոյ Աղօթից. այսչափ միայն գիտեմ որ Ասպանակ եւ Սառապխեայ փայտ չեն բոյսք:

**Է.** 183. "Սարունճ: Յովասափ անուամբ բժշկական բառից եւ բանից հաւաքող մի՝ գրէ այս անունս, եւ կ'ըսէ, Սիլիկոնն է. լատինն Siligo, հասարակ ցորեն կամ ցորենի տեսակ մի նշանակէ [լտ. Siligo, որ եւ Secale, է Հաճար, գղ. Seigle, Թուրք. Չավտար], ըստ յունականի, σιλίγγιον [կամ σίλιγγις, գղ. Fleur de farine de froment],,: — 1366. "Կարմրադեղ: Որ է Սիլիկոն, կ'ըսէ բժշկարան մի. իսկ Սէլէկ-նն՝ է Սարունճ. տես Թ. 183 [տպ. 123],,:

= Սորանճ, պարսկերէն "Խորէնճ է կարմիր ներկ ինչ, որ կոչի հայերէն Նօթ, Թուրքերէն Սէ-լէ-կէն, եւ արաբերէն Սէլէքոն,,. Գէորգ. եւ ոչ թէ լտ. Siligo, Հաճար. իսկ ի Մէվէյժ եւ ի Շէնկէրֆէ լավէլ՝ Գէորգ կը գրէ հայերէն "Սրիկոն,,. որ է ըստ Գաղիանոսի Ա՝ "Սրիկոն. Կարմրադեղ,,, եւ ըստ Գաղիանոսի Բ՝ "Սիլիկոն. Կարմրադեղ,,: Արաբերէն Sericon կամ Siricon է գղ. Minium, տես M. Devic, ի բառն Alchimie, Թ. 46, եւ ընդարձակօրէն ի բառն Jargon:

**Ձ.** 189. "Արած: Քարերու եւ ծայռերու վրայ մաշկի պէս կպած բան մի, դեղին կամ կանաչ, որ թէ եւ չի նմանիր բուսոց սովորական ձեւին, բայց անոնց նման աճումն եւ սերումն ունի. Հասարակօրէն Եւրոպացիք Lichen

կ'անուանեն. եւ կան տեսակք որք դեղն այլ գործածուին ներկելու այլ,,. եւ այլն:

= Արծ կամ Արծ Քուրտօղլուշու՝ մորթի հիւանդութիւն մի է որստէպ կը յիշուի ի Ղեւտականին, գլուխք ԺԳ. եւ ԺԴ. եւ սովին մօք գրեալ է ի բառս Գաղիանոսի. "Ղիքէն. Արծ,,. որ է յն. Λειχήν, գղ. Dartre vive, կամ թերեւս Λεύκη, գղ. Lèpre blanche, maladie. կայ դարձեալ ի բառս Գաղիանոսի "ղէքոս (կամ ղքիս). Քառաքոս,,. որ նոյն յն. Λειχήν բառն թուի, անուն այն մամռատեսակ բուսոց որ կը բուսնին ի վերայ ծառոց, քարանց եւ որմոց, եւ գղ. կ'ըսուին նոյն անուամբ Lichen. տես Քարտոս ի Հայբուսակ, թ. 3163: Հակառակ Հ. Ալիշանի՝ որ բոյս կ'իմանայ զԱրած, Բոշքեան մորթոյ հիւանդութիւն կը համարի զԳարտոս, եւ կ'ըսէ. "Վատթար գոյն մորթոյ ի վատ ունակութենէ եղեալ, որ զքոս ինչ սպիտակ եւ զմաղն եւս սպիտակ առնէ. Leuce, Vitiligo, Գաղ. Բառ.,,:

Է. 248. "Արօսի: Հազորանի ծառի եւ պտղոյ տեսակ մի կամ նոյնանիշ անուն: Տես զայն ի կարգին,,:

= Արօսի, իբր Հազորանի ծառ (իմա՛ գղ. Cormier կամ Sorbier, թուրք. Իւվէզ աղաճը), կը գտնուի եւ ի Նոր Հայկազեանին, ի Ջախջախեանի Հայ.-Իտալականն, յԱռձեռն, ի Պօղաճեան՝ "Իւվէզ աղաճը. Հազորենի, Արօսի,,. ի Ճամճեանի Վեց լեզուեանն, երես 28. "Un

cormier, sorbier. *Հագորենի, Արօսի.* Իւվէզ–աղաճը,,:

*Բայց ինչպէս գրած եմ ի Հայկական բառաքննութեան, երեսք* 108—109, Արօսէ *նոյն է ընդ* Արօս, *գղ.* Outarde, *որ հաւ է, եւ ոչ ծառ: Գաղիանոս* Ա *կը գրէ.* "Ոտի. Արաւսի,,. *իսկ Գաղիանոս* Բ՝ "Ոսի. Արօսի,,. Ոտէ *է յն.* ωτίς, *լտ.* Otis, *գղ.* Outarde, *զոր Նոր Հայկազեանն, կ'իմանայ յն.* ὄα, *գղ.* Cormier, Իւվէզ–աղաճը: *Ռոշքեան կը գրէ.* Արօսէ. *Հաւ է մեծագոյն քան զբու, զականջս փետրաւորս ունի եւ ձիգս.* Otis tarda. Assio. *Գաղ. բառ:* Փլին. [*այս ինքն Պլինիոս*] Ժ., ԻԳ,,: Աշխ. ԻԱ. "Փասիան, արօսէ, *ի հեշտութիւնս են մարդկան*,,: *Որիշ կը գրէ եւ* "Արօս. *Հաւ նման արագլի, բայց մեծագոյն քան զնա որ ընդ բարձունս թռչի, եւ զորս յամառնային ժամանակս տեսանեմք*,,. (արօղ). Ardea [*գղ.* Héron]. Մատ. Պտմ. ՂՀԱ [*այս ինքն* Մոլթ. Ուռհ. *երես* 446]. "*Ժողովեցան արագիլք եւ կռունկք եւ* արօսք, *եւ կռուեցան ընդ միմեանս*,,. — Տաղ թռչ.

"Արօսն *էր մեծ զերթ ոչխար,*
*Ջօրն ի դաշտերըն շուրջ կու գայր:*,,

**Ը.** 258. "*Աւիւն. կամ տեսակ մի է կամ հոմանուն կնիւնի: Տես զայս*,,:

= Անտարակոյս *Հ.* Ալիշան *գտած է ուրեք ի Հաւաքման բառից.* "Աւիւն. կնիւն,,, *եւ կարծած թէ կնիւն խոտն է, գղ.* Jonc. *մինչդեռ արժան էր ընթեռնուլ* "Աւիւն. կնիւն,, (*ն գի-*

մորոշ), այս ինքն թէ «Աւիւն, որ եւ կնիւ», յոր անուն կը կոչուի ի Հայուս տեսակ մի մեծ ճանճ՝ խայթիչ արջառոց եւ ձիոց, ըստ Գաղղիացւոց Oestre. տես զայս բառ յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս, հանդերձ Աւիւն եւ կնիւ բառից վկայութեամբք։

Թ. 343. «Բէջար կամ Բէչար։ Յիշէ Սալաձորցին, եւ վկայէ՝ թէ «Հոտն անուշ է»։
= Սալաձորեցւոյն բանքն են.

«Բարձուեննեկին գոյնն է պակաս, հոտիկն
անուշ է բէչարուն.
Քանց ամէնըն խոնարհ կենայ ու կու բուսնի
ծաղկանց հեռուն».

այս ինքն՝ Հէք (պրս. Պէչարէ. տես զբառդ ի Պօղաճ. եւ ի Գէորգ) բարձուեննեակն (գղ. Aurone), որոյ գոյնն է պակաս, հոտիկն անուշ, խոնարհաբար կը բուսնի այլ ծաղկներէ հեռու։ Նաեւ այլուր ի Տաղէ Ծաղկանց Սալաձորեցւոյն կը գտնուին պարսիկ բառք, զոր օրինակ «Դատոր (պրս. Տէնոր) լինի ծաղկընեռուն»։ Համեմատէ ընդ Բէչար բառի՝ Բէխոդր (պրս. Պէխոդէր = Անտեղեակ), եւ Բէչըմր (պրս. Պէչէմր = Անհամար), որ կան ի Տաղին Կոստանդնի Երզնկացւոյ «Յաղագս անցաւոր մեծութեան»։

«Հասեալ են ի դուռն ի մահուն բէխոդր,
Զգիտեն թէ խորել են ի ծով զերդ կապար.
Ունին գանձ անթիւ ու հեծել բէչըմր,
Շուտով յայն փառացն եղեն զերուզապար».

(պրս. Զէյրէ-զէպէր = վայր ի վեր)· տես Բազմավէպ 1866, երեսք 234, 235։

**Ժ.** 458. «Գետնի աղիք. որ եւ Գետնի պտուղ. գուցէ լաւ եւս համարուի Երկրմայր անունն Հայերէն. որոյ համար Բժշկարանն [տպ. Բժկարանն] կ'ըսէ, «խոտ է. երկու ազգ է, մէկին ծաղիկն կարմիր եւ մէկին ծիրանի՝ զէտ կապուտ»։ — 269. «Աքսար...։ Հաւանօրէն այս է եւ Հայերէն Գետնի պտուղ եւ Գետնի աղիք կոչուածն, այլ եւ Երկրմայր, զորս տես ի կարգին»։ — Տես Գետնի աղիք եւ ի Թ. 681։

= Նոր Հայկզ. կը գրէ ի բառն գետին. «գետնի պտուղ կամ գետնի աղիք. որ եւ Երկրմայր [տպ. Երկրամայր]. ըստ բժշկարանի է Սողունն Հողային. եէր օղլանը, խուրմաթին»։ Եւ ի բառն Երկրմայր. «Երկրմայր. գետնի պտուղ. տես ի բառն գետին։ Դարձեալ՝ ըստ բժշկարանի, «Երկրմայր՝ խոտ է երկու ազգ. միոյն ծաղիկն կարմիր, եւ միւսոյն ծիրանի զետ կապոյտ»։

Երկրմայր, իբր ծաղիկ, կը ցաւիմ որ չգիտեմ թէ յո՛ր Բժշկարանէ է. բայց գիտեմ զմիւս նշանակութիւն բառիդ, որ է Որդն (կամ Սողուն հողային, ըստ Նոր Հայկզ.), գղ. Ver de terre. Ամիրտովլաթ կ'ըսէ «յԱնգիտի անպէտ»ն, երես 72 verso. «Երկրմայր, որ է խառատինն. յիշած է ի վերայ խէին կամաւքն Աստուծոյ»։ Նոյնպէս կը ցաւիմ որ չկարեմ յառաջ բերել զվկայութիւնս գետնի աղիք եւ գետնի պտուղ

բառից, զորոց զտեղիսն միայն նշանակած եմ յիմ Բառագիրս Ստորին Հայերէնի յԱմիրտոլվաթայ «Անգիտի անպէտ» գրոցն։ Բայց այլ երկու փաստերով կրնամ հաստատել որ Գէտնէ ողէ եւ Գէտնէ պտուղ ոչ են բոյս, այլ գղ. Ver de terre, Թուրքերէն Եէր օղու-ըճանը։ Առաջինն է Խորտուէն կամ Խստուէն բառն՝ զոր յիշեցի ի Նոր Հայկազեանն եւ յԱմիրտոլվաթայ. Գէորգ կը գրէ. «Խորայնահ. Ջեռուն ինչ կարմիր՝ որ ի հողոյ արտադրի. Թուրքերէն Սօղու-ըճան. արաբերէն Խէրտուէյն. = Խորտուէն, Խստուէն, այս ինքն գղ. Ver de terre։ Երկրորդն է Փորտէի Էրէրէ (= Գէտնէ ողէի) աստցուածն, բառական թարգմանութիւն յունականին ἔντερον γῆς, գղ. Ver de terre, որ կը գտնուի ի Նեմեսիոսի[1] Յղ. Բնութեան մարդոյ մատենին, գլ. Ա, 13. «Իսկ դարձեալ ի պինսն եւ յայլսն խեցէմորթսն՝ հպեցոյց զգնայուն կենդանեացն լինելութիւնն, զոչ կարողացն երթալ հեռաւոր, այլ անդէն անդ շարժեցելոց. քանզի են եւ այսպիսիք ինչ բազումք ի խեցէմորթիցն, որք կոչին Փորտէի Էրէրէ»։

Ծանօթութիւնք.

1. Ի թ. 522 Հայբուսակի «Ս. Գրիգորի Նիւսացւոյ բնութեան գիրք», ուղղելի է Նեմեսիոսի։

**ԺԱ.** 586. «Դեւու Նղունգ. Արաբերէն ալ Սաֆար էլ-տիւ. այսչափ միայն յիշուի ի Հաւաքման բառից»։

== Տես ի Համարն Բ, ուր ցուցի թէ Դէ–է
Եղ––նգնն ծովային ժժմակ կամ խեցեմորթ մի է։

**ԺԲ.** 659. «Ողնակճիճ. Ռոշքեանն՝
նախ Cantharida միջատը նշանակէ այս բառիւ,
բայց կ՚ըսէ, թէ «է եւ խոտ, որով որսորդք
զնետս թիւնեն. յոմանց Եղ–նց Նոյն կոչի»։ լտ.
անծանօթ բառ մի գուգէ, Limeum?„

== Գաղիանոս Գ. կը գրէ. «կանթարի-
դաս. Աստուծոյ Եղ–կշէշ է„. Գաղիանոս Դ՝ «կա-
նարիդաս. Աստուծոյ Եղ–կ ասեն ճիշոն է„.
ուղղագոյն Գաղիանոս Ա՝ «կանթարիդաս. Աս-
տուծոյ Եղ–կ. ճճի է„. եւ Գաղիանոս Բ՝ «կան-
թարիոս. Աստուծոյ Եղ–կ, որ է ճէճէ թեւաւոր„։
Չիք ուրեմն Եղ–կշէշ բառ. այլ Ա–տ––ծոյ Եղ–կ,
ճճի, որ է յն. Κανθαρίς, սեռական Κανθα-
ρίδος (= կ–նթ–րէ–––), գղ. Cantharide։
Տես եւ յԱռակս Մխիթարայ Գոշի, կ. երես 58,
Ա–կէ Եղ–կ, ճճի։ Ռոշքեան ի մտաց կարկատած
է թէ Եղ–կշէշ անգոյ բառն կը նշանակէ եւ
զայն խոտն՝ զոր Պլինիոս կը կոչէ Limeum, ան-
գիտացեալ ի Հ. Ալիշանէ. Pasini կը գրէ.
„Limeum; Plin. [իմա՝ Plinius], իտ. Limeo,
erba, colla quale i cacciatori tingono le
saette, detta volgarmente Velen di cer-
bio" («խոտ՝ որով որսորդք օծանեն զնետս.
ռամկօրէն Նոյն Եղջեր––է„)։ — Ա՛յլ է նորա-
հնար բառն, Թ. 2042, Մէղ–––կշէշ, փոխան.
յն. Τράχηλος, լտ. Trachelium, գղ. Tra-
chélie„. բայց յն. Τράχηλος կը նշանակէ
պարանոց, ծոծրակ։ Հ. Ալիշան անշուշտ ուզած

է գրել Τραχήλιον, գղ. Gantelée, sorte de Campanule plante, ըստ Լեննէի Campanula trachelium։ Տես Gantelée ի Լիտրէ։

**ԺԳ.** 708. «Ձինջարակ, Ձինջուփր, Ձնճպիլ: Գալիենոսի բառից մէջ առաջին երկու անուանց դիմաց տարօրինակ կամ այլայլեալ անուն մի գրուած է, Եղուրոտ կուզ? Տես կոճապղպեղ»։

= «Զնճպիլ (պրս. Զէնճէպիլ) = կոճապղպեղ»ն, գղ. Gingembre. ոչ ինչ գործ ունի ոչ ընդ «Ձինջարակ, Ձինջուփր», եւ ոչ ընդ «Եղուրոտ կուզ?» Գալիանոս Դ. է որ կից կը գրէ «Եղուրոտկուզ, Ձինջարակ, Ձինջուփր», փոխանակ որիշ գրելոյ «Եղուրոս [եւ ոչ Եղուրոտ], կուզ». «Ձինջարակ, Ձինջուփր»։ Եղուրոս է յն. Αἴλουρος, գղ. Chat (յայտ է որ Հայերէն կուզ կը նշանակէ թէ կատու եւ թէ գղ. Fouine). Իսկ Զինջուփր է արաբ. Զինճէֆ կամ Զինճէրֆ, պրս. Շէնկէրֆ կամ Շինկէրֆ, գղ. Cinabre ըստուած ներկն, կինաբարիս, խրուկ։

**ԺԴ.** 3317. «Թաւալ: Տես Թզենի, Թ. 807». ուր կը յիշուի ի Վաստակոց Գրոց «Թաղ կամ Թօղ թուզ», իբր մասնաւոր անուն վայրի թզոյ։

= Այսպէս ի Գիրս Վաստակոց կը գտնուի «Թաղ թուզ», Խթ, 38. ՅԺԴ, 212. «Թօղ թուզ», ՅԺԷ, 215. եւ «Թաղ թզենի», ՄՂ, 191. բայց ոչ է յատուկ անուն վայրի թզոյ եւ թզենւոյ, այլ Թաղ կամ Թօղ կը նշանակէ

վտիտ, ճռզած, ինչպէս կ՚երաշխաւորէ Վահրամ վարդապետի յաջորդ տեղիդ ի ճառին է Յով-հաննէսն Երզնկացւոյ եւ յԱծմամ Լեւոնի Բ.ի որ-դւոյն Հայոց. «Ծառք, եւ մանաւանդ թզենի, արտաքոյ սահմանաւոր ժամանակի նախկին ըն-ձիւղեալ պտուղքն սին եւ Նուաղ լինին». այսպէս Նոր Հայկզ. ի բառն «Թուպ». բայց տպագիրն Երուսաղէմի (Հրատ. յամին 1875), երես 31, ունի «սին եւ Նաֆար լինին»:

**ԺԵ.** 882. «Լախլախայ? Տարակուսելի բառ, զոր յիշէ Մխ. Հերացի (երես 97) եւ մաղձի լուծման դեղ գրելով՝ պատուիրէ հիւանդը հով (զով) տուն մի բնակեցընել, եւ սփռել տան մէջ վարդ եւ քանի մի տեսակ տերեւ, եւ աւելցընէ. «եւ ի տանն յանկիւնն դիր լախլախայ, որ հովային եւ անուշահոտ ջրով լինի եփած»:

== Նոյն բառն կը գտնուի եւ այլուր առ Հերացւոյն. «Ապա թէ հիւանդն նուաղի, դուածէ ի մարմինն հով լախլախով». ԻԲ, 44: Լախլախայ, պրս. «Լէխլէխէ է անուշահոտ բաղադրութիւն ինչ առ ի փարատել զնեխութիւնն օդոյ». Գէորգ:

**ԺԶ.** 904. «Լեպեդիս: Հին Բժշկարանն ուրիշ բուսոց հետ յիշէ՝ ակընջի՝ դեղ. թերեւս ըլլայ Lepidium որ է ըստ մեզ Նուարտակ»: — 3126. «Քաղկու? [տպ. Քաղկու!] Հին Բժշկարանն ակընջի մէջ աճած մսի դեղ գրէ, «Լեպէդիս (Lepidium, Նուարտակ), Քաղկու,

ճնարակ, միաչափ արա եւ մանրէ, մեղրով եւ քացխով յարո եւ ուէճնիշ արա, եւ կամ զդեղդ ցամաք ի ներս փչէ„։

= փոխանակ Լէպէտէ [Lepidium = Նուարտակ], Քօղնօ? կարդա անբաժան Լէպէ-տէօտօղնօ, ուղղագոյն Լէպէտօտօղնօ, յն. Λεπιδό-χαλκος, գղ. Écaille ou Paillette de l'airain qu'on bat sur l'enclume, Պատառ պղնձոյ։ Բառիս վերջին մասն է թերեւս ի Գաղ. Ա. եւ Բ. "Քօղնօէ. Պղինձ մանրեալ„։ ‖ Թուի թէ Ա. Բժշկարանի Լէպէտէօտօղնօ, կամ ուղղագոյն Լէպէտօտօղնօ, բառի մօտք ըստ է Մխ. Հերացի ի Մխիթարութեան ջերմանց, ԻԷ, 74, Պղնձէ ճէբճօէ. "Ա՛ռ ... պղնձէ ճէբճօէ, եւ Բանկի Հունդ, որ է Աղջէշ Բանկ, յամէն մէկէ մի դրամ. զայս ամէնս աղա եւ մաղէ՛, եւ խաշխաշի ձիթով շաղվէ, եւ ի վերայ տեղացն սպեղանի արա՛„։ ‖

**ժէ.** 981. "Խաղողիկ: Անունէն տարբեր բոյս է, ըստ բառից Գալիենոսի, ուր գրուի Կէանօս, յն. Κύανος, լտ. Cyanus, ըստ գունոյն՝ որ է կապոյտ, ինչպէս անուանի եւ փ. Bluet. այլ եւ Barbeau, Casse-lunette եւ այլն. ըստ բուսաբանից՝ Տերեփուկի (Centaurum) ցեղէն է. տես եւ զայն։„

= Կը գրէ եւ Նոր Հայկզ. "Խաղողիկ. 1. յն. Σταφύλιον, Uvula. եւ եւս յն. Κύων χυλίνη. Bubus canina կամ Uva spina, Crespina: Մանր խաղող. եւ որ ինչ նման է նմա. Քիւչիւքտիլ, Քուշիւ տիլի, Քուզու տիլի, Քէչիտիլ, Էլի տիլի, Իւզիւմ տիլի, եւ այլն.

Գաղիանոս։ — 2. Խաղողիկ. որ գրի եւ խաղալիկ, խաղալէք, Ղաղուկ. յն. Σταφυλὴ, Uva, Uvula, Gurgulio. Մօսորդ, զանգիկ, լեզուակ, մակալեզու. եւ ցաւ նորին. [աշխարհաբար] կոկորդի. պզտի լեզու. տիլճիկ. Գաղիանոս„։

Խաղողիկ ոչ է գղ. Bluet ծաղիկն, եւ ոչ Մանր խաղող. այլ Ջանգիկ, Լեզուակ, ինչպէս կը գրէ Նոր Հայկզ. յերկրորդ նշանակութեանն, գղ. Luette. ի բառս Գաղիանոսի "Կէոնոս. խաղողիկ„ է յն. Κιονίς, գղ. Luette du gosier որ կ'ըսուի եւս Κίων։ Այս խաղողիկ կը գտնուի եւ ի հատածի իմիք Յակոբայ բժշկապետի (Բժշկարան ԺԳ, երես 15, 22 Ս. Ղազարու). "Խեղդումն փողիցն, եւ խողախեղդութիւնք, եւ անկումն խաղողիկին [գղ. la chute de la luette], եւ ցաւ ատամանցն„։ Այլուր. "Եւ տամ ձեզ երդումն... ի սուրբ բեւեռն Քրիստոսի՝ որ Տեառն արեամբն ներկեալ էր, թէ խաղողիկն ես, ...թէ գլխիվայրն ես, թէ գլխիվերն ես, թէ յողն (կամ յուլն) ես, թէ ծողն (կամ ծուլն) ես, թէ շարժուն ես, թէ ելուն ես„ (Բժշկարան Ջ, երես 418, 22 Ս. Ղազարու)։ Կայ եւ խաղողան ի Բժշ. Ա, երես 125, զորոյ զվկայութիւնն ընդօրինակած չեմ։ Դիտելի է որ լտ. Uva կը նշանակէ թէ խաղող եւ թէ խաղողիկ, այս ինքն Ջանգիկ. նոյնպէս իտ. Uva, խաղող, եւ Uvola կամ Ugola, խաղողիկ, Ջանգիկ. եւ գղ. Luette, որ կը ստուգաբանի Մանր խաղող։

**ԺԲ.** 1105. «Մոզուկ: Ջրային մամուռ է, սովորաբար խօզ գրուի. տես զայն»: — 1167, ի բառն խօզ. «Գալիենոսի բառից մէջ գրուած է Ասորկա բառի դիմաց՝ Մոզուկ. Համանօրէն Alga, փ. Algue»: — 1957, ի բառն մամուռ. «Լօռ, խօզ, Մօզուկ, խոզխոտ»: — 1443. «Կոզուկ. ըստ Ստ. Ռոշքեան է լտ. Solanum, փ. Morelle, որ կամ Շնխաղողի տեսակներէն է կամ Պատնիճանի պէս թանձր բանջարեղէն մի: Բառգիրք [որ Բառգիրք] գրէ. «Ստրխնոս, Կոզուկ, Strychnus [տպ. Strycnus]». սա նշանակէ ժանտ-ընկոյզ կամ ործացուցիչ ընկուզենին[1], փ. Vomiquier, որ թուփ կամ ծառ կ'ըլլայ. պտուղքն հատեր են կակուղ մսով, որոց մէջ մէկ կամ աւելի կուտ կ'ըլլայ»:

= Եւ սակայն Նոր Հայկզ. ուղիղ գրած է. «Խոզուզէ, որպէս թէ խոզ փոքրիկ. այն է ազգ Ոզնւոյ [գղ. Hérisson]՝ իբր խոզանստեւ, յն. ὕστριξ, որպէս խոզաստեւ [hys = խոզ, thrix = Մազ, Ստեւ], լտ. Hystrix. Գաղիանոս». որ է գղ. Porc-épic. ի բառս Գաղիանոսի՝ զոր Ռոշքեան ունեցած է ի ձեռին՝ սխալ գրեալ է «Ստրկա [եւ ոչ Աստրկա = Alga] Խոզուզէ», ինչպէս սխալ կը գրէ եւ Գաղ. Ա. բայց Գաղ. Բ. ուղիղ կը գրէ «Ստրկա. Խոզուզէ»: Զայս Ստրխ- փոխանակ իմանալոյ յն. ὕστριξ, գղ. Porc-épic, Ռոշքեան շփոթած է յն. Στρύχνος բառին հետ, գղ. Morelle noire ou vulgaire, plante: diverses espèces de Solanum, et autres plantes de la même

famille. Հայերէն Մորմ, Շնխաղող. իսկ Հ. Ալի-
շան կը շփոթէ լտ. Alga = Ջրային մամուռ
բառին հետ։ Ցոյն Στρύχνος բառի անուամբ
կը կոչուի գղ. եւ le Strychnos noix vo-
mique, dit vulgairement Vomiquier, Լիտրէ։

Ծանօթութիւն.

1. (Երես 19.) Այսպէս կ'ըսէ Հ. Ալիշան
եւ ի Թ. 2329, թէ "Բուսաբանք Strychnus ա-
նուամբ հիմայ կ'իմանան հնդկային ործացուցիչ
ընկոյզը„. այլ յն. Στρύχνος կը թարգմանուի
Solanum, ինչպէս գրեալ է արդէն ի Թ. 2117։

**ԺԹ.** 1206. "Ծկու: Գաղիենու բառից
մէջ այսոր զուգանիշն է Դրէմիսէն. որոյ նոյնա-
ձայն կայ Drimys կամ Drymis բոյս մի, բայց
նորագիւտ աշխարհաց Ամերիկոյ եւ Աւստրալիոյ.
սակայն կայ եւ Drymeia բոյս, Carex կոչուած
պրտուեղինաց տեսակներէն։„

= Եթէ Գաղ. Դ. սխալ կը գրէ "Դրե-
միսին, ծկու„, բայց Գաղ. Գ. (նոյնպէս եւ
Գաղ. Ա) ուղիղ կը գրեն "Դրեմեսին, կծու„,
որ է յն. Δριμύς, գղ. Aigre = Թթու,
Âcre = կծու, Acerbe = Դաժան, Տտիպ։

**Ի.** 1317. "Կապուտակաղեղ: Հին
Բժշկարանն՝ Հոռոմ ձիթոյ հետ դեղ կարգէ
լուսն իջած աչքի, եւ այտուցի, եւ այլն։„

= Չեմ կարծեր թէ Կապուտակաղեղ
է բոյս, այլ ներկ կամ նիւթ։ Տես ի համարն Ե
Կարմրադեղ = գղ. Minium, կայ եւ Սպիտակա-
դեղ (Մատթէոս վարդապետ, ի գիրս Եւագրի

պոնտացւոյ) կամ Սղէտան տեղ (Գիրք Վաստակոց, ճՀՋ, 114. ՅԺԲ, 210. ՅԻ, 218. Բժշ. Ա. 47), գղ. Céruse: — Նեմեսիոսի (Յղ. Բնութեան մարդոյ, Դ, 64, տպ. Ս. Ղազարու, 1889) Զուրեփ-տեղեան բառն կը մեկնուի ի լուծմունսն (անդ, ծան. 1). "Զուրեփտեղեանն է չորս տեղ, զոր առնուն նկարողք զսպիտակն եւ զսեաւ, զկարմիր եւ զկապոյտն, եւ կամ եւս աւելի տեղս,,: || Նման կապուտակադեղ, կարմրադեղ, Սպիտակադեղ բառից ունինք եւ Սեւադեղ, որ է թանաք, կամ յունաբար Մելան: ||

**ԻԱ.** 1325. "*Կառաբոյս*: Անուամբ եւ նմանութեամբ բոյս, այլ էութեամբ կենդանի, կամ միջասահման եւ միջնորդ բուսեղինաց եւ շնչաւորաց. անոր համար կոչուի եւ Կենդանաբոյս կամ Կենդանատունկ, փ. Zoophyte [տպ. Zoophite],, եւ այլն: Տես "*Կառաբոյս*,, եւ Թ. 1301, ի մեկնութեան կանկատունկ բառի:

= կառաբոս (եւ ոչ կառաբոյս) է յն. *Κάραβος*, գղ. Langouste, այս ինքն առանց յառաջակողմեան մեծ ճանկերու Աստակոսն (գղ. Homard), պէօճէք ըստ թուրքաց: Նեմեսիոս կ'ըսէ (Յղ. Բնութեան մարդոյ, Դ, 59). "Բայց ոչ ամենայն կենդանիք զամենայն մասնկունս մարմնոյ ունին. այլ է ինչ՝ զոր ոչն ունին. քանզի ոմանք ի նոցանէ առանց ոտից են, որպէս ձկունք եւ աւձք. եւ ոմանք անգլուխք[1], որպէս կարկինոսն եւ կառաբոսն [տպ. կառաբոյսն] եւ այլք ի լուղակացն. քանզի ի լանջսն ունին զզգայարանսն, վասն ոչ ունելոյ նոցա

գլուխս„: Բնագիրն կ՚ըսէ *Καρχίνοι καὶ Κάραβοι* (լտ. թարգմանութիւնն՝ cancri et carabi), ինչպէս եւ ի գլուխն Բ, 30, ծան. 1, զոյգ կը յիշէ *οἱ Κάραβοι καὶ Καρχίνοι*, զոր Հայ թարգմանիչն փոխած է “կարկինոսքն եւ գաղտակուրքն„: Ի “Նեմեսիոսէ առեալ կը գրէ եւ Վարդան Արեւելցի (Պտմ. 4, տպ. Ս. Ղազարու). “Իսկ ի հինգ շուրջն եւ ի վեցն, եւ հրաման ի ջուր եւ յերկիր վասն կենդանեաց, սկսեալ ի կարաբոս [տպ. ի կարաբոյս] եւ ի սպունգս„: Ա՛յլ օրն. “Եւ Աստուած զնշան կենդանութեան ի կարաբոս եւ ի խեցեմորթս„. Ցայսմաւուրք, Արեգ ԺԴ. (տես “կառաբոյս„ ի “Նոր Հայկզ., ուր գրեալ է ի կարաբոյս): Սոյն *Κάραβος* բառն թարգմանեալ է կարբ ի Բարսղի Վեցօրէին, Է, 140. “Ողորկապատեանք, այս ինքն կարբք [ըստ Զ. Անտոնեան Հարց. տպագիրն՝ կաղք] եւ խեցգետինք„. զոր Fialon կը թարգմանէ „les crabes[2] et les écrevisses“. երես 447: Իսկ Առաքելի Սիւնեցւոյ ի Մեկնութեան Սահմանաց Գրոց Արիստոտելի [Արիստոտէլի° թէ Դաւթի Անյաղթի[3]] ըսելն, “կենդանաբոյսն՝ այս ինքն Կարաբոյսն՝ որ ի ծովեզերքն լինի, որ բուսեալ է ի քարն եւ արմատացեալ է ի նմա„, եւ այլն, համարելի է յառաջագայեալ յանգիտութենէ նշանակութեան *Κάραβος* բառի, զվերջին վանկն բոյ՝ հայերէն բոյս կարծելով: Ասարայ Սեբաստացւոյ “թուխբ. կարաբոյս„ն (Հայբուսակ, Թ. 812) անծանօթ է ինձ:

Ծանօթութիւն.

1. (Երես 21.) Ըստ այժմու գիտնոց Անգլուխք (գղ. Acéphales) կը կոչուին Ոստրէք, Ձկան ականջքն (գղ. Moules)։

2. (Երես 22.) Բայց ըստ Alexandreի *Κάραβος* է Langouste։

3. (Երես 22.) Դիտել տուած եմ թէ Հ. Ալիշան ի Թ. 1325 "Արիստոտելի" վերագրած է զՍահմանաց գիրս՝ որ Դաւթի Անյաղթի է։ Նոյնպէս ի Թ. 868 կը գրէ Հ. Ալիշան. "Արիստոտելի Սահմանաց գիրք"։

**ԻԲ.** 1366. "Կարմրաղեղ. որ է Սիլիկոնն", կ'ըսէ բժշկարան մի. իսկ Սիլիկոնն է Սարունճ. տես Թ. 183 [տպ. 123]։

== Տես ի Համարն Ե։

**ԻԳ.** 1440. "Կշայ? Ոչ բոյս, այլ ծառոց խէժ կամ ռետին կ'ըսուի"։

== Այս բառ կը գտնուի ի Վարդանայ Արեւելցւոյ Մեկնութեանն Ծննդոց Գրոց, համանիշ նաւթի կամ կպրոյ, գղ. Bitume, որ չէ խէժ կամ ռետին ի ծառոց, այլ ի խորս երկրի կը գտնուի. "Նաւթիւ ծեփեսցես (զտապանն), որ է նա ինքն կշայ". — "Խորովեալ հրով աղիւսովք եւ կշայիւք ծեփաւք (շինէին զաշտարակն)". տես "Կշայ. ի Նոր Հայկզ.։ Ի գիրս Ծննդոց, Զ. 14, կ'ըսուի Նաւթ. եւ ԺԱ. 3, Կուպր։

[Դիտողութիւն։ — Հ. Ալիշան ունեցած է ի ձեռին Հաւաքումն մի (Թերեւս Հաւաքմունս) բուսական կամ կարծեցեալ-բուսական բառից՝

քաղելոց յԱռձեռն Բառարանէն, որ Նոր Հայկազեանի բառից գումարութիւնն է ամենամեծ մասամբ՝ առանց Նախնեաց վկայութեանց։ Այսպիսի 9 բառ կը յիշէ Հ. Ալիշան՝ եւ կը խոստովանի որ զուստն կ'անգիտանայ, մինչդեռ ի Նոր Հայկազեանին նշանակեալ են տեղիքն.

1. Թ. 36. «Աձուր, կամ Այձուր, կամ Այձուռ։ Այսպէս կոչեն ոմանք Սեւ կաղամախին Populus Nigra, բայց ի գրո՞ց է թէ ի ռամկաց լսուած այս անունս, չեմ գիտեր»։ — «Այձուր կամ Այձուռ. գ. անուն ծառոյ։ Տես ի բառն կաղամախ»․ բայց ի «կաղամախ» կը մոռանայ զբառդ Նոր Հայկզ.։

2. Թ. 542. «Դուժանման? Դամասկացի Սալորն այսպէս կոչուած է. բայց կոչողն ինձ անյայտ»․ եւ ի Թ. 2683, կը յիշուի դարձեալ Դուժանման իբր ազգ ինչ Սալորոյ։ — «Դուժանման+ (եթէ չկայցէ վրիպակ գրչի). Դնի փոխանակ յն. ձայնիս *Βράβυλον*, որ է Ազգ շլոռոսի. կամ սալորի՝ Դամոն դամասկեան կոչեցեալ, «Ոչ ի դուժանմանս ինչ, եւ կամ ի կաղնիս կամ ի նոյնպիսի պտղոցն վայելմունս լինելով՝ »Գր. Նիւսացի, Մեկն. Երգոց Երգոյն»։ [Յն՝ *Βράβυλα* է գղ. Prunelles, sortes de petites prunes sauvages։]

3. Թ. 1440. «Կշայ»․ զոր ի վերոյ գրեցի։

4. Թ. 2560. «Պղատան. յիշած է բառահաւաք ոմն. երեւի թէ տառադարձեալ յն. բառն է *Πλάτανος*, եւ լտ. Platanus, որ է Սօսի ծառն»։ — «Պղատան. գ. բառ յն. Ազգ

մայր փայտի. յն. *Πλάτανος*, Platanus„. կապեցին զսուրբն ընդ գօսացեալ ծառ մի պղատան ձեռս յետս. «Յայսմաւուրք, Մայիս ԻԹ„.

5. Թ. 2601. «Պաէմ. վայրի թզենի կ'ըսուի. բայց գրողն անյայտ է ինձ. գուցէ ըլլայ պսեմն:„ — Պաէմն, ի, ից. գ. բառ անյայտ. որպէս թզենի պարտիզաց կամ դաշտաց. «ի թզենեացն՝ են որ բերեն պտուղ, եւ որք զնոյն ոչ ընկալեալ զստուեր զարուի պաէմնիցն, դոյնպէս լինին. Եփր. աւետար.„ [փոխանակ «Եփր. աւետար„. կարդա՛ «Եփր. ի Մարգարիտն յայտնութիւն„. Հ. Բ. Մատենագրութեանց Սրբոյն Եփրեմի, երես 361:]

6. Թ. 2685 [տպ. 2585]. «Սալաաղաջար?„ սա չէ բոյս, այլ Սալաա աղաջար: Տես ի Համարն ԼԱ:

7. Թ. 2836. «Ստրոբիլենէ? Յիշեն բառահաւաքք առանց բացատրութեան, եւ թուի հետեւեալն, Ստրոբողոն [տպ. Ստրոփողոն], վայրի փստղենի„: — «Ստրոբիլենէ. գ. բառ յն. *Στρόβιλος, στροβιλεών*. Pinus, pinetum. Սոճի, շոճի. մայր ծառ՝ որպէս վայրի փստղենի, յորմէ ելանէ մարխ. «Զպօղոս գլխատեցին առ ստրոբիլենէ ծառովն„. Ճառընտիր Բ.„: [Յն. *Στροβιλέα* է գղ. Pin:]

8. Թ. 3003. «Տէլէլ. Բառահաւաք մի նշանակած է իր բուսական ցանկին մէջ„: — «Տէլէլ. գ. Խոտ՝ որ ունի բրդոտ տերեւս. Գաղիանոս, ըստ Սահփ. Լեհ.„ [իմա՝ ըստ Սահփ. կամենիցացւոյ, որ է Ռուշքեանն:]

9. Թ. 3225. "Քոքն? Նշանակած է բառահաւաք ոմն„: — "Քոքն. ա. [պիտի՝ գ. = գոյական]. բառ անյայտ, որպէս բոյս ինչ կամ մետաղ. զի ուր գրի ըստ Հյ. Մաքս. ի Դիոն. "Այլ եւ յանշունչս գտանես այսպիսի զօրութիւնս՝ ի բոյսս եւ ի Քոքնս„. ի յն. գնի, "ի բոյսս, եւ ի խոտս, եւ ի մետաղս„: Տես եւ Քսուկ: [Թերեւս ուղիղն է՝ "ի բոյսս եւ ի Քարինս„:]

Ցիշեմ եւ զնորահնարն Խնձորեղ, զոր նոյնպէս կ'անգիտանայ Հ. Ալիշան ի Թ. 1075. "Խնձորեղ. նոր բառահաւաք մի նշանակած է. անծանօթ է իսկութիւնն„: Ձայս բառ յարմարած է Ճամճեան յիւր Իտ.-Գաղղ.-Հայ.-Տճկ. Բառարանին իտ. Matricale, գղ. Matricaire բուսոյն. եւ ի բառն Tanaceto, գղ. Tanaisie, կը գրէ դարձեալ Ճամճեան. "խոտ ինչ նման Խնձորեղոյ„: Խնձորեղ է ի բառից Խնձոյ (արգանդի) եւ Դեղ:]

**ԻԴ.** 1443. "Կոզուկ, գղ. Morelle կամ Vomiquier„:

= Տես ի համարն ԺԸ. ուղիղն է Խոզուկ, գղ. Porc-épic:

**ԻԵ.** 1473. "Կոյշ? Անծանօթ անուն մի եւ նիւթ, որոյ նոյնանիշ յոյնն ըստ բառից Գալենու է ուրիշ անծանօթ մի, Դոփերէ?„ 1526. "Կուշ. թերեւս Կոյշն է„ (Թ. 1473): — 1571. "Կօշ: Տեսակ մի կարծրակեղեւ դդմոյ. Թ. Մխ. Գոսպարչ...: Հաւանօրէն նոյն են եւ Կոյշ եւ Կուշ, որք յիշուեցան (Թ. 1473, 1526), իբրեւ գինւոյ աման„: Եւ ի Շալակին, յերես 679,

Թ. 1473. «Կոյշ. Գալիենու լաւ օրինակ մի զուգէ այս բառս ընդ Դուշէրէ, որ թուի ար. Ջուշարէ՞ ձձին կամ որդն, որոյ համար Ամիրտ. կ՚ըսէ, թէ Հայք Կուլ կոչեն։ Եթէ զԴադիրէ ուղղելի է Դարիրէ, միթէ Կոյշն ալ կարծելի չէ՞ Կուլ»։

= Ո՞վ կարծէր թէ յետ երկարօրէն գրելոյ ի Հայկական Բառաքննութեան, երեսք 117—119, թէ Կոյշ սխալ բառ է եւ սխալ նշանակութիւն առած ի մեր արդի բառարանս, իբր գղ. Diarrhée (տես ի Ռոշքեանն, Նոր Հայկզ., Ջախջախեանի Հայ.-Իտ., Առձեռն. եւ յաւել՝ «Cacasangue, թանչք, Կոյշ»․ Ճամճեան, Բռգ. Իտ.-Գաղղ.-Հայ.-Տաճկ.։ — «Գան օէ-րմէ-ֆ. թանչ. Կոյշ. որովայնածութիւն». Պօղաճ.). Ո՞վ կարծէր որ յետ ցուցանելոյ թէ Կոյլ կամ Կուլ է ուղիղ ընթերցուածն եւ կը նշանակէ տեսակ մի որդն, ի բոլորել Հնգետասան ամաց Հրատարակութեան Բառաքննութեանն՝ Հ. Ալիշան դարձեալ Կոյշ պիտի կարդար, եւ բուսոց մէջ պիտի դասակարգէր զայն իբրեւ Դդում, եւ հազիւ ի Շալակին՝ երկբայանօք, պիտի մտաբերէր Կուլ ընթեռնուլ եւ ձձի կամ որդն իմանալ։ Ըսած էի ի Բառաքննութեանս որ արաբերէն լեզուի մէջ որոնելու է Դուշէրէ, Դուրանէրէ՞ կամ Ջուրարէ՞. գտի ապա բաաբերէն Ջէ-րրա՞ ի Բառագիրս Պօղաճեանի, որ եւ թուրքերէն կը կոչէ զայն Գօտօշ Պէօճէյէ [գղ. Cantharide, եթէ չեմ սխալիր]։ Կայ արաբերէն եւ Ճէ՛-լ, որ կը յիշեցնէ Կուլ. բայց Ճէ՛-լ թուի կոյադնդիռ, գղ. Escarbot, Գէորգ

կը գրէ. «Սէրչէյնչէրտան, Թղէզ որ գոյանայ յաղթիւսս, եւ է ճճի իմն սեաւ. Թուրքերէն Տօնուզլըն պէօճէկի, եւ արաբերէն Ճիւլ»:

**ԻՋ.** 1496. «Կոտինղ. Բիւզանդ պատմիչ (Ե. ԻԴ), կ'ըսէ, որ անարժան Թագաւորին Պապ՝ ընթրեաց առեն «դեղ մահու ընդ Կոտինղն խառնեալ», խմցուց Ս. Ներսէս Հայրապետի, եւ Թունաւորեց, հաւանօրէն է յն. Κότινος, վայրի Ձիթենւոյ (Oleaster) կուտ:»

= Կը գրէ եւ Նոր Հայկզ. «Կոտինտ. գ. Նոյն կարծեցեալ ընդ յն. Κότινος, Acinus, որ է հատ խաղողոյ կամ չամչի»:

Յն. Κοτινάς է գղ. Olive sauvage, վայրի Ձիթապտուղ, եւ Κότινος, գղ. Olivier sauvage, վայրի Ձիթենի, չգիտեմ թէ ուր գտած են Նոր Հայկզ. եւ Հ. Ալիշան թէ Κότινος է «հատ խաղողոյ[1] կամ չամչի», եւ «վայրի Ձիթենւոյ կուտ»: Վայրի Ձիթենւով կամ Ձիթապտղով Թունաւորեալ համարել զՍ. Ներսէս՝ անտեղի է. Կոտինտ (զոր Ճառընտիրն Բ, երես ԿԴ. 22 Ա. Ղազարու, կը գրէ Կոնֆինտ) անշուշտ պարսկերէն բառ է եւ կը նշանակէ բաժակ, Թերեւս նոյն ընդ յն. Κόνδυ, Կոնդի, որ առեալ ի պարսիկ լեզուէ՝ է Sorte de grande coupe. ըստ այսմ հաւանական է ընթեռնուլ ի Բիւզանդ, «դեղ մահու ընդ Կոնդինտն խառնեալ», այս ինքն՝ ի բաժակն:

Ծանօթութիւն.

1. (Երես 28.) Հատն խաղողոյ՝ յն. կ'ըսուի Ἄκινος, գղ. Grain de raisin.

**Իէ.** 1619. "Համկնա? Ըստ Ս. Ռոշքեան է դափնի կամ դափնոյ հատերն:,,

= Ռոշքեան կը գրէ. "Համկնայ. Դափընւոյ տեսակ՝ որ ղշատ կոկոնս [իմա՛ իտ. Cóccola, Bacca, գղ. Baie] ունի. Baccalia [գղ. Laurier commun qui porte beaucoup de baies], Գաղ. բառ,,:

Գաղիանոսի բառից գրածն է. "Բակշաթլհամկնա, փալփալնա հին, որ է խոռճկորակ,,, գաղ. Գ. — "Բակշաթլհամկնա, փալփալնահին, եւ ինքդ խոռճկորակ,,, Գաղ. Ա (չիք ոչ ի Գաղ. Բ, ոչ ի Գաղ. Դ): Ռոշքեան զԲաքլան ուղղած կամ ընթերցած է Բաքլան եւ զուգած ընդ նմանաձայն լատինականին Baccalia, Ազգ. դափնւոյ, որոյ համանիշ ալ կը դնէ հայերէն Համկնայ, մինչդեռ Բաքլան եւ Համկա (ո՛չ Համկնա) անբաժան բառեր են արաբական և յօդիւ միաւորեալք, Պուքլէթ էլ համգա[1] = Թուրք. Սեմիզ օթու = լտ. Tortulaca (Meninski, Onomastikon) = գղ. Pourpier. Արաբերէն Պուքլէթ է, 1. Բանջար, 2. Ոլոռն կամ Բակլայ. գնշանակութիւն համգա բառին՝ բո՞յս է թէ այլ ինչ, չգիտեմ. բայց այսչափս ստոյգ է որ չիք հայերէն կամ արաբերէն բառ՝ Համկնայ = Ազգ. Դափնւոյ: Իսկ Փալփալինային, որ կայ գրեալ եւ Փարփարինային (տես ի համարն Հճ), է պրս. "Փէրփէհէն կամ Ֆէրֆէհէն, Անմեռուկ, Փրփրեմ, Թուրք. Սեմիզ օթ, Փէրփէրէմ[2]. արպերէն Պուքլէթ էլ համգա,, (Գէորգ), գղ. Pourpier, որ հայերէն կ'ըսուի նաեւ խոռճկորակ (ո՛չ Կոռճ-

կոյակ, ինչպէս կը գրէ Հ. Ալիշան, տես ի համարն ՀԵ)։

Ծանօթութիւնք.

1. (Երես 29.) Սխալ է ի Թ. 422 Պախլան ըլ համ Զայ, փոխ. համղայ, որ ուղիղ կը գրուի ի Թ. 1047 համպա, համղա։

2. (Երես 29.) Հ. Ալիշան կ'ըսէ ի Թ. 123, "Անմեռուկ. ծանօթ բանջար ուտելի, որոյ աւելի ընտիր անունն է Փրփրեմ"։ Ես ընդհակառակն կարծեմ. "Անմեռուկ" է բուն հայ անունն գղ. Pourpier բանջարոյ, ընտիր եւ վայելուչ բառ Ան-մեռ-ուկ, ըստ որում ունինք եւ "փայլամեռուկ", գղ. Jonc odorant (տես զայս ի համարն ՃՀ), իսկ "Փրփրեմ" է թուրքերէն Փիրփիրիմ, ըստ ասելոյ Գէորգայ։

**ԻԸ.** 1645. "Հասպա? Սեւ վարդն է", ըստ Ասարայ. — "Ի՞նչ լեզուով է բառդ, եւ ինչ զարմանալի վարդ։"

= Հասպա արաբերէն կը նշանակէ զայն հիւանդութիւնն՝ որ պարսկերէն կ'ըսուի "Սէ-րխէյժէ. Հարսանիք, է տեսակ մը պալարի՝ որ լինի կարմրագոյն, թուրք. Գըզըլճըգ [գղ. Rougeole], եւ արպ. Հասպա, որ եւ ասի Սէ-րխէրէ Սէ-րխէչէ", Գէորգ։ Բայց Աւգեր եւ Էմին Հասպա կը կոչեն այլ հիւանդութիւն մի որ գղ. կ'ըսուի Pourpre, եւ Պօղաճեան ալ կը գրէ. "Հասպա, արբ. 1. Ծիրանի, 2. Հարսանիք, թուրք. Գըզամըգ"։ — Սէ- Ճըրէ կայ եւ առ Մխիթարայ Հերացւոյ, ԻԶ, 70. "Երբ ի մարմինն [հիւանդին] Սէ- Ճըրէ ելանէ՝ աղտորի հատի չափ՝ եւ սեւ լինի, պարտ է փախչել եւ ի զատ կենալ"։

կայ անդ եւ Վարդ. «Եւ Վարդն՝ զոր Հարսանիթէ ասեն, եւ յԱղուանից [տպ. ողաւնեաց] տուենն՝ քութեշ, նոյնպէս իւր պատճառն արոյնն լինի,,. Թուրքերէն Գուրբի էշէն նոյն է ընդ Գըզըլմուգ, ըստ Պօղաճեան (գղ. Rougeole):

**ԻԹ.** 1646. «Հաւարէ, Հաւարիսն: Տես Առաքեալ, Թ. 151,,:

= Տես ի Համարն Գ.:

**Լ.** 1820. «Ղլկնղում? Թութիա Հընդի, այսպէս մեկնուած է անծանօթ գրողէ,,:

= Պարսկերէն «Թութիէ [գղ. Tutie] է բաղադրութիւն իմն հոչակեալ եւ ծանուցեալ ամենեցուն, եւ եւս՝ է տեսակ իմն Սպիտակ ծաղկան, զոր չորացուցեալ՝ խնկոյն յաչս քարշեն,,. Գէորգ: Թութիա ծաղիկ նշանակեալ է եւ ի Հայբուսակին, Թ. 809, բայց «Ղլկնղում = Թութիա Հընդի,,ն ոչ է ծաղիկն, այլ անտարակոյս «Ղլկնղում = յն. Χάλκανθον,, = Couperose ou Sulfate de cuivre, vulgairement Noir de cordonnier: Սոյն Χάλκανθον գրեալ է ի բառս Գաղիանոսի Ա. «Քալքանթոյ, ծաղիկ պղնձոյ, որ է ժանգառ,,: Արաբացի քիմիարարք Colcothar բառ մի ունին, որ աղաւաղութիւն կը համարուի Χάλκανθονի (տես Colcotharի M. Devic). եւ այս Colcothar կամ Colcotar է յիշատակեալն ի Թրգմ. Գեղոց. «Կալքաթար, Այրած արջասպ Օլթեցի,,, այս ինքն Ողթեցի, յանուանէ Ողթիք (Olti) քաղաքի մեր Տայոց աշխարհին: Կայ եւ ի Գաղ. Ա. «Կալղոցաթար, Հոռոմ արջասպ,,.

եւ ''Ղուլղուղէնտաու, Երեցած [= Այրեցած] արջասպ,,: Արջասպ = գղ. Couperose կամ Vitriol:

**ԼԱ.** 2115. ''Մորէ. Հին բժշկարանն բանջարեղէնաց դասին մէջ յիշէ զայս. Մորէ, երկու ազգ են. է որ գարէալոյրով եւ է որ ձկօմ (ձուկով, ձկամբ),,, Թերեւս այս է Կիւրղի Ս. Գրոց մեկնութեան մէջ (Դ. Թագ. ԺԴ [տպ. Դ], 9) գրուածն. ''Ակքանն... Նման Մորի կամ կաղանչանն,,: — Եւ ի բառս Վաստակոց Գրոց կը գրէ Հ. Ալիշան. ''Մորէ, ի հին բժշկարանս ի կարգի բանջարոց դասի,,:

= Մորէ բառի հնութիւնն կ'ելնէ մինչեւ ի հինգերորդ դար մեր գրականութեան. ''Նուրբ չուանաւք զականջսն հատանէին, եւ զնոյն կարծրագունիւքն փանդակաւ ի վեր ամբառնային, մեղու եւ մորէիւ թացեալ՝ ի պիծակաց եւ ի մեղուաց գաւշեալ լինէր ի միջաւրէին՝ յարեգականն բոցակիզաբար ջերմութեանն,,. Ս. Գր. Նազիանզացի, Առաջին Արտաքսման Յուլիանոսի. յոյն բնագիրն կ'ըսէ Γάρος, երեւ 124 Մաւրինեան Բենեդիկտեանց հրատարակութեան[1], ուր եւ լատիներէն նոյնպէս թարգմանեալ է Garum[2]. — ''Այլ գինի եւ իւղ, ձու, ձուկն, պանիր, կոգի, կաղտի, բածին, շճուկ, կաթն, խեր[3], եւ ձկան մորէ, զայս բնաւ ամենեւին չէ աւրէն եւ ոչ վայել է ճաշակել [ի պահս քառասնորդաց],,, Յոհ. Մանդակ., Ցղ. Քառասնորդական պահոց, 210 (տպ. Ս. Ղազարու 1860): Յաճախ եւ ի Բժշկարանս. ''Եւ կերակուր... տուր ճակնդեղի տակ եւ ծնեբեկ մորէով,,.

Մխ. Հեր. ԼԲ, 89: — "Եփ մարդ Մուրէ ուտէ՝ գողն սեւ ելնէ,,. Բժշ. Ա, 20. եւ դարձեալ ի Նմին Բժշկարանի. "Մուրէով լաւ է ուտել (զԹուզն),,. Հայբուսակ, Թ. 807: — "Թէ Մուրէով ուտէ (դՀացՀամեմն)՝ լուծէ,,. անդ, Թ. 1666: — "Եւ քան զամենայն ախորժական է ցորենովն, մանաւանդ՝ թէ մեղր եւ եղ եւ պղպեղ եւ Մուրէ լնուն ի վերայ՝ ուտեն,,. անդ, Թ. 3026: — "Ի վերայ երկու հարիւր լիտր գինւոյն՝ վեց թուխթ Մուրէ լից,,. Գիրք Վաստակոց, ՃՀԸ, 115: Լսենք եւ զԱմիրտովլաթ. "Մուրի, որ է Յ [այս ինքն՝ Յարաբերէն = արաբերէն] Աղջամայ. զինքն յալուրէն [= գարէալյուրով, Բժշ. Ա] եւ յաղէն եւ ջրէն եւ ի Սեւ գնդիկէն եւ Ըռազանայէն եւ ի մեղրէն կու բանեն. եւ այգ մն այլ կայ որ ի ձկնէն [= ձկօմ. Բժշ. Ա, տես եւ Ձկան Մուրէ ի Յոհ. Մանդակ.] կու այնեն... եւ թէ հունգնա լինի, եւ թէ ուտվի եւ թէ խմվի եւ թէ խաղաչ առնեն՝ օգտէ,,. Անգիտի անպէտ, երես 209: Կը գրէ եւ Գէորգ. "Աղջէմաճ, Աղջէմաճ. Նշանակէ զայն ջուրն զոր առնեն յալերէ գարւոյ [= գարէալյուրով, Բժշ. Ա], կամ ի չորացեալ հացից ի ջուր թրմելով եւ թթուեցուցանելով, եւ լինի որպէս կորեկօղի այսինքն Պօզա. եւ այս հոշակեալ իմն է առ Պարսիկս, զոր մարսողական համարեալ ի գործ ածեն: Եւ եւս ասի սա զՋրոյ Թէրխանէին եւ զՋրոյ թթուուտի, այսինքն Թէրշիէ:,, Լատիններէն Muria է իտ. Salamoja, այսինքն Աղաջուր. եւս՝ Salsa di tonno,

այսինքն Որթձկան (գղ. Thon) ամոքանք. եւ Ողուլըուխեան ալ կը գրէ. "Muria brassicae. Աղջուր կաղամբի, լահանա թուրշուսու,, երես 19: Մուրէ եւ Muria (= Մուրիէ, Ամիրտ.) թուի ի յունականէն μυρὸς, յորմէ ἁλμυρίς = գղ. Saumure, տես Լիտրէ ի ստուգաբանութեան Saumure բառի: Այս ամենայն կը հաստատէ թէ մեր բժշկարանաց Մուրէն ոչ է բանջարեղէն, այլ կամ նախնի Յունաց եւ Հռովմայեցւոց Γάρος, Garum[4] ըսածն, կամ ո եւ է Աղաջուր՝ կերպակերպ հանդերձանօք:

Կիւրղի Աղեքսանդրացւոյ Մուրն, զոր Հ. Ալիշան կը յիշէ եւ ի Թ. 46, չունի բնաւ աղերս ընդ Մուրէի, մանաւանդ զի խնդրական է հարազատ ընթերցուածն: Նոր Հայկզ. կը գրէ յ"Ակքան,, եւ ի "Մորի,,. "Ակքանն բանջար ինչ է, եւ կամ թուփ փոքրիկ՝ նման մորէ կամ կաղանչնանն,,. բայց ի "կաղանչնանն,,՝ "նման մրտէ կամ կաղանչնանն,,: Եթէ կայ բնագիր Մեկնութեան Թագաւորաց գրոց ի Կիւրղէ՝ ստուգելի էր ի բնագրէն, ապա թէ ոչ՝ քննելի էր ի Հայերէն Ձեռագիրս Կիւրղի՝ մորէ՞ ունին թէ մրտէ:

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

1. (Երես 32.) S. Gregorii Theologi Opera omnia; Opera et studio Monachorum Ordinis sancti Benedicti e Congregatione sancti Mauri [այսինքն Benedictins de Saint-Maur]. Հատոր Ա, տպագրեալ ի Պարիս 1778, միածալ:

2. (Երես 32). „Ipse interim sporta in altum sublatus, melle et garo ["մեղու եւ

մորէին„] undique perfusus, apibus et vespis meridiano tempore pungebatur, ardentissimo sole lucente.“

3. (Երես 32.) Զնշանակութիւն կ—ղ—ր—է բառի չգիտեմ. բայց Թ—ձ—ին, որ կայ եւ ի Թժշ. Զ, 325 (22 Ս. Ղազարու), “Թ—ձ—ին, որ է Ս—դ—ր—դ—ե—ն„ (սխալ է ի Թրգմ. Դեղոց, “Արէ—րդէ—ն, Թ—ձ—ին„) է յն. Σαπέρδιον կամ Σαπέρδης, գղ. Saumure ou Poisson salé qu’on tirait en abondance du Pont-Euxin յայն ձկանէն՝ որ կը կոչուէր Κορακῖνος, գղ. Coracin կամ Corbeau։ — Խէր (ինչպէս կը մեկնուի ի Յաւելուածի Հայկազեան Բառարանի աշակերտաց Մխիթարայ Աբբայի) է Ռուսերէն ինչ յառաջին կաթանէ կովու՝ յոր կը խառնեն եւ հաւկիթ, եւ կը թողուն որ մածնոյ պէս թանձրանայ, կարծեմ նոյն է եւ յն. Πυτία, Premier lait qui vient aux vaches après avoir vêlé [զոր հայերէն կը կոչենք Դ—ւ], եւս՝ Mets préparé avec le premier lait des vaches։ — Առձեռնի Բ. տպ. կը գրէ, “Թ—ձ—ին, ուտելիք մը (թերեւս մածուն)„։ — “Խէր. տեսակ մը մածուն„ [զայս՝ ես հաղորդած եմ ի ժամանակի Բ. տպ. Բառարանիդ]։ — “Կ—ղ—ր—է, ուտելիք մը։„

4. (Երես 34.) Յն. Γάρος, գղ. Garum, Saumure très estimée des anciens. Saumure, salaison, en général (Alex.). — Լտ. Garum; Plin. Caviale, salsa fatta d’interiora di pesci, e principalmente di garo e di sgombro (Pasini). — Գղ. Garum; sorte de saumure que faisaient les Romains en recueillant les liquides qui s’écoulaient de petits poissons salés et qu’ils aromatisaient fortement (Լիտրէ)։ Տես Garum եւ յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս, ուր գրած եմ մորէ, յէ—ն մորէ։ Նոր Հայկզ. որ զՄորէ ի Մանդակունեայ միայն գիտէ, կը մեկնէ

զայն "մօրէնա կամ մօսաէնա, մէրսէն պալըղըղ", ըստ որում եւ Առձեռնն:

**LԲ.** 2685 [տպ. 2585]. "*Սակուղաջուր*? Ի գրոց է թէ ի լրոյ, եւ ինչպիսի՞ է, չէ նշանած գիտուն բառհաւաք մի,,: — Տես զոր ինչ ըսի ի համարն ԻԲ. ի Դիտողութեանն:

= Եթէ լաւ կը յիշեմ՝ *Սակուղաջուր* կոչած է Հ. Մանուէլ Քաջունի յիւրում Տարրաբանութեան գզ. Sagapénum, որ սաստկահոտ խէժ մի է, անշուշտ վասն զի երկրքին եւս կը սկսին Սակ, Sag. Առձեռնն կ'ըսէ. "*Սակուղաջուր*, գ. խոտի մը ծուծ,,. իսկ Նոր Հայկազեանն. "*Սակուղաջուր*, գ. բառ անյայտ, որպէս հիւթ բանջարոյ եւ արմտեաց. "կեր *զսակուղաջուրն*, եւ չեն ինչ պէտք քեզ եփել ինչ,,. Վարք Հարանց, ձեռագիր: Տես եւ կասկաջուր,,: Բայց աւելորդ է աստանդել մտօք եւ ընթանալ ի կասկաջուր, քանի որ որոշ որոշ գրեալ է ի Վարս Հարանց, Հ. Ա., երես 571. "Եղբայր ոմն եհարց ցհայրն Սիսոյ, եւ ասէ: Զի՞նչ վարեցայց ի խղճին իմում: Ասէ ցնա ծերն. կեր սակուղաջուր, եւ չեն ինչ պէտք քեզ եփել ինչ:,,

**LԳ.** 2688. "*Սաղէ-տակ*. Թուփ կամ ցախ մի, ուսկից աւել շինեն,,: Թէ ո՛ւր գտած է Հ. Ալիշան զայս *Սաղէ-տակ*, կ'իմանանք ի Թ. 642. "Եղեւին՝ ցախ է ծանծաղարմատ, այսինքն սաղ? է տակն, Եղեւին ասի, յայգիսն բուսնի, աւելի կապեն զինքն,,. Լուծմունք Գր. Նարեկացւոյ Աղօթից:

= Նոյնպէս եւ Նոր Հայկազեանն Սաղետակ թուփ մի ստեղծած է ի բառն Եղեւին. "Եղեւին ասի յոմանց (թերեւս շփոթեալ ընդ եբրայեցերէն օէէ) Ցախ աւելի թուփն, որ եւ ռամկօրէն Սաղետակ. լուծմունք Նարեկացւոյ": Առձեռնի առաջին եւ երկրորդ տպագրութիւնք մոլորութենէ ի մոլորութիւն իյնալով՝ կը գրեն յՅՐԴ նշանակութեան Եղեւին բառի. "Ցախ աւելի թուփ, սազէտակ":

Չէք բնաւ ամենեւին ի Հայ լեզուի թուփ՝ որ կոչուի Սազէտակ կամ Սաղէտակ: "Եղեւին՝ ցախ է ծանծաղարմատ", կ'ըսէ Նարեկացւոյ մեկնիչն. եւ զի մի՛ գուցէ յընթերցողաց ոմանք չհասկանան զբառն "ծանծաղարմատ", մեկնիչն կը փութայ կցել. "այսինքն սաղ է տակն", որ է ռամիկ լեզուաւ թարգմանութիւն "ծանծաղարմատ" բառի. "ծանծաղ" = "սաղ" = թուրքերէն սըղ. "արմատ" = "տակ": Այս թուրքերէն Սաղ = Սըղ բառս կը գտնուի եւ ի լուծմունս Փիլոնի Եբրայեցւոյ. "Ջերէզն: Լծ. Սաղ եւ քարախաղաց է". Լուծմունք Բ, երես 994 (22 Ս. Ղազարու): Նոյն է անտարակոյս եւ Բժշկարանի գրածն. "Մաղասխոտ՝ որ ի սաղէրն [= ի ծանծաղ կամ յանօսրահող տեղիս] բուսանի". Հայբուսակ, Թ. 1944, ուր կը յիշուին սաղէրն եւ սայլէրն սխալ գրութիւնք, եւ սաղէրն ալ սխալ կարծուելով՝ կը սրբագրուի սարէրն:

**ԼԴ.** 2708 [տպ. 2808]. "Սատապեսայ փայտ. Տես Ասպանակ, Թ. 171":

= Տես ի Համարն Դ:

**Լե.** 2760. ի Սէ--է--. "*Սիլի*, եւ հո-մանիշ *Մ'աղրէ*, լտ. Myle, որ աւելի սովորա-բար կ'ըսուի Mylium. եւ Ասորոց ցեղէն է„:

= Գաղիանոս Դ. կը գրէ. "Մուղրէ, Սոյսր„. եւ Գաղիանոս Ա՝ "Մուղրէ, Սւսր„. Հ. Ալիշան ալ կը համարի թէ "Մաղրէ, *Սիլի*„ Ասորոց ցեղէն է: Նոր Հայկզ. աւելի մերձ է ճշմարտութեան, որ զՍ---ր կը մեկնէ Հողային ներկ կարմիր, եւ զՄ--ղ-է՝ նոյն կը դնէ ընդ յն. *Μίλτος* [գղ. Minium, Vermillon, որ է հայերէն կարմրադեղ, պրս. Խ-րէնճ, արբ. Սէլէ-ֆ--ն, ինչպէս տեսանք ի համարն Ե]: Բայց Գա-ղիանոսին Մ--ղ-է՝ ուղղելի է ըստ իս Մ--ղրէ, արբ. Մէ-ղրէ: Գէորգ կը գրէ. "Կէլէ-է-րէ [= կաւ կարմիր]. Հող ինչ կարմիր, [թուրքերէն] Աշ--. արպերէն Մէ-ղրէ„: Ըստ այսմ եւ Ամիրտոլվաթ յԱնգիտի անպէտն, երես 65 verso, "Ոմանք այս [Գինի մախթում] կաւ իս Մ--ղր-յէ Լէ-ն-է-յ ասեն, եւ գոյնն նման է Մ--ղր-յէ- գունին, որ է Ս---ր-ն հայ բառով, եւ թուրքն Աշ-- ասէ... Մ--ղր-ն զմարդոյն զձեռքն կու ներկէ... եւ այն կաւն է [Մ--ղր-ն] որ հունները զչուանն այնով կու ներկեն եւ տախտակ* եւ փայտ կու ներկեն եւ կու տաշեն եւ կու ըղորդեն„. եւ դարձեալ. "Մ--ղր-յ... ինքն ի կաւին ցեղերուն է, կարմիր է, ... եւ ի Շիրազ Կէլ ---րէ կու ասեն, եւ Հայերն Ս---ր կ'ասեն, եւ թուրքն Աշ-- կու ասէ. եւ հիւսներն ի բան կու տանին„. անդ, երես 212: Կայ եւ ի Գիրս Վ------ց. "Ա'ռ ----ր եւ սեւ ձիւթ եւ ձէթ„. Ծր. 40.

— "Սուրով կամ այլ իրօք նշանեա զտունկն",. ՄԻԸ. 143։ — "Սուրով կամ այլ իրօք նշանեա զարեւելից կոյսն",. ՄՀԸ. 179։ Սուր է գղ. Rubrique։

**ԼԶ.** 2841. "*Սրուն?* Գալիենական բառից մէջ գրուած գտուի այս անունս հոմանիշ ունելով Անթիքիմոնէ, լտ. այլ գրուած Anticimonium, որ անծանօթ է ի բուսաբանութեան. յն. Ἀντασείμενον [չգիտեմ այսպիսի յոյն բառ] տառակալ մի նշանակէ, այլ ոչ բուսական ինչ",։

= Գաղիանոսի բառից "Անթիքիմոնէ. Սրուն", կամ "Անդիկնիմ. Սրունկ", գրուածն է յն. Ἀντικνήμιον, L'os du devant de la jambe, le tibia; par extension Jambe, որ է հայերէն Սրուն։

**ԼԷ.** 2868. "*Վարազ?* Բժշկր. մի գրէ "Վարագի խիլաֆ", (եւ մեկնէ) ինքն Ուռին (Ուռենի) տերեւն է",։

= Կարդա՛ Վարա՛գի խիլաֆ, յարաբականէն Վարագ = Տերեւ, Խիլաֆ = Հայերէն Եղրդի, որ է Անուշահոտ Ուռի. տես ի Թ. 1064։ Չիք ուրեմն Վարազ բոյս, եւ ոչ իսկ Վարա՛գի խիլաֆ, որ կը նշանակէ պարզապէս Տերեւ Ուռւոյ կամ Եղրդւոյ։ — Թէ ինչ է եւ ի թիւն 2866 "Նշի տեղէ = Վարիշինէլ կամ Վրիշնէլ", տես ի համարն ՄԽԹ։

**ԼԸ.** 2904. "*Վոշ:* Առանց թեփի ցորեն, որ եւ Ջաւար կոչուի",։ (Այս Վոշ նոյնպէս "Ջաւար, պուլղուր", մեկնուած է ի Բազմավէպ 1867, 370։)

= Վաօշ ոչ է բոյս այլ Կորճոտէ տղոոր. «իսկ պառաւն բացեալ զթոնիրն՝ եհան պուտկով եփեալ Կորճոտադոոր, զոր ոմանք Վաօշ ասեն»։ Առաք. Թաւրիժեցի, գլ. ԺԵ, 130 (տպ. Էջմիածնի 1884)։ Նոյնպէս եւ Պետրոս Վ. Կալհօկեցի, Առաջին ճանապարհորդութիւն ի Հայրենիս (Կ. Պոլիս 1881), կը գրէ յերես 140, Թիւ 523։ «Վորիկ կամ Վաոոշ է Չօրդա»։

**ԼԹ.** 3016. «*Ցեց*: Ըստ Ռոշքեանի՝ «խոտ, որ զեօթն փոքրիկ ճիւղս ունի եւ զծիրանի ծաղիկ, եւ զսերմն յարակայ»․ լտ. գրէ Eriphia, բայց անծանօթ է հիմայ այս անունս։ Գալինոսի բառից մէջ *Ցեցի* հոմանիշ գրուի Երէսոս, որ է լտ. Aerides, կոլոռճիկաց ցեղէ խոտեղէն մի, դեղին կամ կարմիր գեղեցիկ ծաղկներով, իբրեւ 10 կամ 12 տեսակ»։

= Լաւ եւս կ՚ըսէ Նոր Հայկզ. յետ Նշանակելոյ զՑեց հանդերձի, կէ-ձէ. «ի բառս Գաղիանոսի գրի. «Երպիտոս, Ցեց». արդ յն. ἑρπετόν է Սողուն, Զեռուն. իսկ ἕρπης, Ախտ որ սողի, իբր Եղեանճեղ։ Այլ Ստեփ. Լեհ. [իմա Ռոշքեանն] կամի ընթեռնուլ Ցեց, եւ վերածէ ի յն., լտ. Eriphia, իբրու խոտ ինչ եօթնաճղի, ծիրանի ծաղկամբ՝ մշտասերմն»։

Գաղ. Դ կը գրէ «Երէսոս, Ցեց». այլ Գաղ. Բ՝ «Երպէսոս [Գաղ. Ա եւ Գ՝ Երէպէսոս]. Ցեց»։ Այս Երպէսոս՝ ինձ եւս թուի թէ է յն. ἕρπης (սեռական ἕρπητος = Երպէտոս) հիւանդութիւնն, գղ. Herpe (ըստ Լիտրէի Herpès), epèce de dartre, ազգ ինչ որքեան։

Ցեց հիւանդութիւնն յիշատակեալ է եւ ի
Բժշ. Ա. “Ծեծել զգա [զմայր փայտն] եւ ի
վերայ ցեցի դնել՝ որ է գէշ ցաւն՝ օգտէ”. Հայ-
բուսակ, թ. 1936: — “Գալար ծեծածն [քեղ
խոտոյ] զաղգեղի վէր, եւ զցեց՝ որ է գէշ ցաւն՝
մէնակ սրբէ”. անդ, թ. 3185: Համեմատէ ընդ
գղ. Teigne, որ է 1. ցեց հանդերձի, եւ
2. գոնջութիւն, թուրքերէն քէլլէք:

**Խ.** 3126. «Քաղկու? [տպ. Քաղկու!]»:
= Տես ի համարն Ժ.Զ:

**ԽԱ.** 3170. «Քարկծեղ կամ Քարծ-
կեղ: Տես Եղամա»: — 628. «Եղամա. Յովբայ
գրոց մեկնութեան մէջ կ'ըսուի. “Բանջարն՝ զոր
յիշէ Յովբ՝ Գերէոն, որ Եղամա ասեն”: Գալինոսի
բառից մէջ գրուած է Կերիոն, որոյ հայերէն
յատուկ անուն ալ գրուի Քարկծեղ կամ
Քարծկեղ: Յունարէն Եղմոս, Ἔλυμος [տպ.
Ἔλγμος] տեսակ մի է կորեկի»: — 1395.
Կերիոն: Տես Գերիոն եւ Եղամա [տպ. Եղա-
մաս], թ. 469, 628: Յիշուի ի Տարօն եւ ի
Խոտուջուր»: Իսկ ի թ. 1036, ի բառն Խարշա-
փան բանջար՝ որ կը գտնուի ի գիրս Յովբայ,
Լ, 4, կ'ըսէ Հ. Ալիշան. «Խարշափան բանջար...
ըստ այլոց՝ յունական Ալիմա կոչմանէն երեւի
գոյական բառ, յատուկ աղային բոյս մի ձիթե-
նանման տերեւներով. ինչպէս մեր վանական
վարդապետն այլ կ'ըսէ. “Զխարշափանն՝ այլք
Աղիմայ թարգմանեցին, եւ կէսք Գերիոն (տես
թ. 628). եւ է սա բանջար աղէհամ, որ յու-
տելն լցուցանէ զտեղի հացի”. ըստ լտ. Ալիմայն

տեսակ մ'է ջղախոտի, Alisma Plantago, արաբ. Մէղմար-էր-Ռուջէ, որ թարգմանի Հովուի փող. [= գղ. Flûteau, Plantain aquatique]: [Նոյնպէս եւ ի Թ. 1733, Հովուի փող, սխալ է գրելն. "Տես եւ Խարշափուն": Աստ եւս կը շփոթէ Հ. Ալիշան զAlisma ընդ Halima, Halimos, Halimus:

= Որչափ շփոթութիւնք. Քարկծեղ կամ Քարծկեղ բոյս կը համարուի եւ նոյնանիշ ընդ Եղամայի կամ Աղէմայի. սա այլ մերթ կորեակ (= յն. Ἔλυμος) է, կ'ըսուի, մերթ Հովուի փող (= լտ. Alisma):

Գաղիանոս Ա, Բ, Գ, Դ միաբան կը գրեն. "Կերիոն. Քարծքեղ", եւ ոչ Քարքծեղ: Կերէոնն է յն. Κηρίον, Ulcère celluleux, որ է Տեսակ մի կեղ: Քարծքեղ նոյն թուի ընդ Քաղցքեղ = գղ. Gangrène, այլով նշանակութեամբ. Նոր Հայկազեանն կը վկայէ որ ի Ղեւտ. ԻԱ, 20, Քաղցքեղ, գրեալ է ի Ձեռագիրս ինչ Քարցքեղ. կամ թերեւս Քարծքեղ՝ ուղղելի է Քածքեղ. Համեմատէ "Բոր կամ Քածպոր" եւ Շանքոր, գիրք Վաստակոց, Ցիէ, 223: — Տարօնեցւոց եւ Խոտորջրեցւոց Կերէոն խոտն անծանօթ է ինձ. բայց սորա Գերէոնի հետ նոյնութիւնն՝ մեծապէս երկբայական, վասն զի ի բանի անդ Վանական Վարդապետի՝ Նոր Հայկազեան կը կարդայ Գերէոն կամ Գերէոն, եւ զԳերէօ կը համարի Թուրքերէն Քէրէվիզ [գղ. Céleri]. տես անդ Գերիս, Խարշափուն: — Եղամայ կամ Աղէմայ ոչ յն. Ἔλυμος = կորեակ է, եւ ոչ լտ. Alisma = Հո-

վուի փող. այլ յն. Ἅλιμον կամ Ἅλιμος, գղ. Arroche de mer (Alex.), որ եւ Halime, nom vulgaire et spécifique de l'Arroche halime (Ալիմէ), Տեսակ մի թաղթ կամ թայլ: Նոյնպէս եւ կելսիոս (Հ. Բ, 96) զՄԱԼԼՈՒԱԽ (Malluach) Յովբայ եբրայական բնագրին, Լ. 4, որ յեւթանասնից թարգմանեալ է Halima (= Աղիմայ) եւ ի մերոց ԽԱՐՇԱՓԱՆ ԲԱՆՋԱՐ, կը կոչէ լտ. Halimus latifolius, fruticosus; Atriplex [գղ. Arroche] caule fruticoso, foliis deltoidibus integris.

**ԽԲ.** 3188. «Քերքէշ. ԲԱՇԽՏԱԿՆ է. տես զայս:» [Յերես 697, սիւնակ Գ., ՔԷՐՔԷՇ՝ ուղղելի է ՔԷՐՔԱՇ, ՔԷՐՔՆԱՇ:]

= Ի Հայկական Բառաքննութեան, երեսք 124—126, ցուցած եմ որ ՔԷՐՔԷՇ ոչ է ԲԱՇԽՏԱԿ, լտ. Acorus, գղ. Acore, Roseau odorant, թուրք. ԷԿԷՐ ՕԹՈՒ (տես Ռոշքեան, Նոր Հայկզ., Ջախջախեան, Առձեռն, Էմինեան. եւ յաւել՝ "Acóro. գղ. Flambe bâtarde. Քերքէշ. ԲԱՂՇՏԱԿ. ԻԿԷՐ ՕԹՈՒ". Ճամճեան, բռգ. խտ. Յաւելուած. — "ԻԿԷՐ ՕԹՈՒ, ԻՅԷՐ ՕԹՈՒ. Քերքէշ. ԲԱՂՇՏԱԿ". ՊՕՂԱՄ.), այլ լտ. Achores, գղ. Achores, որ եւ Gourme, Croûtes de lait, թուրք. ՔՈՒՖԷՏ, Տեսակ մի կեղ երեսաց եւ գլխոյ:

**ԽԳ.** 258. «Օրոճ. Որոճ. Ջուղայեցիք այսպէս անուանած են, եւ ի ՊՈՆՏՈՍ այլ լսուի լտ. Genista, փ. Genêt կոչուածն, թ. ԳԱԹԸՐ ԹԸՐՆԱՂԸ կամ ՊՕՆՃԱՂԸ (Ջորւոյ ըղունգ). մեծ կամ փոքր թուփ է, ծիգ ճիւղերով, մանրիկ

տերեւներով եւ հասկաձեւ ծաղկներով …։ Բժշկարան մի փայծեղան դեղ գրէ «ղայն Որոճն՝ որ ի Մարայ կու գայ»։ Եւ ի Թ. 565, ծան. 2, գղ. Senet փշոտ Թուփն կը կոչուի Օրոճ. [գղ. Senet բոյս չգիտեմ. Թուի սխալ գրեալ փոխանակ Genêt]։ Դարձեալ ի Թ. 2636. «Ջօ-րօ ճճէր. Ջայս եւս նոյն կամարկապցին յիշէ, եւ Թ. Գարիպ պօնճուղի գրէ. «լաւն խիստ մանտրն է[1]»։ Թ. կոչուի եւ Գարիպ տըրնաղի (Ջորու ըղունգ)։ Տես Օրոճ։» Ջնջելի է եւ ի Թ. 2528, «Spartina = Օրոճ»։

= Ա՛յլ է Թուրքերէն Գարիպ Տըրնաղը, զոր պօզաճ. հայերէն կ՚անուանէ Մոշայ [գղ. Tamaris], եւ Աւգեր՝ գղ. Genêt, ա՛յլ է Գարիպ պօնճուղու = Որոճ։ Ի բառարանին Ջուղայեցւոց «Օրօճ» կը մեկնուի Գարիպ պօնճուղու. — Մխիթար Աբբայի աշակերտաց Յաշխարհաբառ ի գրաբառն բառագրոց մէջ՝ «Որոճ. Գարիպ պօնճուղու. մանկալայ Տաշը. ծովու ճերմակ քարի պէս ակռաներով ժժմունք մի է»։ — Ի Հաւաքման ուրեք Գաւառական հայ բառից (22 Ս. Ղազարու)՝ «Օրօճ. հլունք է ճերմակ եւ երկայն. հաւասար հլունքերուն պէս չէ»։ — Ջախջախեան ի բառն Cissóide՝ «Որոճ կամ Որոճաձեւ. է կոր գիծ ինչ երկրաչափական ի ձեւ օրօճի, այսինքն Գարիպ պօնճուղին»։ — Դաւիթ Սալաձորեցի ի Տաղին Ծաղկանց՝

«Ծիլծաղն սպիտակ է հագեր, դեղին քաշեր
վերայ փորուն,
Բոլորն ամէն օրօճ շարեր»։ —

վերջապէս Լ. մին ի բառն Porcelaine, 2դ նշ. «խեցեմորթ ինչ. մանղալա պաշը պէօճէյէ» [= «Որոճ. փաթըր պօնճուղու. մանճալայ պաշը». տես վերագոյն]: Արդ Որոճն՝ է այս Porcelaine, զորոյ նկարագիրն կու տայ Գ. աղղ. Ակադեմիոյ բառագիրքն հետեւեալ բանիւք. "Espèce de coquillage univalve, très poli et tacheté, dont les bords s'arrondissent en de dans, et forment une ouverture longitudinale, étroite, dentelée [= ակռաներով. տես վերագոյն] des deux côtés»: Տես Porcelaine, առաջին նշ., յիմ Գ. աղղ.-Հայ. բառագիրս:

Ծանօթութիւն.

1. Սիմէոն Կամարկապցի բառ առ բառ կ՚ըսէ. «Խաբէր պօնճուղը. ինքն ջրոս ծիծէռ կու ասեն. յաւն խիստ մանտրն է. կամ ջրոս ծիծեռն»: Ջշեռագիր Կամարկապցոյն ամենայն ազնուութեամբ հաղորդած է ինձ ի Կ. Պոլիս յամին 1879 Մեծ. Տ. Սերովբէ Ալիշան:

## Բ.

*Աղաւաղեալ կամ անգոյ անուանք բուսոց որոց ուղիղքն կան արդէն ի մատենին:*

**ԽԵ.** 42. «Անկիրի պտուղ [Հ. Ալիշան մոռացած է նշանակել զտեղին]: Ուր եւ արաբերէնն նշանակուած է Հապ ըլ-Հօլ»: — 467. «Գետոյ պտուղ. բժշկարան մի հոմանիշ գրէ եւ զԱլոյֆ ? եւ Հօլ»:

— *Ակիրի՝ թուի սխալ գրեալ փոխանակ* Ակրէէ, *այս ինքն* Յակրոյ. *տես* Յակրէ, թ. 2151. *նոյնպէս Գեստոյ՝ ուղիղն է* Գ.էոյ. *տես* Գ.է, թ. 478: “*Հակրուոյ կամ* Գ.իոյ *պտուղ*„ *նոյն է ընդ* “*Ցրդւոյ պտուղ*„ *զոր կը յիշէ* Հայբուսակն, թ. 3020 (*Գիհի, Ակրի, Ցրդի, նմանազգի երեք ծառք ի* Խոտորջուր, *տես* յՆծիճ. *Նոր Հայաս.*, 35): Մեր *բժշկարանք կը գրեն պէսպէս ձեւովք.* “Աբհուլ. *Ցրդի պտուղ.*„ *Թրգմ.* Գեղոց. — “Ալոգհող. Գ.իոյ [*եւ ոչ՝* Ալոյէ? *եւ* Հոլ. *Գե-ստոյ*] *պտուղ.*„ *անգ*: — “Ափուլ. Գ.իոյ *պտուղ կամ* Ցրդոյ.„ Գաղ. Ա. — “Ալ *ափուլ.* Ցրդի *պտուղ.*„ Բժշ. Ա. 143. — “Ուպհուլ, *որ է* Ցրդուն *պտուղն.*„ Բժշ. — “Բրաւթի [*յն. Βράθυ*]. Գ.իոյ *պտուղ.*„ Գաղ.: Աբհուլ, *եւ այլն, է արաբերէն* Abhal[1] = *յն. Βράθυ* = *լտ.* Sabina (Կելսիոս, Հ. Բ., 23), *գղ.* Sabine, espèce de Genévrier, *որ է* Ցրդի, *ազգ* Գ.իոյ: Կը *գրէ եւ* Գէորգ. “Իսպհուլ. *Նշանակէ զկարմրակ պտուղն* Գ.ի *ծառոյն*„: — Ի *բառս* Գաղիանոսի *յն. Ἄρκευθος*[2], *որ է գղ.* Genévrier, *թարգմանեալ է* Ցրդէ. *իսկ յն. Βράθυ, որ է գղ.* Sabine *թարգմանեալ է* Գ.է:

Ծանօթութիւնք.

1. “Abhal, ou Abhel; Fruit d'une espèce de Thuya d'Orient. Il passe pour un prissant emménagogue.„ P. Poitevin, Nouveau Dict. Universel de la langue française, 2 vol., Paris, C. Reinwald, 1860.

2. Ձխանգարեալ յունական բառս Գաղիանոսի՝ Հ. Ալիշան ոչ ուղիղ կ'իմանայ ի Թ. 3020 յն. Ἄγρωστις, որ ոչ թէ կը նշանակէ "Որ եւ է ածուոց բերք„, այլ 1. գղ. Chiendent, Սեզ. 2. Herbe, Gazon, Սեզ, Խոտ: 3. Toute plante sauvage, Ո՛ եւ է բոյս վայրի:

**ԽՁ.** 57. "Աղին՝ Գալենոսի բառից կարգին գրուած է զուգանիշ Կնիդոսի, որ է Cnïdium [տպ. Cnidiun], փ. Cusson: Տես գոճմակ:„

— Աղէճ՝ է ռամկականն Եղէճ խոտոյ (տես զայս ի Թ. 650), ինչպէս կ'ըսէ եւ Նոր Հայկզ. յ"Եղինճ„. "Ասի եւ իբր ռմկ. Աղինճ, Աղէճ, Աղիջ, Աղիջիկ, Եղիճիկ, Եղեճուկ„: Իսկ ուր կը գրեն գաղ. Ա՝ "Կնիդոս. Աղինճ„, եւ գաղ. Բ՝ "Կնիդոս. Աղինճ„, այդ Կնիդոս ոչ է յն. κνί-δειον գղ. Daphné-cnidium, (զոր Լիտրէ կը գրէ Daphne gnidium, եւ գղ. կը կոչէ Garou), այլ յն. κνίδη, գղ. Ortie, որ է Եղէճ: Գղ. Cusson = Cnidium չգիտեմ. ըստ Լիտրէի Cusson կամ Cosson է նորընձիւղ ուռ որթոյ յետ յօտելոյ:

**ԽԷ.** 3276. "Ամրկենի: Թուփ է ուս-կից Ցախ ասել չինեն, ի խոտուջուր:„

— Այս ուրենն է Համամրթէ, Թ. 1673, որ Թուփ թէ ըսուած է եւս Համամրթէնէ, եւ Ամրկենի խանգարեալ ձեւով պահուած ի խոսս խոտորջրեցի գիւղականաց: Ի Համամրթոյ ասել կազմութիւն գիտենք ի Մխիթար Գոշէ,

Առակ Իծ, զոր կը յիշէ եւ Հ. Ալիշան ի Թ. 1673:

Կարծեմ նոյն է ընդ Համրթոյ եւ Հակրէնի, ի բառից Հա եւ Կուտ, զոր Հայբուսակն կը գրէ ի Թ. 1678: «Հաւկթենի. Ցախ մի ուսկից աւել կու շինեն. Թերեւս նոյն է եւ Հետեւեալն, 1679. Հակրիկ. բայց բժշկարան մի ծանօթ բոյս մի անուանէ զայս. «Մատիտեղն, որ է Քարաք անդարու, որ կոչի փիր, Հայերէն Հակրիկ (Հօկրիկ գրած). Գօզ օթի Թուրքերէն»: Նոյն Թուրի եւ Նոր բառհաւաքի Հակուտակ գրածն»: Այս «Հաւկուտուկ» աւելի կը զօրացնէ զիմ կարծիս Հակրէնի գրելոյ, եւ ոչ Հակրիկի. մանաւանդ զի ի Շալակին, երես 677, թիւ 565, կայ ի բժշկարանէ վկայութիւն «զերդ Հակրէնի է», զոր Հ. Ալիշան կարծեմ սխալ կը հասկանայ Հակրիկի նման:

Իսկ Փէր (որ ուղղելի Թուրի Բէր [Հովուի = արբ. Աստ էտր ր'է]) եւ Հակրիկ, գղ. Renouée (տես Հայբուսակ, Թ. 1991), չունին աղերս ընդ Հակրէնոյ: Զպատճառս Հակրիկ կոչմանդ ալ կը տեղեկանանք ի Գէորգայ. «Պէրդէյանդարու. է խոտ ինչ երկայն եւ փշալի, որոյ գլուխն է որդէս յուն. որ առ բժիշկս ասի Աստ էտրատ'է, այսինքն Հովուացուպ, Չօպան տէյէնէյի»:

**ԽԸ.** 114. «Անղուն: Որ է վարդին Մնթինն (կամ մթինն), որ է Գիւլշանոտ Վարդ. Հոտով վարդն չէ:» Այսպէս գրուած է յԱնգիտի անպէտն: — 2487. «Պաղուն. Վարդ ըլ-Մնթին է, որ է այն վարդն՝ որ պեղծ հոտ ունի,

եւ գոյնն կարմիր վարդի պէս է. այնոր Պաղուն կ'ասեն., ըստ Ամիրտ. — փ. Rose fétide... — 2084. «Մնթին. Տեղ տեղ յիշուի ի բժշկարանս, իբրեւ վայրի կամ անարգ տեսակ, որ եւ կոչուի Գինեհոտ Վարդ եւ Անղուն (Թ. 114):»

— Ջնջելի է թիւն 2084, վասն զի Մնթին առանձինն՝ չէ բուսոյ անուն, այլ արաբերէն կը նշանակէ Չարահոտ, եւ Վէրդ բառի հետ կցած Վէրդ էլ-մնթին է Վարդ չարահոտ: Իսկ յԱնղուն եւ Պաղուն գրութեանց յայտ է թէ մին սխալ է, զոր չկարացի ստուգել: Թերեւս զՊաղուն պէտք է կարդալ Պ. Աղուն, այս ինքն «Պարսկերէն Աղուն»:

Հ. Ալիշան նոյնպէս առանձին առանձին կը գրէ Թ. 262, Ափնիք (որ կը յիշուի եւ ի Թ. 2268), եւ Թ. 2013, Մարդոյ ափնէ, ջնջելի է Ափնիք, որ պարզապէս կը նշանակէ Ափ, գղ. La paume de la main. Իսկ Մարդոյ ափնէ, թարգմանութիւն արաբականին Քէֆֆ ատէմ = Ափ մարդոյ, է Տեսակ մի բոյս, որոյ իսկութիւնն անծանօթ է գիտնոց, կ'ըսէ Հ. Ալիշան, մինչդեռ ի Թ. 262 գղ. Consoude խոտոյ պատկերն կը դրուի եւ հայերէն կը կոչուի Ափնիք: (Գէորգ կը գրէ ի Ջէրրահնամէ. «Արմատ խոտոյ իրիք, որ նման է ափոյ Ադամայ մարդոյ. եւ լինի դեղին եւ սպիտակ»: Տես Ջէրրահ նամէ ի Հայբուսակ, Թ. 579):

ԽԹ. 216 «Արկած? Բժշկարան մի ի կարգի դեղոց գրէ. «Սատաճ հընդիկ. Հնդիկ Արկածի տերեւ»: Նոյնն՝ Հնդիկ Սատաճը

նուարտակն է կ՚ըսէ, բայց Արկածին ինչ ըլ-
լալը չի յայտներ„։ — 1250. "կամ. կոչուի
եւ կասկած. արբ. Սադէճ, Malabathrum [տպ.
Malathrum]„ եւ այլն։ — 1337. "կասկած.
Ջոր ուրիշ օրինակ գրոց (բժշկարան) Դարչինծ
գրէ, եւ յիշուի տերեւն. կասկածի տերեւ. եւ
է Սադէճն Հընդի, լտ. Malabathrum„ եւ այլն։
— 2712. "Սադէճ. Տես կամ եւ կասկած։„
= Հ. Ալիշան իմացած է զնոյնութիւն
կամ եւ կասկած գրութեանց, բայց ոչ զԱր-
կածի, թ. 216, յորում կը շփոթէ զՍադէճ =
Malabathrum ընդ Շէյթարէճ = Passerage,
Նուարտակ. (տես ի Համարն ԿԴ)։ Արկած,
կամ, կասկած անծանօթ են ինձ։ Բժշ. Ա,
145, կ՚ըսէ. "Սադէճ Հնդի [= լտ. "Malabathrum
= արբ. Սադէճ„. Meninski, Onomasticon].
ի Հընդկաց գայ, զէդ Դափնայ [գղ. Laurier]
տերեւ է„. իսկ Թրգմ. Գեղոց՝ "Հնդիկ Սադած.
Հնդի դարչինի տերեւ„. նոյնպէս Գաղ. Ա՝ "Սադճ.
Հնդիկ դարչինի տերեւ„։ Դարչինծ է ուրեմն ու-
ղիղն, ոչ կամ կամ Արկած կամ կասկած.
կամ թէ նոյն իսկ Դարչինծ՝ ուղղելի է Դափնայ ըստ
Ա բժշկարանի։ Թրգմ. Գեղոց կը գրէ դարձեալ.
"Հնդիկ Սադած. Նուարտակ„. պիտի տեսնենք ի
Համարն ԿԴ որ Նուարտակ է "Հնդիկ Շատտէճ„.
ուրեմն եւ "Հնդիկ Սադած„ ուղղելի է "Հնդիկ
Սադադած„։

Ծ. 271. "Բազաւորդ?„ եւ այլն։
= Ուղիղն թուի Բադաւորդ. տես ի Հա-
մարն ՁԴ, ԿԴ։

**ԾԱ.** 406. “Գամճակ Տես գոճամակ„:

== գոճմակ է ուղիղն, լաւ եւս գոճամակ, որ եւ գոճմակ ի բառս Գաղիանոսի։ Տես ի Հայբուսակն թ. 512, գոճմակ կամ գոճամակ։

**ԾԲ.** 431. “Գարճին կամ Քարճին, տեսակ մի վայրի տանձ„:

== Լաւագոյն է Քարճին գրութիւնն, թ. 3174, 2918։

**ԾԳ.** 467. “Գեստոյ պտուղ„:

== պիտի “Գէսոյ պտուղ„. տես ի Համարն ԽԵ։

**ԾԴ.** 475. “Գէշուր. Ստեպղինն է, ըստ Պոնտացւոց կամ Տրապիզոնցւոց„: — 3202. “Քշութ (Գէշիւթ) կոչեն Պոնտացիք Ստեպղինը„:

== կամ գէշուր է գէշուրն, կամ քշուրն (գէշէւրն) են քշուր (գէշէւր). որով եւ է օրինակաւ ջնջելի է մին յերկուց թուոցդ, 475 եւ 3202։

**ԾԵ.** 486. “Գինեղէգն. Գալիենոսի բառից մէջ պիկրէ, Πικρός յոյն բառին զուգուած է, որ նշանակէ կծու կամ թթու. եւ թուի լտ. Picris. Հասարակ տեսակն կոչուի եւս Scorzonera picroides. ուրեմն Սինձ բանջարին տեսակ մ'է. տես զայս։ Այլ եւ այլ տեսակք են Գինեղէգի ի Բաբերդ, յԱկունս Եփրատայ, ի Մարաշ, Այնթապ։„

== Չիք Հայ բառ Գինեղէգն։ Գաղիանոս Բ նախ կը գրէ “պիկրի. ղինեղգն„, եւ ապա “ոխտրիգին. Եղէգն„. իսկ Գաղ. Ա մի անգամ

"Պիկրիգին. Եղէգն" ("Պիկրի. Գինանդէգն" ըստ Հ. Ալիշանի)։ Պէտք է ուղղել "Պէկրէտէն. Եղէգ'ն", յն. Πικρίς (սեռական πικρίδος), գղ. Chicorée sauvage ou Sorte de laitue amère, որ հայերէն կ'ըսուի Եղէգ (Եւք, ԺԲ. 8. Թիւք, Թ. 11, եւ այլն), եւս՝ Եղերդ, Դառնիճ։ Տես ի Հայբուսակին, թ. 635, երես 155, Եղէգ = Եղերդ. տես եւ թ. 649, Եղէգէ։

**ՄԶ.** 3307. "Գմոշոյ պտուղ. Այսպէս անուանէ հին Բժշկարան զԳոզմազիճն. տես թ. 474։"

= Բժշկարան Ա սխալ գրած է Գմոշոյ պտուղ, փոխանակ Մազոյ պտուղ, որ է գղ. Fruit du tamaris, արբ. kismasegj (Կեղսիոս, Հ. Ա, 537), պրս. Քէզմազա, զորմէ կ'ըսէ Գէորգ, "Է գոզակն այնր ծառոյ, որ կոչի Թուրքերէն Իլղուն աղաճի" (= գղ. Tamaris, Մոշի)։ Տես "Մազոյ պտուղ" ի Հայբուսակին թիւք 474, 808. 2584, 3370։

**ՄԷ.** 584. "Դեղուտակ. բժշկարան մի գրէ "Դեղուտակն ճերմակ, որ է Ղատֆէն". մեր լեզուով ուրիշ համանիշ անուններ ալ ունի. տես Երեսնակ։" Եւ ի թ. 669, համանիշ կը գրուին Երեսնակ, Անիծած ծաղիկ, Դեղուտակ, Ղաֆէթ։

= Լաւագոյն գրութիւն բառիս է Դեղոյ տակն ճերմակ, ըստ Ա բժշկարանի. տես Հայբուսակ, թ. 38։ Նոյն է անտարակոյս եւ Դեղնակ տակն ճերմակ, որ կը յիշուի առանձին ի թ. 780։ Կայ եւ Դեղնտակ ի Գիրս Վաստակոց, Յգ., երես 206,

զոր կը նշանակէ եւ Հայբուսակն, Թ. 781։ [illegible] է կարծեմ Ազնուակ Տղտի (գղ. Guimauve) արմատն։

**ՄԸ.** 656. "Եղնճկտուկ, Եղինճկտուկ, Եղինճկտուտ, Եղնճկտակ, Եղինճկտակ։ Արջոյն բազմաթիւ անուանց եւ տեսակաց մէկն, հաւանօրէն Եղինճի [գղ. Ortie] նմանութիւն ինչ ունենալով։" — 3358. "Ղենջակի տակ? Օտար եւ երկբայելի բան մի լսուի, մանաւանդ բառին ծանօթ եւ աննման նշանակութեամբն. սակայն նորեկ Բժշկարան մի համանուն պինդ բուսեղէն մի կարծեցընէ, գրելով սպեղանի մի շինել, այսպէս" եւ այլն։

= Վերոյիշեալ ամենայն ծեքածուռ անուանց ուղիղն թուի Աղջկտուտ կամ Աղջկտուտի (համեմատէ ընդ [illegible]), որ կայ ի Թ. 58 Հայբուսակի, "Աղճկտուկ, Աղճտուկ, Աղճկտուն, Աղջկտուտ, Աղջիկտուկ. Աղջկտուտ։" "Մալաւշիա [= յն. Μολόχη. Μαλάχη. գղ. Mauve]. Աղջկտուտ կամ խուպպազ [= արաբ. խուպպազ. գղ. Mauve]." կը գրէ Բժշ. Ա, 144։ — "Մոլոխ, որ է ի խուպպազէ ազգ մի, որ է ցանծոյ եւ տանու Աղջկտուտի." Մխ. Հեր., ԼԴ, 95—96։ Եթէ Ղենջակիտակն ոչ է Եղնջակիտակ = Աղջկտուտ, թերեւս է Ամիրտովլաթայ՝ Երնջակին տակն," ի Թ. 356 Հայբուսակի։

**ՄԹ.** 672. Երիժնակ։ Կէս բժշկական կէս աղթարական գիրք մի՝ դիւահարի եւ կապ-

ղածի դեղ կու գրէ Երիժնակի +օ+ (տակ)„ եւ այլն։

= Երիժնակ։ Բանջար փշալից. զսորա բունն կամ զործանն կեղեւեալ առանց եփելոյ ուտեն, եւ զարմատ սորա ի գործ ածեն ի դեղ ուռուցից,„ կ'ըսէ եւ Բժշկ. Նոր Հայկ., 41։ Երիժնակ է աղաւաղութիւն Երնջակ բուսոյ զոր կը նշանակէ Հայբուսակն ի թ. 683, որ կայ գրեալ եւ Երընջնակ, Երընջնան, Երնջան, Երնջայ։ Համեմատէ զԵրիժնակի +օ+ ընդ Երնջակի տակ, Հայբուսակ, թ. 356։ Այսպիսի է յն. ἠρύγγιον, լտ. Eryngium, գղ. Erynge կամ Éryngion (մի տեսակն Panicaut), թուրք. Էրէնճէ (պօզաճ.)։ "Երնիգիոն [կարդա՛ ըստ յունին Երինգիոն]. Երընջնակ„. Գաղ. Բ։ — "Երնիգիոն. Երընջնան.„ Գաղ. Ա, Գ։ — 'Երնիգիոն, Երընջան.„ Գաղ. Դ։ Յորմէ Իշ-երընջնան կամ Իշ-երընջայ, Հայբուսակ, թիւք 684, 848։ Տես եւ զՀամարն ՁՁ։

**Կ.** 677. "*Երկախարպուզ*? Որոյ հոմանիշ ի բառս Գալիենոսի յունարէն գրուած է Մագլոնէ, որ նշանակէ Ցանկապատ կամ Բակ։„ [Սովին նշանակութեամբ յն. Մագլոնէ բառ չգիտեմ. կայ Μάγαρον Lieu secret où l'on conserve les objets sacrés].

= Ուղիղ կը գրուի ի թ. 1038. 'Մակլոն. Երկայն խարբուզ,„ համեմատ Ա Գաղիանոսի "Մակլոնի. Երկայն խարբուզ.„ մինչդեռ Գաղ. Դ կը սխալի "Մակլոնի. *Երկախարպուզ*, գրելով։ Այս Մագլոնէ, զորոյ զստուգաբանութիւնն չգի-

տեմ (յն. Μαχρός է Երկայն), կայ եւ յԱմիրտ. Անգ. անպ. «Մալոնիա. եւ ինքն Մախլունիան է, եւ ինքն Ցերչան խիարն է, որ պ. [այս ինքն՝ պարսկերէն] խիարզահ.» երես 203ը «Երչայն խորբզուզ»աւ հայ գաղիանոսն կ'իմանայ 'Երկայն Սեխ[1],» առեալ ի պարսիկ լեզուէ «Խերդիլ-դի. Սեխ. գովան.» գէորգ. որ եւ Խերդիլ-դ բառի կու տայ կրկին նշանակութիւն թէ Ձմերկի, թէ Սեխոյ։ Եւ զի Ամիրտովլաթ «Ցերկան խիար» կը կոչէ զՄալոնիա, պատճառն այն է անշուշտ զի խիար կոչուած է եւ Սեխն. Կելսիոս կ'ըսէ, Հ. Ա. 369. „Et melonem Chiar dictum Aegypto adscribit Alpinus (De Plant. Aegypti), et post eum Joh. Bauhinus (Hist. Plant. tom. 2, lib. 16, p. 245), Casp. Bauhinus (Pinax, 311), Olph. Dapperus (Aegypt. p. 135), Morison (Hist. Plant. Parte 2, p. 30)." Տես անդ եւ յերես 374 պըս. Charbuse = Melo, այս ինքն Սեխ։ Հ. Ալիշան, Թիւք 1038, 2734, ուր ուղիղ կը հասկանայ խարբզակ = Ձմերուկ։ Կայ «Ցերկան խիար», եւ ի Մխ. Հեր. ԻԶ, 71։

Ծանօթութիւն.

1. «Ցերչայն հասած խորբզուզ, որ է Սեխ, որ չլինի քաղցր.» Մխ. Հեր. Խ, 119. զոր համեմատէ եւ ընդ յաջորդիդ. «Ցերչայնն [Սեխին] լաւ է քան զբոլոր. եւ հասած կեր.» Բժշ. Ա, տես Հայբուսակ, Թ. 2734։

**ԿԱ.** 3315. «Զափիղ? Մխ. Հերացի ջերմնահալած ըմպելիք մի զուգելու նիւթոց մէջ

գնէ եւ զայս, եւ նոյնանիշ յն. Պէտուրէօն։ Տեսանք ի Թ. 2417, որ Ամիրտ. Ուրկումիլ պտուղը համարէր արբ. Ջաղ կոչուած։„ — 3389. “Պետարիոն։ Տես Զաւիղ։„

= “Զաւիղ՝ որ է Պէտուրէօն„. գրեալ է ի Մխ. Հեր. Լ, 84. բայց Զաւիղ՝ Ձեռագրին կամ տպագրին սխալն է փոխանակ Ղաֆթ. տես անդ “Ղաֆթի քամուքս„, 85. “Ղաֆթի կուրս„, 112. Ղաֆթի կուրս„, 127. ‘Ղաֆէթի չէօր կուրս„, 130. “Ղաֆթին կուրսն, որ է Ղաֆէթին ղուրսն„, 131։ Կը գրէ եւ Բժշ. Ա (Հայբուսակ, Թ. 669). “Ղաֆէթ. որ է Երեսնակն. այլ ասեն Ղուսարա, եւ հոռմերէն Պոտէրէօն։„ Ղաֆթ կամ Ղաֆթ լինելով արաբերէն Ղաֆէթ (Պօղաճ.), Պէտուրէօն կամ Պոտէրէօն ալ կը նոյնանան ընդ յն. Εὐπατόριον[1], գղ. Eupatoire ou Aigremoine, Երեսնակ, Ղաֆէթ։

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ.

1. Հայ լեզուի սովորութիւն է յապաւել զԵւ վանկն՝ որով կը սկսին բազում յունարէն անուանք եւ բառք. այսպէս Գրափոս, Երգետէս (Եւս. Ժամնկգր.), Զոյի, Սեբիոս, Ստաթիոս, Րոպէ կամ Րոպիա, փոխանակ Եւգրափոս, Եւերգետէս, Եւզոյի, Եւսեբիոս, Եւստաթիոս, Եւրոպէ կամ Եւրոպիա։ Ըստ այսմ փոխանակ գրելոյ Եւպատորիոն՝ Մխ. Հեր. եւ Բժշ. Ա կը գրեն ծեքելով Պէտուրէօն, Պոտէրէօն, ուղղագոյն Պոտուրէօն։ Հ. Ալիշան ի Թ. 669 սխալ կը հասկանայ. “Հին բժշկարանն թուի թէ Poterium համարի.... Յունարէնն Ποτήριον նշանակէ Բաժակ։„ Այտըր, Թ. 771, կ'ըսէ թէ բժշկարանի մի Գոթէրէն բառն

"քիչ մի Potirium ձայնը լսեցընէ։" Եւ ի թ. 1886. "Բառագիրք մ՚այլ գրէ. "Սկիզառ? Շուշիմա." [չէք Շուշիմա բառ. տես ի Համարն 2թ.] Բուշքեանն՝ Ջղայ դեղ խոտ մի է կ՚ըսէ, եւ լտ. Poterium, զոր Հայերէն Երեւանակ կոչուածն է, ինչպէս յիշուած է ի կարգին։" Յոյն բառն Ποτήριον ոչ միայն Բաժակ կը նշանակէ (Հայբուսակ, թ. 669), այլ եւ տեսակ մի բոյս, Sorte d'astragale épineux, յորմէ եւ լտ. Poterion, իտ. Poterio, sorta d'arboscello, che rassomiglia alla pianta donde esce la gemma [sic. Թուի gomma] dragante, e che n'è una spezie (Pasini). Բայց Պետաքէօն եւ Պատէրէօն են յն. Εὐπατόριον, ինչպէս ցուցի։

**ԿԲ.** 711. "Զլխի: Ճախնային չորմէր խոտ մ՚է, մանրիկ հունտի պէս ծաղիկներով. եւ գործածուի մանածներ ներկելու։"

== Բուն անունն է թ. 2468. "Զլըխ Զըրային չորմէր խոտ մ՚է նոյն գունով մանրիկ ծաղիկներով. մանած դերձանը կարմիր ներկելու ի բան կու գայ։" Այսպէս ընթերցած եմ եւ ես ի Հաւաքման ուրեք գաւառական բառից (22 Ս. Ղազարու). "Զըլըխ. է խոտ ինչ որ բուսանի ի ճախինս կարմրագոյն, ունի յստա [sic] եւ կարմիր ծաղիկ հնտանման, որով ներկեն զդեղին մանած։"

**ԿԳ.** 762. "Թաղիկ: Ըստ Սիմ կամարկապցոյ՝ է "Արտիճուկ, Էնկինար. ինքն խոտ է, գլուխ կու կապէ նռան չափ։ Տես կանգառ եւ Արտիճուկ։", Եւ ի թ. 1291. "Յիշեցինք որ [կանկարն] Հայերէն Թաղիկ այլ կոչուած է։" Եւ ի Ճալակին, երես 677, թ. 762. "Թաղիկ.

գալիենու բառից կարգին այլ գրուած է յունարէն "Անկան? Թաղիկ կամ կառն." ուրիշ մ'այլ գրած է. "Ակաք? Թաղիկ. Էնկինառ. քինքն է կառ կամ կառոյ ձուլթ. Քէնկէր ախուզէ:"

= Մոլորութեան մէջ ինկած է եւ Նոր Հայկզ. որ կ'ըսէ ի բառն "Թաղի", գղ. Feutre, Ֆէլչ. "Իսկ ի բառս Գաղիանոսի դնի "Թաղիք, կամ կառն," որպէս փուշ ինչ կամ փշալից. գուցէ որպէս Բրդոտ կանկառ." Նոյնպէս եւ ի բառն "կառն". "Իսկ ի բառս Գաղիանոսի կառն եւ Թաղիք իբր նոյն դնին:"

Գաղիանոս Ա, Գ, Դ (չէք ի Գաղ. Բ) կը գրեն, "Ականթաղիկէ. կառն." այս ինքն Ականթալէկէ (ոչ թէ Ական Թաղիկ), ուղղագոյն Ականթա լէվկէ = յն. Ἄκαντα λευκή, Chardon à feuilles blanches: quelquefois Aubépine? Այսուհետ կը ծանօթանայ մեզ "կառն" փշոյ յունարէնն, գղ. Chardon à feuilles blanches, որ եւ կը նոյնանայ ընդ պրս. Պատավէրդ = յն. Ἄκαντα λευκή = լտ. Spina alba (Հայբուսակ, Թ. 313) = Հայերէն Սպիտակ փուշ (Հայբուսակ, Թ. 87) = կամ Հողմավարդ (Թարգմանութիւն Պատավէրդ բառի. Հայբուսակ, Թ. 1711) = արբ. Շաւքաթ էլ պայզա (եւ ոչ պայզա. Հայբուսակ, Թ. 313), այս ինքն Փուշ Սպիտակ: "Լաւն այն է [Պատավարդին] որ տերեւն սպիտակ լինի," կ'ըսէ Ամիրտովլաթ (Թ. 313), զոր համեմատէ ընդ Chardon à feuilles blanches. կը գրէ եւ M. Devic ի բառն Bédégar = պրս. Պատավէրդ, թէ „Chez

nos anciens botanistes, le bédèguar est une plante du genre echinops, le Chardon de Notre-Dame“, որ կը կոչուի եւս Chardon-Marie, լտ. Carduus marianus, ըստ Լիննէի (Լիտրէ, ի Chardon, 1)։ Եթէ Chardon de Notre-Dameի կամ Chardon-Marieի տերեւքն սպիտակք են, աւասիկ մեր Հայ «կատն»ն. եւ այս տեսակ Chardonի վերայ պէտք է որոնել զայն «Անիւ»ն զոր կը յիշէ Հայբուսակ, թիւք 87 եւ 1324։ Լսենք այժմ զԳէորգ. «Պատատուկէր կամ Պատատուկէրտ. Նշանակէ փուշ ինչ, որ լինի յեղանակի աշնան, եւ ի շնչել հողմոյ ի տեղւոջէ իւրմէ կորզեալ, եւ զառաջեաւ հողմոյ անկեալ, այսր անդր տարաբերեալ տատանի [տես զվերոյեգեալ «Անիւ»ն]. Թուրք. Չաքըր տիքէնի. եւ արպ. Շէվքէթ էլ պէյզա։» — «Սէֆիտխար [= Սպիտակ փուշ]. է այն փուշն՝ որ ասի Թուրք. Չաքըր տիքէնի. արպ. Շէվքէթ էլ պէյզա. եւ թարգմանի Սպիտակ փուշ։» — «Խարբու. է տեսակ իմն փշոյ, որ Թուրքերէն ասի Չաքըր տիքէնի։» Հայբուսակն կը գրէ ի Թ. 1256. «Կածըլփուշ. ըստ Սեբաստացւոց Թուրքերէն Չաքըր Թիքէնի ըսուած փշեղէնն է.» եւ ի Թ. 2079. «Մկնփուշ. Թուրքերէն Չաքըր Թիքէնի, ըստ Նոր բառհաւաքի. որպէսն քննելի։» Գէորգ ըսաւ թէ ինչ է Չաքըր տիքէնի[1]։

Ծանօթութիւն.

1. Հ. Ալիշան (Թ. 2929) կ'ըսէ թէ Բժշկարան մը Չաքըր տիքէնի կը կոչէ զՏատասակ, եւ այլ Բժշկարան (Թ. 1640)՝ Տամըր Թիքանի [= Տէմիր տիքէնի]։

**ԿԴ.** 769. «Թառակ.ի բառս Գալիենոսի նոյնանիշ է ընձախոտի. տես զայս, Թ. 746:» — 746, ի բառն ընձախոտ. «Գալիենոսի բառից մէջ գրուի, «Կապլիոշան? Թառակ, որ է ընձախոտ». [գղ. Aconit]:

= «Կապլիոշան, Թառակ, որ է Ընձախոտ» եռապատիկ աղճատաբանութիւնն կը գտնուի ի Գաղիանոս Դ. իսկ Գաղ. Ա. եւ Գ. կը գրեն՝ «կապլիոս, Շանթառակ, որ է Անծախոտ», եւ Գաղ. Բ՝ «կապնիոս, Շաթառակ, որ է Անձխոտ»: Վերջինս կապնիոս է ուղիղն, յն. Κάπνιος, գղ. Fumeterre բոյսն, որ Հայերէն կ'ըսուի Անծախոտ, եւ պրս. Շահթերէ, արաբ. Շահթերէճ (= Շահթարաճ, զոր սխալ կը գրեն Գաղ. Ա եւ Գ Շանթարաճ, փոխ. Շահթարաճ): Տես «Անձխոտ = Շահթարաճ» ի Հայբուսակն թիւք 111, 2220, 2239:

Այլ է պրս. «Շէյթերէ: Տեսակ ինչ խոտոյ. Սէրչէլէ [= Թուրք. Չէրթէ-լէ կամ Սարթու-լու. Հայբուսակ, Թ. 111]. որ արաբացուցեալ ասի Շէյթարէճ. ասի [պարսկերէն] եւ Խաֆշէ». Գէորգ. որ է Հայերէն Նուարտակ. յն. λεπίδιον, գղ. Passerage: Տես զՀետագայսդ. «Սորիճ.[1] Նուարտակ». Գաղ. Ա: — «Շադռայճ, որ է Նվարտակն». Բժշ. Ա, 144: — «Հնդիկ շադռէճ[2], որ է Նուարտակն», Բժշ. ԻԴ (22 Ս. Ղազարու), երես 38. զՆուարտակ «ի Եգըպտան Արթուխա կ'ասեն», կը ծանուցանէ Ամիրտովլաթ (Հայբուսակ, Թ. 111): Շահթերէճ եւ Շէյթարէճ անուանց նմանութենէն

խառնուելով՝ ուրեք ուրեք ի բժշկարանս մեր սխալմամբ Անծախոտ կոչուած է եւ Շէյթարէճն, գղ. Passerage. "Շահթառած. Նուարտակն, որ է Արթուխան, որ է Անջխոտն". Բժշ. ուր սխալ է "որ է Անձխոտն" ըսելն. տես զայս վկայութիւն ի Նոր Հայկզ. ի "Նուարտակ", եւ ի Հայբուսակն, թ. 2220:

Եթէ ստոյգ է Հ. Ալիշանի գրածն, թ. 1956, թէ "Մամու ոջիլ" — (թուի բառ գաւառի) — է գղ. Fumeterre, հաւանական է որ Անծախոտ ալ է Անէծ-խոտ, "Անծախոտ, որ է Սատրաճ [= Շահթերէճ]", կը գրէ Մխ. Հեր. խ. 119. Անծախոտոյ եւ Անջխոտ՝ են ամփոփմունք Անծախոտոյ[2]: — Ի վերջին տեղւոջս կը յաւելու Հ. Ալիշան, թէ գղ. "Fumeterre կոչեն, ծուխի պէս թեթեւ աննշան բան մի ենթադրելով երկրիս երեսէն վեր ելած", բայց Լիտրէ կը ստուգաբանէ „Fumus terrae, fumée de la terre, parce qu'elle fait pleurer le yeux"

Ծանօթութիւն:

1. Փոխանակ զ"Սորիճ" արբ. Շէյթարէճ, պրս. Շէյթերէ բառիւք մեկնելոյ՝ Նոր Հայկզ. կը ստուգաբանէ ի յունականէն Strink (տպ. Strik), Աղդ ադռաւու, եւ Գոդաւոր գիծ կամ խողովակ սեանց. տես անդ Նուարտակ, "բառ անյայտ, իբրու փոքրիկ կամ բարակ նուարտան". յորում կը յիշուի եւ ի բժշկարանաց "Շահթառած, Նուարտակ, յն. Λεπίδιον". խառնաշփոթ է եւ Առձեռն, Ա. տպ. "Նուարտակ. անուն խոտոյ, թռչնոյ, եւ այլն". աւելի խառնակ Բ. տպ. "1. Ընծախոտ [փոխ. Անծախոտ. բայց նուարտակն ոչ

Անծախոտ է, ոչ Ընծախոտ]. շահթէրէ։ 2. Թերեւս՝ Թռչնոյ մը անուն"։

2. Այս է որ աղաւաղեալ կը յիշուի ի Հայբուսակն, Թ. 1629. "Հաճղի. բուս Սիմ. կամարկապցոյ է Շահթառած. տես զայս ի կարգին"։ Ի կարգին չիք Շահթարաճ, այլ յերես 475 "Շահթառակ. Տես Շահառակ". եւ ի Թ. 2239, "Շաթառակ. Շահթառակ" նոյնանիշ Անծխոտոյ. որով եւ Հնդէ զնոյն նշանակութիւն կ'առնու որ ինչ Անծախոտ, գղ. Fumeterre. մինչդեռ կից պէտք է կարդալ "Հնդէ [այս ինքն՝ Հնդէկ. եւ ոչ Հաճղի] Շահթարաճ" որ է Նուարտակ, գղ. Passerage. Տես Շահթարէճ Հինդէ ի Թ. 111, եւ Հնդէկ Շահթարաճ ի Թ. 2220։

Անձախոտ բառի հաւանական ստուգաբանութիւն նշանակած եմ Անէճ-խոտ։ Այժմ աներկբայ եմ, քանզի գրուածոյս մէջ գտի ուրեք զհետեւեալդ. "Շարբաթ բորի եւ քոսի եղքի։ Անէճխոտն, որ է Շահթարաճ, որչափ կամիս այնչափ չաքար խառնէ հետն եւ տուր"։ Անուանք դեղերոյ, հանեալ ի բժշկարանէ գրելոյ յամին 1786, յօդուած Խե. (յընդօրինակութենէ Տ. Սերոբէ Ալիշանի, զոր հաղորդած է ինձ ազնուաբար ի Կ. Պոլիս յամին 1880)։

**Կե.** 787. "Թըթուիճ։ Գալիենոսի բառից մէջ գրուի. "Բէթոնիքէա, Թըթուիճի արմատ", յունարէն բառն հաւանօրէն նշանակէ Betonica, փ. Bétoine, ուրիշ օրինակաց մէջ այն բառին դիմաց գրուած է Լօսաուէրս կամ Լաւէ օէրօն, տես զայս"։ — 952. "Լօսաուէրս կամ Լաւէ օէրս. Գալիենոսի բառից մէջ հոմանիշ գրուած է Բոտնէա կամ Բոթոնիքէա, որ համարուի Betonica, ինչպէս գրէ եւ Ռոշքեանն. իսկ հայերէն

շատ նոյնանիշ անուններ ունի այս [Betonica] բոյսս, մի ի հրաշալի բուսոց Հայոց, զորս յիշենք խաչափայտ անուան ներքեւ„:

[Խաչափայտն, որ եւ փինունայ կամ փիննայ, ոչ է լտ. Betonica, այլ Paeonia, գղ. Pivoine (զոր Հ. Ալիշան ի թ. 1009 կը գրէ լտ. Peonia, գղ. Peonie). ի վերջին տեղւոյն կ'ըսուի, երես 241. "Զզարմանանք մերայնոց այդչափ երկար գրուածոց փինունայի համար, մինչ արեւմտեայք այլ իրենց Betonicaի համար առանձին գրքոյկ կամ տետրակ հրատարակած են„. Երբ, ո՞ր, եւ ո՞վ է հրատարակեր, ոչ ինչ կ'ըսէ: Երկու տեղեաց, թիւք 952 եւ 1009, անհամաձայնութիւնն ակներեւ է:] — 788, ի բառն Թթուկիչ. "Բաղգիրք„ մ'այլ գրէ. "Բէթօնիքէ՝ թրթկճի արմատ. Acetosa„, [գղ. Oseille]:

— Ի բառս Գաղեանոսի երկու նմանաձայն անուանք կան որիշ որիշ գրուած, Բէթօնիքէ եւ Բօթօնիքէ: Նախ "Բետոնիկէս. թրթըւճի արմատ„. Գաղ. Դ. — "Բետոնիկէս, թրթկճի արմատ„. Գաղ. Գ. — "Բետոնիկէս. թրթքճի արմատ„. Գաղ. Ա. — "Բեկանիդէս [sic]. թրթճի արմատ„. Գաղ. Բ. չգիտեմ թէ յոր Գաղիանոսէ է Հայբուսակին թ'թուիճի արմատ„ն, զորոյ ուղղականն կը դնէ թ'թուիճ: Ապա "Բոտանիկէս. Լառասերմ„. Գաղ. Ա. — "Բոտանիկէս. Լօռասերմ„. Գաղ. Գ. — "Բոտանէս [sic]. Լառի սերմն„. Գաղ. Դ. (չիք ի Գաղ. Բ.): Կը թողում "զԲոտանիկէս. Լառասերմ„ն, զոր

ցարդ չիմ կարողացած ստուգել[1], եւ կ'առնում զառաջին "Բետանիկէս"ն։ Կայ յն. Βρεταννική (Բրետանիկէ) բոյս մի, որ կը մեկնուի գղ. Sorte d'Aunée, ou selon d'autres, Sorte de Patience (որ եւ Parelle), ազգ կղմուխ խոտոյ, կամ ըստ այլոց՝ ազգ Աւելկի։ Կը յիշէ զայս եւ Ամիրտոլվաթ Պատանիչէ անուամբ (Հայբուսակ, Թ. 1074)։ "Իսպն [Պայթարն] ասէ թէ ինքն նման է այն խոտին տերեւին՝ որ թուրքն ղուզէ ղուլաղէ [գղ. Oseille, թրթնջկին, Թթուկիչ] ասէ.. ինչպէս կ'ըսէ եւ Լիտրէ Աւելուկ (Patience) բանջարոյ համար՝ թէ տերեւքն թրթնջկի (Oseille) տերեւոց կը նմանին։ Արդ՝ թուի ինձ թէ Գաղիանոսի Բէտոնիկէ (= Բրետանիկէ) բոյսն այս է, (եւ ոչ լտ. Betonica, գղ. Bétoine). որոյ տերեւքն թրթնջկի (գղ. Oseille) տերեւոց նման լինելով՝ կ'երեւի թէ Հայ թարգմանն լաւագոյն բառ մի չէ գտած քան զ"թրթնջկի արմատ"։ Սխալ են ուրեմն Թրթմբւնի, Թրթմնի գրութիւնքն, եւ չէք Թմթուկին բոյս, զոր կը նշանակէ Հայբուսակն եւ յերես 200. ուղիղն է Թրթնջկն, որ եւ Թթուկն. "Հումայոն [= արաբ. Համամ. Պօղած]. Թրթնջկին". Բժշ. Ա. 144. — "Թրթնջկին եփած եւ տապկած ... Թրթնջկի հունդ". Մխ. Հեր. ԻԲ, 45, 44։ — "Հումայզ, որ Հայն Թթուկիչ ասէ, ...եւ թուրքն ղուզու ղուլաղի ասէ". Ամիրտ. տես Հայբուսակ, Թ. 788։ — "Ա՛ռ Սատապ եւ Թթուկչի տակ.. Գիրք վաստակոց, ԵՋ. 208։ Հայբուսակն ի Թ. 788 եւ Նոր Հայկզ. կը յիշեն նա եւ

Թուրինջան, զոր ես ցարդ չեմ գտած մեր հին բժշկարանաց մէջ, այլ միայն ի Գէորգայ Պրուս.-Հայ. բառարանին, ի բառն Թէրշէ. եւ այլն[2]. Ռուշքեան ունի Թնթուլուկ:

Իսկ զԱւելուկ՝ յետ ի թիւն 251 նոյնացնելոյ ընդ Թրթնջուկ, գղ. Oseille, Հ. Ալիշան կը գրէ եւ ի թ. 788—789. «Քալանթարեանն Lapathum համարի [զթթուկիչ]. որ ըստ մեզ պատշաճի Աւելուկին»: Աւելուկ է յն. *Λαπάτη*, գղ. Patience, Parelle sorte d'Oseille, եւ ոչ թէ Oseille. «Ղապաթին (Գաղ. Բ), Ղապաթուն (Գաղ. Ա, Դ). Աւելուկ», Բառք Գաղիանոսի:

Ծանօթութիւն.

1. Այս պատճառաւ գրած եմ յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս. «Bétoine Լօռաւերմ (?):»

2. Այսպէս եւ Խնրէֆր [գղ. Dictame] զոր կը նշանակէ Նոր Հայկզ. իբր ի Բառից Գաղիանոսի. յիմ 4 օրինակս Գաղիանոսի չգտնուիր Խնրէֆր: Տես զայս եւ ի Հոյլքն, թ. 994, ուր չկայ վկայութիւն ոչ ի Գաղիանոսէ, ոչ ի հին Բժշկարանաց:

**ԿԶ.** 896. «Լեւեզակ. կամարկապցին Ալխոշալ օտար բառը մեկնելով կ'ըսէ. «Ինքն Եղինձ խոտն է, կամ Լեւեղակ կու ասեն կամ Ընձուղիայ, Գժնիկ:» Տես Եղինձ:»

— Ես ընթերցած եմ ի Ձեռագրին Սիմ. կամարկապցոյ (տես ի համարն ԽԴ. Ծան. 1), «Ալխոզաղ. ըսլըղան. ինքն եղինճ խոտն է կամ Լեւեղակ» եւ այլն. ոչ Ալխոշալ եւ ոչ Լեւեղակ: կամարկապցին առած է զայս ի Բառից

Գաղիանոսի. "Ըլխօզազ։ Մշկանն Եղիճ, որ է Լեղակ" Գաղ. Դ. զոր Գաղ. Ա եւ Գ. կը գրեն. "Ըլխօզազ. Մշկան լեղինջ, որ է Լեղակ" տես Հայբուսակ, Թ. 899 (չիք ի Գաղ. Բ)։ Մարթի եւս ընթեռնուլ. "Ըլխօզազ մշկան. Լեղինջ, որ է Լեղակ" Զստուգաբանութիւն Ալխօզազ եւ Մշկան բառից չգիտեմ. բայց "Լեղինջ" է պրս. lilandj, lilang, liladj, զոր մեր նախնիք հայացուցած են Լէղակ, գղ. Indigo. տես M. Devic ի բառն Lilas (Գէորգ կը յիշէ միայն Նէյլ, զոր M. Devic, անդ, կը գրէ nilah, niladj)։ "Լեղինջ" է որեւէ ուղիղ ընթերցուածն, եւ ոչ "Եղինճ, ըսըրղան, անճաւրէա" [պրս. էնճիրէ = Եղիճ = գղ. Ortie], ինչպէս կը հասկանայ կամարկապցին՝ սխալ կարդալով Գաղիանոսի բառից Ձեռագրի մի մէջ Մշկանն Եղիճ, զոր պարտ էր ուղղել Մշկան Նեղիճ (Լեղինջ եւ Նեղիճ, Լ փոխանակ Ն, համեմատ ընդ lilandj կամ liladj եւ niladj)։ Նոյնպէս սխալ կը կարդան եւ Նոր Հայկզ. Մշկան Եղիճ կամ Եղինջ ի բառն "Եղիճ", եւ Մշկան Եղիճ ի բառն "Լեղակ". եւ Հայբուսակն, ընդ Եղիճ բառիւ, Թ. 653. "Մշկան Եղինճ. Ըստ Գալիենոսի բառից է Լեղակն." զոր կրկին կը գրէ եւ ի Թ. 2092, "Մշկան Եղինճ"։ — Լեղեղակ բառն ալ՝ զոր Հ. Ալիշան կը գրէ Լեղեզակ՝ ուղղելի է Լեղակ. տես Թ. 897, Լեղակ։

= Նշանակած եմ որ Հ. Ալիշան երկիցս կը գրէ Մշկան Եղինճ, Մշկան Եղիճ, ի թիւսն 653 եւ 2092, որպէս թէ յԵղիճ (գղ. Ortie) բառէ

ըլլար. մինչդեռ ուղիղ ձեւն է Մշկան Լեղինջ կամ Մշկան Նեղինճ, գղ. Indigo. Երրորդ անգամ կը գրէ Հ. Ալիշան ի թ. 899 "Լեղինճ„ ձեւով:

**ԿԷ.** 1026. "Խարբ. ի գիրս Վաստակոց յիշուի Խարբի տակ, թերեւս ըլլայ Խարբախ կամ Խարբակ = կոճ վրացի:„

= Ի գիրս Վաստակոց Խարբի տակ չգիտեմ, այլ Խարբախի տակ, ՑՌԷ. 223, որ է արաբ. Խարդաք = վրացի կոճ. տես ի Հայբուսակ, թ. 1462:

**ԿԸ.** 1086. «Խնձորկուտիկ: Զայս յիշէ Հին Բժշկարանն, ուրիշ շատ խոտոց եւ Բուսոց հետ, իբրեւ դեղ մարմնոյ պաղած մասանց:„ — 1621. "Հայմշուշ: Զայս այլ յիշէ նոյն բժշկարանն, պաղած անդամոց դեղ գրելով խաշխաշի կեղեւ, Գարոյ ալուր, Խնձորկուտիկ, Հայմշուշ, Ֆուֆիլ,„ եւ այլն:

= Թուի թէ զատ զատ գրելի են Խնջոր, Կուտէկ: Խնջոր յայտ է թէ ինչ է. իսկ զԿուտէկ տես անդ, թ. 1495. "Կուտէկ. Հին Բժշկարանն դեղ գրէ մաղասէ շարժած ակռայից՝ այլեւայլ նիւթեր, որոց մէջ նա եւ Զառիկ. Շէկ Ոսպն, Կուտէկ, Բարձուենեկ եւ Քամաստարիոս:„ Փափագելի էր որ Հ. Ալիշան թէ զԽնջորկուտէկ եւ թէ զԿուտէկ բառից վկայութիւնս ճշդութեամբ ի մէջ բերէր, փոխանակ քաղելոյ զբանս Ա. Բժշկարանի: Այլուստ չեմ ճանաչեր զԿուտէկ, եւ բուսական ըլլալուն ստուգութիւն չունիմ:

**ԿԹ.** 1110. "Խոճիկ, Խոճկորիճ = լտ. Tussilago = գղ. Tussilage, Pas-d'âne

[տպ. Pas d'âne]:„ — 3047. "Փարփարնայ: Տես Խոճկորին կամ Խոճիկ„ եւ այլն:

= Ուղիղն է խոճկորուկ, եւ կը նշանակէ գղ. Pourpier, զոր հայերէն կը կոչենք եւս Անմեռուկ. տես ի համարն ՀԸ:

Հ. 3332. "Խոնջտակ: Ո՞ւր գրուած կամ լսուած է, չեմ յիշեր, բայց ճանչցուած է Եզանագի.„ տես Թ. 609:

= Ոչ "Խոնջտակ, այլ Թ. 1149, "խունջդուկ, խոնտակ. Նման կամ նոյն են ընդ խոնդատի,„ եւ այլն: Բուն բառն է խունդուռ, Թ. 1148, ուր Հ. Ալիշան կարէր յիշել եւ զխունջդուկ, խունդուկ, փոխանակ զատ թուահամարաւ գրելոյ զայդոսիկ. իսկ Խոնջտակ, որ սխալ ընթերցումն է խունջդուկ բառի, — փոխանակ —, ջնջելի է. խունդուռ, գղ. Molène, Bouillon-blanc, կը կոչուի ի Բժշկարանս նա եւ Եզնագի կամ Եզնագի (Հայբուսակ, Թ. 609, 1149), Ձկան մահարար = պրս. Մահիզէհր արաբացուցեալ Մահիզահրէճ, որ կը նշանակէ Ձկան թոյն. Նո̂յն է եւ փլոմ[1], որ թուի բառ գաւառի, չգիտեմ. իսկ Բարսղի Կեսարացւոյ Վեցօրէին թարգմանն, Թ. երես 186, յոյն բառիւ կոչած է փլոմոս, Φλόμος.

= Գրած եմ որ խունդուռ բառն՝ աղաւաղանօք լսուած է նաեւ խունջդուկ, խունջդուկ, խունդուկ, զորս Հ. Ալիշան առանձին առանձին կը նշանակէ իբր զատ բոյսս: Նոյն խունդուռ բառի այլ իմն աղաւաղութիւն բառի նա եւ խնդուկ ի Թ. 1071. "Խնդուկ: Բժշկարան մի շատ հանրա-

բար եւ անորոշ բացատրէ. Խնդունք քօքն՝ որ ի ըերէնս ընէ մոխրագոյն է:,, կարծուի տեսակ մի Զուիրակի, լտ. Origanum Amaracus կամ Dictamus Creticus.„ Արդ համեմատէ զվկայութիւն Խնդունք բառի ընդ Խոնդուրը, թ. 1148. "Խոնդուրն որ է ըերէնս ընէ մոխրագոյն է:,

Ծանօթութիւն.

1. Կ'ըսէ Հ. Ալիշան ի թ. 3109—11. "Ս. Բարսղի Վեցօրէից մէջ գրուած է, թէ աղուէսն "բժշկէ զվէրս իւրոյ հարուածոյն ի հուզոյ (Հայբուսակ՝ ի կուզոյ) որ լինի ի ծառոյ միոյ, որ անուանեալ կոչի Պիտուս:„ Յն. *Πίτηος* [աւելի էր *Πίτυς*, զի *πίτυος*, եւ ոչ *πίτηος*, սեռական է. *Πίτυς* է գղ. Pin] նշանակէ փիճի կամ նման ծառ մի: — Մեր մեկնչաց մէկն [ո՞վ մեկնիչդ] կ'ըսէ. "Այն խոտն որ ի Վեցօրեայն յիշէ Բարսեղ, թէ աղուէսն զիւր խոցն Փղոմոսէ—? (բժշկէ), այսօր ի մեր գաւառս Փուռ ասեն:„ Հ. Ալիշան եթէ նայած ըլլար ի Վեցաւրեայն, թ. 186, թէ զՓղոմոսէ? բառն կը հասկնայր եւ կ'ուղղէր, եւ թէ կ'իմանայր որ շփոթութիւն կայ ի բանս մեկնչիդ: Վեցաւրեայն կ'ըսէ. "Արջ [եւ ոչ Աղուէս] յօժամ վէրս առնու յանձին, ...երթայ խլէ զարմատ մի՝ որ անուանեալ կոչի ֆղոմոս.„ անանուն մեկնիչն շփոթած է զԱրջ Վեցաւրէին ընդ Աղուեսու, որոյ համար կ'ըսուի ի նմին տեղւոջ. "Աղուէս ... բժշկէ զվէրս իւրոյ հարուածոյն ի հուզոյ՝ որ լինի ի ծառոյ ...որ անուանեալ կոչի Պիտուս (կամ Պիտիոս)„: Պէտքէս Ծառոյ չյարմարիր մեկնչին Փուռ խոտն, այլ Փղոմոսի, որ Արջու համար ըսուած է, եւ ոչ Աղուեսու:

ՅԱ. 1118. "Խոռոմոյ ձորէն. ըստ Ասարայ է Գաւառս. տես զայս: Բայց ստուգելի է

ծագումն *Խոռեմ*՝ անուան։„ — 434. ի բառն գաւարս [գղ. Panic]. «Ասար բժշկապետ մեր՝ գաւարսի եւ Ջռաւթի զոյգ գրէ եւ *Խոռմոյ* կորէկ. իսկ այդ զանազանիչ *Խոռեմն* կամ *Խոռում* ինչ տեսակ է։„ — 1132. «Խորոմ. լսուի ի խոտուջուր. թերեւս վերոյիշեալ *Խոռմոյ* կորէկն ըլլայ՛„

— Ուղիղ ընթերցուածն է Հոռոմ կորէակ. տես թ. 1726, "Հոռոմ կորէկ. ըստ Ասարայ Գաւարսն է։„

**ՀԲ.** 1125. *Խուտոր*։ Անուն տեսակ մի խաղողոյ, յԵրեւան։„

— Ուղիղ ընթերցուածն է Խտտոր, թէպէտ եւ զարմանալի է որ խաղող մի այս անուամբ կոչուի։ Տես թ. 975, ի կարգի այլեւայլ ազգաց խաղողոյ "Խտտոր, յԵրեւան„ եւ թ. 1159, «Խտտորուկ կոչուի նա եւ տեսակ մի խաղող։„ — «Ռմկ. Սխտորուկ կամ Խտտորուկ է խաղող սպիտակ՝ փոքր ինչ երկայնաձեւ, միջակ անուշութեամբ. իբր Քարմաղ էաղէաւէ„։ Նոր Հայկզ. ի «Խստորակ„։

**ՀԳ.** 1250. «*Կաժ* = արբ. Սադէճ = լտ. Malabathrum [տպ. Malathrum].„ — «*Կաժ*„ եւ ի թ. 2712։

= Տես ի Համարն խթ։

**ՀԴ.** 1327. «*Կաոշուկ*։ Վարսակ նշանակէ. յիշողն՝ անյայտ։„ — 1498. «Կաշուկ, Ռամկական անուն վարսակի։„

= *Կառշուկ* չգիտեմ. այլ ի Հաւաքման գաւառական բառից (22 Ս. Ղազարու)

կարդացած եմ. "Կոտշոոն, որ է Եոսլոֆ,, վարսակ, գղ. Avoine.

**ՀԵ.** 1337. "Կասկած = արբ. Սադէճ = լտ. Malabathrum:,. — "Կասկած,, եւ ի Թ. 2712:

= Տես ի Համարն ԽԹ:

**ՀԶ.** 1338. "Կասկամոն կամ Կաստամոն: Յայտ է յունական ձայն անուանն, բայց ինչ ըլլալն ոչ նոյնպէս. Պիսիդեայ քերդուածէն առնըլով յիշէ Վարդան Վարդապետ թէ Նոխազ՝ զԿաստամոն ուտելով՝ բժշկի,,:

= "Ուղիղ ընթերցուածն կը գտնուի ի Թ. 2627, ի բառն Ջաւզալակ = Սակամոնի [քան զանծանօթ Ջաւղալակ արժան էր նախամեծար համարել զՍաքամոնէ]:,, Նիւթոյն դառնութեանն համար անամոքելի կոչած է Պիսիդէս (զՍակամոնի)՝ ըստ Հայ թարգմանին. "Նոխազք զանամոքելի Սակամոնին (կամ Ասկամոնին) կերեալ՝ ի բաց թքանեն զտկարութիւն [ընթերցիր՝ զտհալութիւն],,: Այս է աւասիկ Վարդանայ Արեւելցւոյ յիշածն յիւր Մեկնութեան Ծննդոց Գրոց, երես 30 (Ա. օրինակ, Թիւ Ձեռագրին՝ 999. Է. Ե. 22 Ս. Ղազարու). "Գայլք հող ուտեն [2 ուտել], եւ Նապաստակք զընդուզն, առիւծ զկապիկ, եւ Նոքա [յոյնն՝ կարապք] զգորտս, Նոխազ զԱսքամոն[1], եւ արագիլ ուտէ զաւձս եւ ոչ ախտանոյ,,. որ է բառ առ բառ ի Գէորգայ Պիսիդեայ Վեցօրէէն, տողք 953—958.

"[Գ]այլք զհող (ուտեն), նապաստակք զբըն-
դուռնս,
Առիւծ զկապիկս, եւ նոքա [յոյնն՝ կարապք]
զգորտս.
Իսկ նոխազք զանամօքելի Ասքամոնէն կերեալ՝
Ի բաց թքանեն զտհաւլութիւն.
Եւ առանց Ասկղեպեայ՝ աղարտեալ սատուծոյ՝
Արագիլ ուտէ զաւձս եւ ոչ ախտանայ„.

յոյն բնագիրն ունի Ασχαμμωνία, որ կ'ըսուի եւ Σχαμμωνία, Σχαμμώνιον, գղ. Scammonée:

Ծանօթութիւն.

1. Բազմավէպ 1875, երես 357 [տպ. 2573ա], կարդացած կամ թերեւս ուղղած է զԱսքամոն: Եթէ Վարդանայ Ծննդոց Մեկնութեան այլ օրինակք ունին չքաքամոն, չքամմոն, դիւրին էր համեմատել զՁեռագիր ընդ Ձեռագրի եւ գտանել զԱսքամոն:

**ՀԷ.** 1422. "Կծուուրց? Այս այլ ուտելի խոտեղէն մ'է, վարդագոյն (Նոր Դար, Է, 102):„

= Կծուուրց ոչ է առանձին բոյս, այլ նոյն ընդ Թ. 2426, Ո-էջ, զորմէ կ'ըսուի թէ "ունի կծու համ, եւ գործ է դրուում կերակրի մէջ„:

**ՀԸ.** 1467. "Կոճկորակ: Անուն հասարակ կամ տեսակ մի փրփրեմի, տես զայս:„ — 3115. "Փրփրեմ: Որ եւ Անմեռուկ, Կոճկորակ. ծանօթ խաւարտ ուտելի. լտ. Portulaca, փ. Pourpier ...: Հին Բառգիրք մի գրէ. "Ան-

դըրքնէ. փերփերան կամ Կոճկորակ կամ Անմեռուկ:„ Կօծքօրաք սխալ բառն (փոխանակ խօծքօրաք) կը գտնուի եւ ի Նոր Հայկազեանին եւ յԱռձեռնի առաջին եւ երկրորդ տպագրութիւնս՝ ի բառն "Անմեռուկ„:

= Չիք Կոճկորակ խաւարտ, գղ. Pourpier. այլ խօծքօրաք է հարազատն, մի յանուանց Անմեռկի, գղ. Pourpier. Հ. Ալիշան կը յիշէ զխօծքօրաք ի Թ. 1110, բայց սխալ հոմանիշ կը դնէ գղ. Tussilage: Հաստատեմ նախ զխօծքօրաք գրութիւնն եւ զնշանակութիւնն, եւ ապա ցուցնեմ զպատճառս մոլորութեան Հ. Ալիշանի՝ որ զխօծքօրաք նոյն կը համարի ընդ գղ. Tussilage:

Գաղիանոս Գ. կը գրէ. "Անդըրքնէ. փերփերան, կամ Կոճկորակ [sic]. կամ Անմեռուկ„: — Գաղիանոս Ա., Բ., Դ.՝ պարզապէս "Անդըրքնէ [Գաղիանոս Դ.՝ Անդոքնէ]. փերփերան„: Դարձեալ Գաղիանոս Գ. "Բակլաթ ըլ համքա [Չ Բակշաթըլհամկնա]. փալփալնա հին, որ է խօծքօրաք„. Գաղիանոս Ա.՝ "Բակլաթ ըլ համքա [Չ Բակշաթըլհամկնա]. փալփալնահին. եւ ինքդ խօծքօրաք„. եւ "փարփարնահին, խօծքօրէք հունդ„: Անդըրքնէ = յն. Ἀνδράχνη գղ. Pourpier, այս ինքն Անմեռուկ կամ փերփերան (որ եւ փրփրեմ, Թուրքերէն ֆէրֆէրէմ, Սէմիզ օթ. տես ի համարն ԻՁ, ծան. 2). Նոյն բանջարն է եւ Բաքլաթ ըլ համքա = արաբերէն Պաքլէթ էլ հէմգա կամ համգա (տես ի նոյն համարն ԻՁ): Այժմ Գաղիանոսի բառք կ'ըսեն մեզ թէ՝ թէ Անմեռուկն՝ կը կոչուի նաեւ Կոճկորակ

կամ խոճկորակ. յայս կրկին ընթերցուածոց ուղիղն յայտ է թէ երկրորդն (խոճկորակ) պէտք է համարուի՝ երիցս այսպէս գրեալ, մինչդեռ առաջինն (Կոճկորակ) մի անգամ եւեթ: Բայց կայ եւ այլ հնար ստուգելոյ զխոճկորակ գրութիւնն: Իտալերէն Porcella (իգական) եւ Porcello (արական) կը կոչուի խոճկորն (= Ձագ խոզի), եւ Porcellana կը նշանակէ "Փրփրեմ. Անմեռուկ. Սեմիզ օթու„ (Ջախջ. Իտ.-Հայ.). յոր անուն կոչուած է եւ հին գաղղիերէնի մէջ Անմեռուկն. "On nommait aussi Pourcelaine le Pourpier„ (Լիտրէ, ի ստուգաբանութեան Porcelaine բառի): Ուրեմն եւ խոճկորակ (նուազական խոճկոր = Ձագ խոզի բառի) է այն բանջարն՝ որ իտալերէն կը կոչուի Porcellana ի Porcella (= խոճկոր) բառէ, եւ որ հին գաղղիերէնի մէջ ըսուած է նոյնպէս Pourcelaine, իսկ այժմ Pourpier, Անմեռուկ, փերփերան, փրփրեմ:

Եկեսցուք ի գղ. Tussilage նշանակութեանն զոր տուած է Հ. Ալիշան խոճկորակ բառի ի Թիւն 1110. "Խոճիկ. խոճկորակ. Խոճկորիճ: Սովորաբար իր հունտն յիշուի, Խոճկի հնտ., Խոճկորճի հնտ., լտ. Tussilago կամ Petasites, գղ. Tussilage կամ Pas-d'âne [տպ. Pas d'âne]. յատկօրէն այլ կոչուի լտ. Tussilago, Farfara. այս անունս այլ պէսպէս կերպով է գրուած հայերէն ի Բառգիրս եւ ի Բժշկարանս, յաւելուածով ն տառի, Փալփալնա, Փարփանա„ եւ այլն, եւ ի Թ. 3047. "Փարփար-

նայ։ Տես Խոճկորին կամ Խոճիկ„։ Աւասիկ պատճառ մոլորութեան Հ. Ալիշանի. փոխանակ զՓուլփուլնուհին եւ Փուրփուրնուհին գաղիանոսի Բառից իմանալոյ պարսկերէն փէրփէհէն կամ ֆէրֆէհէն[1] = Անմեռուկ, փրփրեմ (տես ի Համարն ԻԶ, Հ. Ալիշան կը թողու գէթ վերջաւորութիւն բառիցն, զի տառն յաւելուած կը համարի, եւ կը զուգէ զՓալփալնա կամ Փալփալնա ընդ նմանաձայն լտ. Tussilago Farfara, գղ. Tussilage, Pas-d'âne. Խոճիկ եւ Խոճկի ձայնք չգիտեմ. այլ կը համարձակիմ ըսել թէ չէք բոյս Խոճկորին, եւ Խոճկորճի ձայնն ուղղելի է խոճկորէկի [= խոճկորակի] ձայնս, ինչպէս կը գրէ գաղ. Ա., որ ի Մխ. Հեր. ԻԳ, 50, կ՚ըսուի "փերփերանի հունդ„, եւ այլուր՝ "փերփերնի հունդ„։ — Խոճիկ կը յիշուի եւ ի Թ. 1775, 3047. իսկ Խոճկորին՝ վեր ի վայր ի մատենին. տես Թ. 987, 1249, 2932, 3047, 3084. եւ ի Շալակին, երես 676, Թ. 538։

Ծանօթութիւն.

1. Անմեռուկն կը կոչուի պարսկերէն եւ խարֆէ, խէրֆէ, խէֆրէճ (գէորգ)։ Հ. Ալիշան կը գրէ ի Թ. 123. "Բժշկարան [տպ. Բժկարան] մի կ՚ըսէ. Անմեռուկ՝ փրփրեմին հունտն է. եւ այլ անէն ղըրքայ„. ուղղէ ղըրֆայ = պրս. խարֆէ։ Նոյնպէս ի Թ. 1818 ջնջէ գգրութիւնն ղըրքայ, խըրքայ. եւ յետ 1829 Թուոյն՝ ուր կ՚ըսուի, "ղըրֆա. տես ղըրքայ եւ Անմեռուկ„, ջնջէ զղըրքայ։

**ՀԹ.** 3346. "Հազի. Այսօր յն.ի բառս գալիենու գրուի Սֆէնդամոս. ստոյգը տես Թ. 347. որով յայտնուի Բիծխիի ազգէ ծառ մի„։

= Ստոյգն կը գտնուի ոչ ի Թ. 347, այլ ի Թ. 1661. “Հայք, որ Գալիենու բառից մէջ յն. կոչուած է Սֆէնդամոս, եւ պիտի ըլլայ Սֆէնդամնոս, Σφένδαμνος [տպ. Σφέδαμμνος], լտ. Fraxinus (կամ Acer), փ. Frêne” եւ այլն: [Σφένδαμνος է լտ. Acer, գղ. Érable[1]. իսկ լտ. Fraxinus, գղ. Frêne, յն. կ'ըսուի Μελία. տես յAlex. տես եւ ի Նոր Հայկզ. Σφένδαμνος = Acer ի բառն “Ցախ”, եւ Μελία = Fraxinusի բառն “Հացի”:]

Գաղիանոս Բ. կը գրէ. “Սփեմդամոս. Հացի”. այլ Գաղիանոս Ա.՝ “Սփեմդասոս. Հայք”: ԶՍֆէմդամոս Նոր Հայկզ. ի բառն “Հացի” կ'ուզէ կարդալ յն. “սֆէնտամոս, իբր Օձատանձ”, եւ յն. եւ լտ. կը դնէ Μελια, Fraxinus [որ է գղ. Frêne]. այլ ես եւս ընդ Հ. Ալիշանի կ'իմանամ յն. Σφένδαμνος, գղ. Érable (եւ ոչ թէ Frêne): Ցիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս Հայք կոչած եմ զFrêne, եւ Դղքի[2], Պիծխի զÉrable. երկոքեան յետինք ստոյգ Erable են կարծեմ. բայց նոյն իսկ Հացի՝ թուի Érable ըստ Հեղինակութեան Գաղիանոսի Բառից. իսկ Frêne կոչելի է Խոանի կամ Խոանի ծառ, ինչպէս կ'ուսանինք յԱմիրտովլաթայ (Հայբ———ք, Թ. 1661). “Մարան. ասցած է թէ ի Խոանի ծառն[3] կու նմանի, եւ ոմանք ասեն թէ ստոյգ Խոանին ծառն է...: Ասէ Պատեհին թէ Մալէոյ [= յն. Μελία = գղ. Frêne] ասեն. ինքն ծառ մն է բարակ եւ երկայն. եւ իր փայտէն ռումբ կու շինեն ի Դամասկոս...: Այս փայտին որ Մարան [տպ. Որման?

այլ ի Թ. 1537 ուղիղ գրի որ Մորան] կ'ասեն, իր միրգն տտիպ է եւ ուժով որպէս Գղթոր՝„ „Իր փայտէն [illegible] կու շինեն„, իմա նիզակ. վասն զի եւ յն. Μελία ոչ միայն Frêne ծառն է, այլ եւ Lance de bois de frêne[4], բազում ուրեք յիշատակեալ ի Հոմերի Իլիականին (զոր Հ. Արսէն Բագրատունի թարգմանած է Հայերէն)։ — Թուի ինձ թէ այս հատենին ձեւ կ'ակնարկէ եւ Մատթէոս Ուռհայեցի (տպ. Երուս., երես 400) երբ կ'ըսէ. „Առեալ ի ձեռին իւրում բիր մի հատենի [գղ. un bâton de frêne]„. որ յայլում օրինակի գրեալ է „Լաւ փայտեղեն հատենի„ (տես Անդրանին, երես 49 ա, ի ծանօթութեան). զորոյ նշանակութիւն չհասկանալով Սմբատ Սպարապետ՝ փոխած է „Լաւ հատան մի [գղ. un marteau] ի ձեռն„. (տպ. Շահնազար, երես 90)։

Ծանօթութիւնք.

1. Ինչպէս կը դնէ եւ Հ. Ալիշան ի Թ. 347, „Բիծխի, Σφένδαμνος [տպ. Σφένδανος], Acer, Érable„։ — Թ. 2088, „Σφένδαμνος, Acer, Érable„։ — Եւ ի Թ. 794, „Թղկի կամ Դղքի, Acer, Érable„։

2. Այս է ստոյգ գրութիւն բառիդ, ինչպէս կը կարդանք ի համառօտ բանին՝ վերնագրելոյ „Յաղագս Ծառոց„, որոյ հեղինակ կը նշանակուի Աղեքսանդր ոմն (Հ. Գար. Զ., Մատեն. Հայկ. Թարգմ. Նախնեաց, Ս. Ղազար, 1889, երես 293). „Ընձնին, Դղքին, Մանին, Հացին, կեչին եւ խածին„։ Հայբուսակ չունի Դղքի ի կարգին, այլ կը նշանակէ զայն ի Թ. 794, ի Թղկի եւ զատ թուահամարաւ, 2962, կը գրէ նաեւ Տխկի (տես Տխկի եւ

ի թ. 347)։ Տիւլի եւ Թուլի են ռամկական հնչմունք Դուլի բառի։

3. Այսպէս ընթերցած եմ ի Ձեռագրին Տ. Սեր. Ալիշանի, երես 203 verso. իսկ Հ. Ալիշան կը գրէ "սանն, թէ խէթանի ծառն„։

4. Այլ կայ Նիւլուկ եւ ի փայտէ Erable ծառոյ.

"Le soir, il descendait vers la mer, le
front bas,
Toujours seul, appuyé sur sa lance
d'érable„.

Edmond Haraucourt, La Mort du Viking.

Ձ. 1602. Հալվի խօռ, զոյգ ընդ բառիցն Հալվա եւ Հալֆա. "Հալվի խօռ կոչուի ուրիշ բոյս մ'այլ, իբրեւ հալաւի կամ զգեստեղէնի„։ — 2987. "Հալէպլին օուլ Պարաջէան, որ թուրքն Պառրա օթի ասէ, Հալվի խօռ (թ. 1602)„։

= Ուղիղն է Հ. չէի խօռ, այսինքն Հայերէն չէի խօռ, ինչպէս կը գրուի ի թ. 927. "Լուսադեղ. Լուսախոտ. Լուսէխօռ„. Ամիրտոլվաթ "Տուղաս, որ է Հալէպլին օուլ-պարադէան? որ թուրքն Պառրա (ճէրէ) օթի ասէ, Հ. չէի խօռ„։ Պարաջէան սխալ է, եւ Պարադէան՝ ուղղելի թուի Պարդուզա, քանզի Գէորգ ի բառն Քէյէ կը գրէ. "Լու. թուրք. ճէյրէ, եւ արպ. Պէրդուզա„։ Տես անդ եւ "Քէյէմէզէ. Լուսախոտ. ճէրէ օթի„։

Ի նմին թ. 1602. "Առաջին [այսինքն Հալվա] կերպով գրէ Սալէյրջէն, եւ թութէն վերջը գալը կ'իմացընէ (թ. 808)„։ Իսկ ի թ. 808,

երես 195. “Գրիգոր Աղթամարցի զուարճասէր կաթողիկոսն՝ գարնան ընծայած պտուղներն երգելով՝ Նախակարգէ զԹութ:

“Թութն յառաջեաց քան զՀաւլին,,, եւ այլն: Սալաջարցի յայտնի սխալ է. Նոյնպէս սխալ թուի ինձ եւ Գրիգոր Աղթամարցի, քանզի այն Տաղն Գարնան՝ որոյ սկիզբն է “Աստուած անսկիզբն եւ անսահման,,, եւ յորում կը գտնուին Հ. Ալիշանի յիշած 4 տողքն, անանուն է, եւ շատ հեռի ի Գր. Աղթամարցւոյ յարուեստէն եւ յոճոյն: Հաւլին՝ որ կը յիշուի ի Տաղին՝ չգիտեմ թէ ինչ է:

**ՁԱ.** 1629. “Հանդլի. ըստ Սիմ. կամարկապցոյ է Շահթառաճ,, [= Անծախոտ, գղ. Fumeterre]:

= Պէտք է կից կարդալ Հնդէլ [այսինքն Հնդէլէ. եւ ոչ Հանդլի] Շահթարաճ, որ է Նուարտակ, գղ. Passerage, տես ի համարն ԿԴ, ծան. 2:

**ՁԲ.** 1678. “Հաւկթենի: Ցախ մի ուսկից աւել կու շինեն,,:

= Ուղիղն թուի Հաւկթէնի (= Հաւկուտ), ինչպէս կը գրէ Բժշկարան մի ի Շալակին, երես 677, թ. 565: Տես ի համարն ԽԷ:

**ՁԳ.** 1740. “Հովմարդ: Տես Բատավարդ,, — 313, ի բառն Բատավարդ “Հերացին Մխիթար կ'ըսէ. “Պատվարդ՝ որ է Հովմարդ, որ է Վայրի Երնջակին տակն,,:

= Մխ. Հերացի այդպիսի ինչ ըսած չունի, այլ “Պատվարդ՝ որ է Հողմավարդ,,. Լ. 84,

ինչպէս կը գրէ ինքնին Հ. Ալիշան ի Թ. 1711՝ Գաղիանոսի բառք են որ կը գրեն. "Բաւդաւորդ. Մանր Երընջնի տակ [2 Մանրեր ընջ նիտակ]„. Գաղ. Դ.: — "Բագաւորդ. Մանր Երնջնանի տակ„. Գաղ. Գ.: — "Բագաւորդ. Մանդր Երընջնանի տակ„. Գաղ. Ա.: Իսկ Բժշկ. ԻԴ. (22 Ս. Ղազարու), երես 17. "Բատավարդ, որ է Վայրի Երինճանին տակն„: Թէ ինչ է Բատավարդ = Հողմավարդ՝ ըսի ի Համարն ԿԳ.:

Հուռվարդ բառի հետ ջնջելի է եւ Թ. 271. "*Բազաւորդ?* Մանր Երնջակի տակ է, կու գրէ բառգիրք մի եւ ի լտ. Baccaris, որ ըստ առասպելաց նուիրեալ էր Բաքոս դից„: Ուղիղ ընթերցուածն Բատավարդ է զոր յիշեցի (տես Բատավարդ ի Հայբուսակն, Թ. 313):

Նոյնպէս Թ. 685. "*Ման* Երնջան. Գաղիենոսի. բառից մէջ գրուած կայ *Ման* Երընջնի տակ, որոյ համանիշ յունարէնն անորոշ բառ մ'է, *Բաղաւորդ?* կամ *Բազաւորդ*, եթէ յունարէն է, թերեւս Բատավարդ (տես Թիւ 313): Ի Լեհաստան գրուած բառարան մ'այլ գրէ, Երնջակի տակ՝ Baccharis [ի Թ. 271, Baccaris] ասոր արաբերէնն է Ջահրա, զոր տես„: Տեսանք որ երկու օրինակք Գաղիանոսի Մանր կը գրեն, եւ մին Մանդր. սխալ է ուրեմն *Ման* զոր գտած է այլուր Հ. Ալիշան, նա եւ ինքն կը գրէ ի Թ. 271, "Մանր Երնջակի տակ„:

**ՁԳ.** 1492. "*Հորի* կոտեմ, փ. Cresson de fontaine„:

— Հ. Ալիշան չ'ըսեր թէ ուր գտած է զայս։ Գաղիանոս Գ. է որ կը գրէ. «Հորի, կոտմանի հունդ»․ ըստ որում եւ Գաղ. Դ.՝ «Հորի, կոտման հունդ»․ յորմէ ստեղծեալ է վերոյիշեալն Հորի կոտեմ, գղ. Cresson de fontaine. բայց չէք Հորի կոտեմ. ուղիղն է՝ «Հորֆ. կոտման հունդ», Գաղ. Ա.։ — «Հորֆ, կոտիմն», թրգմ. Դեղոց։ Հորֆ է արաբերէն Հուրֆ = կոտեմ (պօղաձ), ինչպէս կը նշանակէ զայդ եւ Հայբուսակի թ. 1490. «կոտեմ, կոտիմն, Հուրֆ կամ Հորֆ» (արաբերէն), եւ ի թ. 1650։

Դիտողութիւն։ — Հ. Ալիշան կը գրէ ի թ. 44, թէ զԱկրկարհա = գղ. Pyrèthre «Հին Բժշկարանն [ասելի էր՝ թրգմ. Դեղոց] համարի Կոտեմ»։

Տես 1740 թուոյ, ի բառն Հորբ = կոտեմ. «Բառգիրք մի [ասելի էր՝ թրգմ. Դեղոց] գրէ». «Հորֆ՝ Հալեւորկի հունդ»։

Ի թ. 565, ի բառն Դարշիշան. «Գալիենոսի կամ Բժշկական բառից Հաւաքման մի մէջ [ճշդագոյն՝ թրգմ. Դեղոց] գրուի. «Դարէշնէշան՝ Ասկալոյոս»․ թուի Ասպալաթոսի [լտ. Aspalathus] հետ շփոթելով. Ասկալոնիա նշանակէ Ասկաղոնի Սխտոր. իսկ Ասկալէ, Ascalea է տեսակ մի վայրի կանգառի կամ Ականի, Carduus natans [ուղ. nutans], փ. Chardon penché»։

Ի թ. 595. «Դոնո? Մշկի ծաղիկ, որ է Սող», այսպէս գրուի ի բառս Գալիենոսի [ասելի էր՝ թրգմ. Դեղոց]։ Տես Դոնո? եւ ի թ. 2129։

Ի Թ. 934. «Լօշտակն? Վայրի Ստեպ-ղինի հումատ է, կ'ըսէ հին հաւաքում մի բա-ռից [իմա՝ Թրգմ. Դեղոց]„:

Ի Թ. 1160. «Խնկորոտ վայրէ... Հին բառա-գիրք մի [ասելի էր՝ Թրգմ. Դեղոց] այսօր հա-մանիշ գրէ Դաղձի կամ Ծոթրինի ցեղէն բոյս մի, զոր ասորի բառով Պէյթար եւ Ամիր-տոլվաթ կոչեն Մուշկտամշիր„:

Ի Թ. 2078, երես 440. «Վայրէ Մխնուխ այլ կիշուկ, զոր Գալիենու բառք [ասելի էր՝ Թրգմ. Դեղոց] զուգեն Նարգէզի„: Եւ դար-ձեալ ի Թ. 2177 [տպ. 1177], «Նարգեան. Անշուշտ Նարգիսի ցեղէն նշանակել ուզէ գրողն, եթէ սոյն գրեր է, հին Բառագրոց [ասելի էր՝ Թրգմ. Դեղոց] մէջ, եւ Վայրէ Մխնուխէ կ'ըսէ„:

Ո՞ւր Մխնուխ (գղ. Scille) եւ ո՞ւր Նարգէզ (գղ. Narcisse)՝ լաւ եւս Նարդեան (գղ. Asaret, Cabaret, Nard sauvage): Այսպիսի շփոթու-թիւնք որ յառաջ եկած են զ«Թարգմանութիւնն Դեղոց„ ընդօրինակող գրչին մէկ բառէ վրայէն ցատկելուն, եւ զաղբիւր շփոթութեանցն ոչ Հ. Ալիշան գտած է, եւ ոչ յառաջ քան զնա Նոր Հայկազեանն՝ որ խառն ի խուռն կը նշա-նակէ զհոմանիշս 10է աւելի բուսոց:

Աւասիկ Թարգմանութեան Դեղոց գրածն՝ ճիշդ որպէս է ի Ձեռագրին. «Լաբլաբ, Բառեր [իմա՝ Բաղեղն, արաբ. Լէպլապ]: Կամիէլ, Կուա-բանջար [որ ի Բժշկ. Ջ, 331, գրեալ է «Ղամ-բիլ, որ է կռաբանճարն].

1. Ասկալոնոս, Դարիշնիշան [աստի կը սկսի խառնակութիւնն, զոր դիւրութեան համար թուանշանօք կ՚որոշեմ]։

2. Նարգեան, Վայրի Մկնասոխ։

3.—4. Խուռ եւ փոնդջ, կաղմ, որ է օդսալիս, եւ Փալանիա, Վայրի Գաղձն։

5. Կնբիլ, Փեննայի տակ։

6. Թամհերուն, Տարշկոկ։

7. Մարվ, Ամբրաւ սեւ։

8. Հորփ, Հալեւորկի հունդ։

9. Ակրկահրա, Կոտիմ։

10. Բաղըլաղ, Հարմալ, Բողկի տակ։

11. Սկորոդիոն, Սպանդի հունդ։

12. Մուշկարամշեր, Վայրի Խստորուկ։

13. Դոկո, Մշկի ծաղիկ որ է Սօդ։

14. Լուկուան. Վայրի Ստեփղնի հունդ. Փրասիոն. Մեղրածծուկ [այս ուղիղ է]։

15. Ալարտիմիսա, Սպիտակ կնդրուկ, Ադխար, Վաղմեռուկ [այս եւս ուղիղ է, ինչպէս եւ միւս Բուսոց անուանք որ կը յաջորդեն ի Ձեռագրին]։

Խառնակութիւնն, ինչպէս նշանակեցի, կը սկսի ի բառիցն ‘‘Ասկալոնոս, Դարիշնիշան,,։ Ձեռագրին գաղափարողն զանց առնելով զհոմանիշ բառս Դարիշնիշանի՝ սխալմամբ զուգած է զայն ընդ Ասկալոնոս, մինչդեռ գրելի էր ‘‘Ասկալոնոս, Վայրի Մկնասոխ,,. որով եւ հետագայ 2—15 Բուսոց անուանք այլ ընդ այլոյ նշանակութիւնս առած են, 2դին նշանակութիւնն անցնելով յ3դ. 3դին խառնուելով ի 4դ. 4դին

անցնելով ի 5դ, եւ այսպէս հետզհետէ։ կարգաւորեմ զանկարգութիւնդ, ուղղելով զբազմապատիկ վրիպակս Ձեռագրին.

1. Ասկաղոնոս, Վայրի Մկնասոխ [Ասքալոնոս է արաբ. Իսքալ, Իսքըլ, Իսքիլ, Մկնասոխ, Սոխ վայրի (պօղած.) առեալ ի յունէն Σχίλλα, գղ. Scille, ou Oignon marin. կայ եւ ի Բժշկ. Ա, 143. "Ասկալի ակրաս [= յն. Σχίλλα ἀγρία]. Մըկընսոխն,,, զոր տես ի Հայբուսակ, թ. 2078]։

2. Նարդեան, կազմորէ ["Նարդ, որ է կազմուրէ,,. Բժշկ. Ա, 145. տես եւ ի Հայբուսակն, թ. 1239, 2139։ կազմորէ կամ կազմուրէ՝ կ՚ըսուի ի մեր լեզուի եւ Մրսանդակ, Վայրենի Նարդին, գղ. Asaret, Cabaret, Nard sauvage տես Asaret յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս։ Հայբուսակ չունի եւ ոչ զմի ի գաղղիերէն անուանցդ։]

3. Խուր եւ փոդնջ [= արաբ. Ֆուտնէճ, պրս. փուտնէ[1]]. Վայրի Դաղձն ["փօտինէճ, որ է խոռն (խուռ, ըստ Թրգմ. Գեղոց). եւ ինքն Վայրի Դաղձն է,,, Բժշկ. Ա, 143։ — "Խոռն, Վայրի Դաղձն,,. անդ, 144։ — "Գետնի ըռահան, որ է Դաղձն, որ է Ֆուտանաճ[2], Ամրտ.։ Այս բոյս է գղ. Pouliot (տես Հայկ. Բառաքնն. երես 98), զոր Աւգեր եւ Էմին կը կոչեն Թուրքերէն փուտնէճ, ֆիլիսկէն[3]։ Արաբ. կ՚ըսուի եւս Հապաք (Հայկ. Բառաքնն. երեսք 97—98. Կելսիոս, Հ. Ա, 422, տես եւ Հայբուսակ, թ. 1674]։

4. Օղսալիք եւ փափանիա, փեննայի տակ

["Ու-տ-ըս-սալիպ, փեննա". Գաղ. Դ։ — Պարսկերէն "Ֆաւանիէյա, է խոտ իմն որ կոչի Թուրքերէն Այու-գուլաղի, եւ արաբ. Ու՚տ էս-սալիպ" (= փայտ խաչի, յորմէ խաչափայտ, մի յանուանց փեննուէնայի կամ փեննայի ի մեր Բժշկարանս, գղ. Pivoine) եւ այլն. Գէորգ]։

5. Կնբիլ, Տարշկոկ [Տարխշկոն նոյն է ընդ Տարխշղուխ, Հայեքուոսք, Թ. 635, 637. Տարխշղուղ, Թ. 903 (տպ. սխալ՝ Տարխշղուշ), 1863, 2941. Տարխշկուն, Թ. 637, 2941. այս ինքն՝ արաբ. *Farachaqoūq*, գղ. Pissenlit ou Chicorée sauvage. տես Taraxacum[4] ի M. Devic. ի սմին Թրգմ. Դեղոց գրեալ է այլուր. "Տախշխշկոն (ընթերցիր Տարխշկոն). Եղէգն". այս ինքն՝ Եղէգ'ն, Եղէգ = Եղերդ = Դառնիճ, գղ. Chicorée sauvage. տես ի Համար ԾԵ]։

6. Թամր Հերուն, Ամբրաւ սեւ ["Թամր Հերոն, Սեւ Ամբրաւ", Գաղ. Ա։ — "Թամր Հերուն, Սեւ Ամպրաւ", Գաղ. Գ։ — "Թամր Հերոն, Սեաւ Ամբրաւ", Գաղ. Դ։ Արաբերէն Թէմր է Արմաւ. իսկ Հերուն Թուրք թէ է Հարուն, այս ինքն Ահարոն. քանզի Հ. Ալիշան կը յիշէ ի Թ. 3290, "Արմաւ Ահարունի. ինչ տեսակ Արմաւ է, բացատրուած չէ, կամ ինձ անյայտ"]։

7. Մարվ, Հալեւորկի հունդ ["Մարվ, Հալեւորկի հունդ", Գաղ. Ա եւ Դ։ — "Մրվոր, Հալվորուկ", Բժշկ. Ա, 144։ — Պղը մարու, Ալվորկի ունտ", անդ, 145։ — "Ալիվորիկ, որ է Մարվն, յիշած է յիր համարն կամօքն Աստուծոյ", Ամիր. Անգ. անպ., երես 20։ Ալէ-ուրէ-ւկ

կամ Ալէ–որ–է (որոց ռամկականքն են Ալվօրէք, Հալէ–որ–է, Հալու–որ–է, Ալվօր–է), կ'ըսուի առ մեզ եւ Ծէր–ց Դ–ղՅն (Հայբ–––է, Թ. 2030), Ալէ–որ–ց (ռամկ. Հալու–որ–ց) Ռէհ–ն (Հայբ–––է, Թ. 1599), թարգմանութիւն արաբականին Հա-դ–ք է–ղ շէ–յ–խ (= Դաղձն Ծերոց), եւ է գղ. Marum, Germandrée maritime, Herbe aux chats. Իսկ Մ–րզէ պրս. "Մէրզ. խոտ ինչ անուշահոտ,, ըստ Գէորգայ։

Մ–րզ եւ Ալէ–որէ–է բառից համար Հ. Ալիշանի գրածն շատ հեռի է ի ճշգրտութենէ։ — Ի Թ. 614 զՄ–րզ կը նոյնացնէ ընդ լտ. Malva, եւ Մոլոշ կը համարի։ — Ի Թ. 129 կ'ըսէ "Հալուորիկ կամ Մոլոշ,,։ — Ի Թ. 2099, թէ "Մոլոշ,,՝ կը կոչուի եւ "Հալուորիկ,,։ — Ի Թ. 1599՝ "Հալուորաց Ռեհան, Հալուորիկ, Մոլոշի տեսակ մի է անուշահոտ, ծիրանեգոյն կամ սպիտակ ծաղկներով։ Առանձինն յիշուի եւ Հալուորկի հունտն, արաբ. Պզըր ըլ-Մ–րզ,,։ — Ի Թ. 2030, "Մարս? ...ոմանք ի թուրքացն այս խոտիս Ծէր–ց Դ–ղՅ կ'ասեն...,, Ամասիացւոյն յիշածն հետաքննելի է,,։ — Ի Թ. 2144. "Մրվոր, տես Տլորուկ,, [sic]։ — Եւ վերջապէս ի Թ. 2959։ "Տլվորուկ [փոխանակ կարդալոյ Ալվօր–է]։ Այս թէ ոչ վիպասանական՝ այլ ազգային ռամկական բառ մ'է, որոյ զուգանիշ գրէ Ամիրտ. զՄըզվըր, բայց երկուքն այլ մեզ անծանօթ, եթէ եւ՛քինս չէ թուրքերէն Մէ–րզէր, որ է Թանթրուենին։ Մեր մօտ ազգային եւ տեղական անուն այլ լսուի Տլուորիկ։,, Ջխտոն

Marum կը նշանակէ Հ. Ալիշան ի թ. 68, եւ կ'ըսէ, "Թուփ Հատտախտ", եւ ի թ. 2024 կը կոչէ զայն Մարմախուր, Մարմահան, Մարմահուլ, Մարմահուղ, Մարմայուղ, Մարմարուղ, որ է արաբ. Մէրմահուղ. տես Marum = Հալեւորեկ յէջմին: իսկ թ. 3271, Ալէուրէհ (խաղող), եւ թ. 1600, Հալըուրէհ (Եղակ), ոչ ինչ գործ ունին ընդ Ալէուրէհ կամ Ալէուրուհ = Marum:

8. Հորփ, կոտիմն [արդէն ըսի թէ Հորփէ արաբ. Հուրֆ = կոտիմն]:

9. Ակրկարհա, Բողի տակ ["Ակիկահրա, Բողկի տակ", Գաղ. Բ.: — "Ակիրկարհա, Բողկի տակ", Գաղ. Գ.: — Լաւագոյն "Ակի[ր]կարհայ, Բողի [եւ ո՛չ Բողկի] տակ", Գաղ. Ա. եւ Դ.: — "Ախրկարհա, Իգաբողի տակ", Բժշկ. Ա, 143: — Պարսկերէն "Կէրէհէնահան. է սա իմն ի դեղորէից որ կոչի [արաբերէն] Աքըրքարհա, թուրքերէն Խադուքըրհա", Գէորգ: Այս բոյս է գղ. Pyrèthre, տես ի Հայբուսակն թ. 44, Ակըռկարհա, եւ թ. 365, Բողոյ տակ]: || Զգրութիւնն "Բողկի տակ" ուղղած եմ "Բողի տակ": Բայց կարելի է թէ Բող, յորմէ Իգաբող, ըսուած է նաեւ Բողին, եւ ըստ այսմ Իգաբողին, որոց սեռական է Բողնի, Իգաբողնի: Տես Բողին ի թ. 368 Հայբուսակի, եւ Բողնին ի թ. 357: Այժմ լաւագոյն է ըսել Բող, բողի, Իգաբող, իգաբողի, որպէս զի Բողիկ, Բողնի, Իգաբողիկ, իգաբողնի գրելով՝ չշփոթի ընդ Բողկ, Բողկի, որ է գղ. Raifort: ||

10. Բազր ալ հարմալ: Սպանդի հունդ

[յարաբական բառիցն Պեղը, Ռէնդ, եւ Հարմէլ՝ զոր մեք կը կոչենք Սպանդ, որ է պրս. "Իսֆէնտ, Սպանտ [թուրքերէն] Իւզէրլէ, եւ արաբերէն Հարմէլ„, գէորգ: Տես Հայբուսակ թ. 2815, Սպանդ, ուր գղ. կը դրուի Pégane. մինչդեռ բուն բառն է Moly, յն. *Μῶλυ*, զոր յիշած է Հոմեր յՈդիսականին (տես Moly յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս), գղ. կ'ըսուի եւ Harmale, տես զայս ի Լիտրէի Suppl. եւ ի M. Devic: Ամիրտովլաթ կ'ըսէ (Հայբուսակ, անդ): "Այն ցեղն որ կարմիր է՝ Հարմալն արապի ասեն, եւ Հոռոմն Մոլի ասէ„, որ է Moly]:

11. Սկորոդիոն, Վայրի խստորուկ[5] ["Սկորդոն, խստոր„, Գաղ. Ա: — "Սկորդոն, Սխտոր„, Գաղ. Բ.: — "Սկոռտոն, Սխտոր„, Բժշկ. Ա, 145: Յն. *Σκόροδον*, գղ. Ail, խստոր]:

12. Մուշկա[տա]րամշեր, Մշկի ծաղիկ, որ է Սօդ [ասա եւս խառնակութիւն կը տեսնուի Մուշկ եւ Մշկի բառից նոյնաձայնութեան պատճառաւ: Ձիարդ եւ է՝ առաջինն է գղ. Dictame, զոր տես ի Հայբուսակ, թ. 994, 1160, 2127: Երկրորդն. "Մշկի ծաղիկ, որ է Սօդ„, է պրս. "Մէշքէ. Անուշահոտ արմատ խոտոյ իրիք, զոր բժիշկք ի գործ ածեն ի դեղորայս, արաբ. Սէադ [= Սօդ], եւ թուրք. Դօֆալուք [կամ Թօֆալուք]„, գէորգ: "Սօդ, կիպերոսի տակն„, կը գրէ եւ Բժշկ. Ա, 145: կիպերոս է յն. *Κύπειρος* կամ *Κύπειρον*, գղ. Souchet: Տես Մշկի ծաղիկ եւ ի թիւս 938 եւ 2129 Հայբուսակի, եւ Մշկի ծաղկի տակ թ. 1407]:

13. Դուկո, Վայրի Սոեփղնի հունդ [“Դու-կու, Վայրի Սոեպղնի ունտ”, Բժշկ. Ա, 143: — “Դաւկոս, Սոեփեղին վայրի”, Գաղ. Ա, Գ, Դ. երեք օրինակք եւս՝ Դաւփոս, որ է սխալ: — “Դաւկոս, Սոեփեղին”, Գաղ. Բ: “Դաուքուսէ յն. Δαῦχος, Athamante de Grète, plante ombellifère (Alex): — Լտ. Daucus; Plin. Dauco, sorta d'erba a similitudine del finocchio [= գղ. Fenouil, Հռոմ Սամիթ], ma con foglie più bianche, minori e pelose (Pasini): — Լտ. Daucus, արաբ. Շէքաքուլ, Գէզէրէ պէրրի [= Սոեպղին վայրի] (Meninski, Onomastikon): — Իտ. Dauco, Վայրի գազար, Շէքաքուլ, Քէզէրէ պէրրի (Ջախջ. Իտ.-Հայ.): Տես ի Հայբուսակն, թ. 601, Դաուքու = Վայրի Սոեպղին, եւ թ. 2986, Տաուքու = Լեռան Սոեպղին: Տես անդ եւ Շաքաքուլ, թ. 2784, եւ Daucus. թ. 2987: Տես եւ ի M. Devic զբառն Secacul]:

14. Լուկուան, Սպիտակ կնդրուկ [“Լո-կուան, Սպիտակ խունկ”, Գաղ. Գ. (չունին զայս Գաղ. Ա, Բ, Դ): Այլուր կը գրուի ի թրգմ. Դեղոց. “Լաբան. Սպիտակ խունկ”. որով թերեւս Լուկուան՝ ուղղելի է Լուպան, արաբերէն Louban = գղ. Encens: Տես Benjoin ի M. Devic: Տես եւ Լուպան ի Հայբուսակն, թ. 2062]:

15. Ալարտիմիսա... [սորա եւս հոմանիշն կամ մեկնութիւնն թերի թուի ի Ձեռագրին, քանզի սկսեալ ի յաջորդէն “Ադխար, Վաղմե-ռուկ”, խառնակութիւնն կը դադրի]:

Ծ—նօդ—բէ—ն·

1. Այս է զոր Ամիրտովլաթ կը գրէ Պ——տէն—, իսկ Հայբ——ալն ի թ. 545, Պ——տէն—? «Գաղձ, որ Արաբն Ֆ——դ—ն—ճ, եւ Պարսիկն Պ——տէն—? ասէ»: Տես անդ Պ——տէն— եւ թ. 2592: — Գէորգ կը գրէ. «Փ——տէնէ, Գաղձ, այսինքն Վայրի Անանուխ. Թուրքերէն Ե—րփ——զ, եւ արաբերէն Ն—'ն—է պէրրէ [= Անանուխ վայրի]»: Սխալ է ի Հայբ——ալն, թ. 581. «Ֆ——դ—ն—ճ... որ է Խ—րփ——զ» կարդա Ե—րփ——զ: Եւ ի թիւն 2245, «Աքքիրման [թերեւս լոկ՝ Քիրման] Ե—րփ——զի?» ջնջէ զհարցական նշանդ:

2. Ամիրտովլաթ Գաղձ կը կոչէ զՖ——դ—ն—ճ եւ ի թ. 545 Հայբ——ալէ. նոյնպէս եւ Հ. Ալիշան ի թ. 284. «Ֆ——դ—ն—ճ (Գաղձն)»: Բայց այլուր ի Հայբ——ալէն Ֆ——դ—ն—ճ սխալ կը թարգմանուի Ծոթրին. տես թիւք 581, 994, 2127, 3268. սխալ է եւ ի թիւն 1160, «Գաղձ կամ Ծոթրին»:

3. Այս է զոր Ամիրտովլաթ Ֆլ——յ—ն կը կոչէ իբր Հռոմ բառիւ ի թիւն 3034, եւ Հ. Ալիշան կը համարի յն. Φιλόσυχος [տպ. Φιλόσχον]՝ որ «պարզապէս թզասէր կամ թզակեր նշանակէ»: Թերեւս Թուրքերէնն Ֆէլէ—յէ—ն աղաւաղութիւն է յունականին Γλήχων, որ է արդարեւ լտ. Pulegium, գղ. Pouliot. տես յAlex. տես եւ ի Կելսիոս, Հ. Ա, 422: Օդուլլուխեան, 70, կը գրէ. «լտ. Pulegium. Թուրքերէն Ֆէլէ—յէ—ն. Հայերէն Բինեկուհի»· զարմանալի բառ իգական ձեւով:

4. Հ. Ալիշան կը գրէ ի թ. 1536. «Taraxacum յունարէնէ առնուած նշանակէ խաղաղցրնող»: Զայս ստուգաբանութիւն հնարած է արաբական լեզուի անտեղեակ ոմն. Taraxacum ոչ է ի յոյն լեզուէ, կ'ըսէ M. Devic, այլ նոյն իսկ արաբ. Թ—ր—շ—ք——ն բառն է:

5. Կը գրէ Հ. Ալիշան ի Թ. 1158. «Խոտորուշ կամ Խոտորուշ. Գալիենոսի բառից մէջ սա նշանակէ թէ ելեփանդական բուսած ախտն կամ բորոտութիւնը, եւ թէ անոր դեղ համարուած բոյս մի, Elephantodon, որ հիմա կոչուի Dioscorea bulbifera, վասն զի արմատն սոխ կամ կոճղէղ մ'ունի, ուտելի. տերեւներն այլ ջերմահալած համարուին»: Եւ Նոր Հայկզ. «Խոտորուշ, կամ Խըտտորուշ, կամ Խոտտորուշ, գ. յն. Ἐλεφαντίασις, Elephantiasis: Խիստ եւ կոշտ կեղ, բորոտութիւն, որպէս յն. եղեփանդական (այսինքն փղական) բորոտութիւն, Գաղիանոս»: Ես կարծեմ թէ այլ է Եղէֆանդական Բորոտութիւնն՝ զոր կը յիշէ Մ. Խորենացի (Պատմ. Հայոց, Բ, ԶԳ. երես 350, տպ. Ս. Ղազարու 1881), գղ. Éléphantiasis, եւ այլ «Եղէֆանդրէշ, Խստորուկ», որ կը գտնուի ի Գաղ. Ա., Գ., Դ., եւ զոր Գաղ. Բ. կը գրէ Խոտորուշ: Եղէֆանդրէշ՝ թուի ինձ աղաւաղութիւն յունականին Ἐλαφοσκόροδον, Sorte d'ail sauvage, Ազգ Վայրի Խստորոյ, Խստորուկ, որ եւ կը նոյնանայ ընդ «Վայրի Խստորուկ» թարգմանութեանն Դեղոց (Հայբուսակ, Թ. 1160, ուր բոլորովին սխալ է «Գաղձի կամ Ծոթրինի ցեղէն բոյս մի» համարելն:

**ԶԵ.** 3358. «Ղենջակի տակ?» եւ այլն: = կա՛մ է Եղնջակէտակ = Աղձկտատ, կա՛մ Եղընջակէ տակ, տես ի համարն Կ:

**ԶԶ.** 1828. «Ղուրասնար? Ո՞ւր եւ յորմէ գրուած է, չեմ յիշեր, բայց զուգած է թուրքերէն Իպրահիմ Թիքէնի, լտ. Eryngium campestre, փ. Panicaut champêtre կամ Chardon Roland [տպ. Rolande], Barbe de Chèvre: Տես Եղնջակ»:

= Չէք Ղուրտանուր բառ, այլ Ղուրտանութ = Իպրէհիմ Թիքէնի = Երնջակ (Թ. 683), կամ Ղըրտան (Թ. 1243), որ է արաբ. Գըրտաննէ կամ Գըրտանէթ (պօղած), որ եւ կ'ըսուի Շէվքէթ Իպրահիմ = Spina Abrahami, այսինքն լտ. Eryngium (Կելսիոս, Հ. Բ, 167)։ Տես եւ զՀամարն ԾԹ։ — Alex. կը գրէ նոյնպէս Chardon roland հանդէպ յն. *Ηρύγγιον* եւ *Ηρυγγίς* բառից, այլ Լիտրէ կ'ըսէ ի բառն Panicaut, "Chardon roulant ou, par corruption, Chardon Roland"։

**ՁԷ.** 1852. "*Ճանկի տեղ?* Նոր բժշկարան մի պատուիրէ դալկան դեղ տալ զայս՝ Ծորի հետ եփելով"։

= Սխալագիր բժշկարանդ անշուշտ ուզած է գրել Ճանկենդեղ, փոխանակ Ճակնդեղ = գղ. Betterave (Հայբուսակ, Թ. 1838, ուր կը յիշուի այլ աղաւաղ գրութիւն մի Ճանկնդեղ)։

**ՁԸ.** 1886. "*Ճճիման, ճջեման.* բժշկարան մի գրէ դեղ գլխոյ եւ մօրուաց. "Ա՛ռ ի խոտիս (Աւելկի տակի) ջրէն եւ ճջեման ջուրն, եւ օծէ զգլուխն"։ — Բառգիրք մ'այլ գրէ. "Ակիդաս? *ճրճիման*"։ Ուշքեանն՝ ջղաց դեղ խոտ մի է կ'ըսէ, եւ լտ. Poterium. սա Հայերէն երեսնակ կոչուածն է, ինչպէս յիշուած է ի կարգին"։ Տես զոր ինչ գրեցի ի Համարն ԿԱ, ծան. 1։ — 2655. "*Ջրիման* ջուր։ Ոչ ինչ ըլլալն յայտնի է եւ ոչ ուղղական բառն, միթէ *Ջրեմն*. յիշէ նորեկ Բժշկարան մի, հերաթա-

փութեան դեղ գրելով, խառնել այսօր ջուրը Լօշտակի ջրոյ հետ,,։

= Ճշեման ջուր եւ Ջրման ջուր խանգարեալ բառից ուղիղ ձեւն է Ճղճման ջուր, այս ինքն ջուր ճղճմ խոտոյ, որ կ'բուսի եւ ճիլ։ Տես Ճղճման ջուր ի թ. 1883, ճղեմն. "Բժշկարան մի մազթափութեան դեղ գրէ "Դալար Ճղճման ջուր,,. զոր ուրիշ Բժշկարան մի Ջղերման գրած է,,, ինչպէս եւ այլ երկու սխալագիր Բժշկարանք՝ Ճշեման, Ջրման։ Այլուր փոխանակ Ճղճման ջուր՝ բսուած է ճլի ջուր, այս ինքն ճիլ խոտոյ ջուր, որ նոյն է ընդ ճղճմ. "Խոտ մի կայ՝ կուգել ասեն, այնոր ջուրն յիրար խառնէ Լօշտակի եւ ճլի ջրոց հետ, դեղ մազի եւ մօրուաց՝ որ չթափին,,. Հայբուսակ, թ. 1515։

Նկեսցուք ի ճճիման անգոյ բառն. Գաղիանոս Գ. կը գրէ. "Ակիդաս, ճըճիման,,։ — Գաղ. Ա՝ "Ակիդաս. ճճի ման,,, իսկ Գաղ. Գ՝ "Ակիդաս. ճիճի մանր,,, որ է ճճի մանր։ Ակիդաս՝ թուի յն. Ακανθίας, Espèce de cigale, insecte, Ազգ. Ճպուռն։

**ՃԹ.** 1922. "Մաւձապ. Խորենացւոյ Աշխարհագրութեան օրինակաց ոմանց մէջ յիշուի իբր ծաղիկ, Յերջանկին Արաբիա,,։ — 1943. "Մաղազ? Թոյս մի կարծուի ըստ Աշխարհագրութեան Խորենացւոյ. այլ ոսպխութիւնն անյայտ,,։

= ՅԱշխարհագրութեան Խորենացւոյ, 612 (տպ. Ս. Ղազարու 1865), գրեալ է. "Եւղք անոյշք ի նմա [Յերջանկին Արաբիա] եւ

ծաղիկք՝ վեշտասան. Հալէ, Ջափու, Մահլապ [եւ ոչ Մաջալ],, եւ այլն: Իսկ ի տպագրին 1881, երես 39. "Անոյշ եղք խառնուածոյք որ լերին անգ. Խաղամի [Թերեւս՝ Խաղա մի, այս ինքն՝ առաջին՝ Խաղա]..., Ջաբրիկ..., Մահլապ,,. որ ի գղ. թարգմանութեանն, երես 52, դրուած է Mahlab. Տես Մահլապ բառի համար յայտնուած կարծիքն եւ ի Հանդէս Ամսօրեայ 1893, երես 263ը:

**Դ.** 685. ՙՄան Երնջան,, եւ այլն: = Տես զստոյգն ի համարն ՁԳ:

**ԴԱ.** 2027. "Մարնատան? Սխալ գրած կ'երեւի բժշկարան մեր, թէ Հայք այսպէս կ'ըսեն Մանրագորին,,:

= Ուղիղն է Մարձատուն, զոր տես ի թ. 2026, 950, մի յանուանց Լօշտակի. որ եւ Մարդախոտ, թարգմանութիւն պարսկականին Մէրտում-կիյահ (Մէրտում = Մարդ, կիյահ = խոտ), — Մարդածաղիկ, թարգմանութիւն յունականին Ἀνδρόσανθος[1] (Ἀνήρ, սեռական ἀνδρός = Այր, Մարդ, Ἄνθος = Ծաղիկ). այս է որ ի Բժշկարանի գրեալ է խանգարմամբ Անտրոսանդոս, զորմէ կ'ըսէ Հ. Ալիշան ի թ. 950, երես 225. "Չեմ կարծեր որ հիմայ այսպիսի անուն լսուի, բայց եթէ ստոյգ գրուած է՝ կրնար նշանակել Անմահն ծաղիկ. ուրիշ օրինակ մի աւելի օտար կամ այլայլեալ գրէ Մղմոստան-Բոս?"

Կան ի սմին թ. 950, երես 225, եւ այլ ուղղելիք. "Արապք Գորմաբ ըլ-պաղա կոչեն [զՄարդածաղիկն],,. ոչ պաղա, այլ Ղաջա,

այս ինքն Սպիտակ, ինչպէս կը գրուի ի թ. 3260, Քարմ-ի ըլ-պայդա: Գէորգ կ՚ըսէ. "Սէֆէյտթաք [= Սպիտակ Որթ][2], է ծառ իմն՝ որ ունի զպտուղ կարմրերանգ որպէս զողկոյզ խաղողոյ, որով խաղախորդք, այսինքն Տէպպաղը զմորթս յօրինեալ կազմեն. արբ. Քէրմէթ էլ-պէյդա [= Որթ սպիտակ]. թուրք. Աք ասմա" [գղ. Vigne blanche, Bryone, Couleuvrée]. տես անդ Քէրմէթ էլ-պէյդա եւ ի բառն Խէրպաթրա:

"Վասն խոտին որ Լօշտակ ասեն ոմանք. յոյնն Ապիաստղի? կոչէ". ընթերցիր Ամպէլու լէւքէ, յն. Ἄμπελος λευκή [= Որթ սպիտակ], գղ. Brioine (կամ Bryone), vulgairement Vigne blanche.

"Լաւ եւ ստուգագոյն գրէ ուրիշ մէկն. "Այս Լօշտակիս նշանն այս է... Տերն զետ Ջմերկի լինի, պտուղն կարմիր եւ սեւ. խակն կանաչ ի վերայ սեկացն? գործի": Կիտադրելի է "խակն՝ կանաչ. ի վերայ սեկացն գործի". այս ինքն՝ երբ պտուղն խակ է՝ կանաչ է գոյնն[3]. իսկ "ի վերայ սեկացն գործի" կը պարզուի Գէորգայ բացատրութեամբ՝ թէ Սպիտակ Որթոյ (Սէֆէյտթաք) պտղովք "խաղախորդք զմորթս [= զսեկս] յօրինեալ կազմեն": Տես Սեկ եւ ի թ. 1325. "Սպունք ասեն, զոր գրոց կազմողքն ունին՝ որ զ-էյն թանան":

Յերես 223, ի նմին թ. 950, կը նշանակուի արաբերէն անուն Լօշտակի Սարաֆ ըլ-Ղաֆրալ, որ եւ ի թ. 1979 կը գրուի Սէրաֆ էլ-Ղաֆրալ: Փափագելի էր որ Հ. Ալիշան գնէր

ամենուրեք զստուգաբանութիւնս արաբերէն եւ պարսկերէն բառից։ Վերոյիշեալդ կը թարգմանուի ըստ D'Herbelotի, "Sirag al cothrob = Lucerna daemonum, quia noctu luceat„ (Կելսիոս, Հ. Ա. 10)։ Ըստ այսմ եւ Սարաճ [Սէրաճ] ըլ-Սուլէյմանէ, յերես 224 (տպ. 124), կը թարգմանուի Ճրագ Սողոմոնէ։

Ծանօթութիւնք.

1. Չիք Ἀνδροσανθος բառ յAlex. այլ նոյնին կազմութեամբ այլ բուսոյ անուն մի, Ἀνδρόσαιμον [= Մարդոյ արիւն], գղ. Androsème ou Toute-saine. կայ եւ Ἀνδροσάκες [= Մարդոյ դեղ, կամ դարման], գղ. Acétabulaire, zoophyte autrefois pris pour une plante. բայց Բժշկարանի բանին (Հայբուսակ, երեսք 224—225), "Դեղ մի կայ Մարդածաղիկ ասեն... Հելլենացիք զդորա անունն Անդրոսանթոս ասեն„, կը հաւանեցնէ զիս կարդալ Ἀνδροσανθος, որ թերեւս Ստորին յունարէնի մէջ գտնուի։

2. Կամ Սպիտակագոյն Տունկ, ըստ Բժշկարանի. որ եւ Սպիտակ Այգի. տես ի համարն ՃԻ։

3. Համեմատէ. "Պտուղն [Հունի] նման է Չիթապտղի. Եւ յորժամ խակ է՝ նա կանաչ է, եւ յորժամ հասնի՝ կարմիր լինի որպէս արիւն„. Հայբուսակ, Թ. 1715։

ՂԲ. 2030. "*Մարս?*„ եւ այլն։

= Ուղիղն է Մարըմ, Ալեւորեակ կամ Ալեւորուկ. գղ. Marum. տես ի համարն ՉԴ, Դէօք. Թիւ 7։

ՂԳ. 2106. "*Մոնի.* Մոշայ ծառն է ըստ Համշէնցւոց. ըստ այլոց՝ "տեսակ մի թեղի,

տերեւներն աւելի Ուռիի տերեւներու կը նմանին, ոլորուելով բարձրացած մեծ ծառ է„ (Արարատ, ԻԵ, 430)։ Ուրիշ մի թուրքերէն բադրէնճ աղաճի կոչէ„։

= Այդ բադրէնճ աղաճի կարծել կու տայ ինձ որ Մոնի նոյն է ընդ Մանէ՝ որ կը յիշուի ի Թ. 1971. քանզի ի Հաւաքման ուրեք գաւառական բառից (22 Ս. Ղազարու) գտած եմ. “Մանի բադրաէճ„։ Ուղղագոյն թուի Մանէ, որ կայ գրեալ եւ ի Համառօտ բանին վերնագրելոյ “Յաղագս ծառոց„ (տես ի Համարն ՀԹ, ծան. 2). “Ընձնին, Դղքին, Մանէն, Հացին, կեչին, եւ Խածին„ (Հացէ եւ Խածէ առանձին առանձին յիշուելով՝ չեմ կարծեր որ Խածի “խանգարեալ հնչմամբ Հացի ծառն„ ըլլայ, ինչպէս կը համարի Հ. Ալիշան, Թ. 972)։ Ի Հանդէս Ամսօրեայ 1895, երես 185ա, նոյնպէս կը գրուի. “Մոնի, Սարէն աղաճը„։

**ՂԴ.** 2177 [տպ. 1177]. “Նարգեան = վայրի Մկնսոխ„ եւ այլն։

= Ուղիղն է Նարդէան, գղ. Asaret, եւ այլն. տես ի Համարն ՁԴ, Դէտ. Թիւ 2։

**ՂԵ.** 3372. “Նարնջխոտ. կամարկապցին գրէ Նարընճխատ. “եւ այս խոտն, կ՚ըսէ, լեռներն կու բուսանի, հերն՝ որպէս Խորոտի ծաղկէն դեղին է, եւ մօտ ու տակն որպէս երկուորն կախ է ճղերումն ... ա՛ռ ծաղկումն, քօքումն, ճղերումն, եւ եփէ ջրով, խմէ այգուց (կինն)„։ — “Նանէճ, կամարկապցին Նաէնճ գրէ, նոյնպէս եւ բացատրութիւնը խառնակ կամ սխալ է. “Այս

խոտն լեռներն կու բուսնի, Հերն որպէս Մորուտի (Թուփ Հօրօտն), ծաղիկն դեղին է„, յիշէ եւ զտակն եւ զճղերն։ Ուրիշ Բժշկարան մի գրէ. “Հերն որպէս Սխտորէ է. ծաղիկն դեղին, եւ մօտ ի տակն որպէս երկուորիք կախ են„։ Ի Նորոց այլ վկայուած է որ բանջարեղէն է, եւ քանի որ թարմ է՝ եղով կամ կաթով եփուած՝ ուտուի„։

— Չիք Նարնջխոտ բառ, ուղիղն է Նուռընճ կամ Նուռինճ խոտ։ Չգիտեմ թէ սա նո՞յն է ընդ Նուռնիճ խոտոյ՝ որ ցարդ կը լսուի ի գաւառս ինչ Հայոց, եւ զորմէ կ՚ըսէ Հաւաքող ոմն գաւառական բառից (22 Ս. Ղազարու)։ “Նուռնիճ. խոտ մի է, զոր ժողովեալ գիւղականացն ի մատաղ ժամանակին՝ իւղով կամ կաթամբ անուշեն եւ ուտեն„։ Թուի թէ կամարկապցոյն Նուռընճ կամ Նուռինճ է Orchidée բոյս մի (միտ դիր Երկուորիք բառին), եւ նոյն ընդ Մուշխ՝ որ կը գտնուի ի Բժշկարանն Ա (Հայբուսակ, Թ. 1983)։ “Մուշխ. կարեւոր բոյս մի պիտի ըլլայ, որովհետեւ պիտանի բանջարեղինաց կարգին յիշէ Հին Բժշկարանն, եւ կ՚ըսէ. Ի ջրային տեղ լինի, Հերն զէդ Սխտորէ[1] է, ծաղիկն դեղին, եւ մօտ ի տակն երկու կարեւորք [= Երկուորիք] են, զայս բանջարս տակովն եփէ եւ տուր առն եւ կնոջ ամլոց, եւ ծննդականք լինին, թէ այրն ամուլ թէ կինն„։ Միայն կամարկապցւոյ “լեռներն կու բուսանի„ եւ Ա. Բժշկարանի “ի ջրային տեղ լինի„ կը տարաձայնին, մնացեալ նկարագիրն ճշդիւ նոյն է յերկոսեան տեղիսդ, եւ թէ Նուռինճ թէ Մուշխ

իբրեւ ամլութեան տեղ կը նշանակուին։ կամարկապցւոյ վկայութիւնն ուղղելի է ըստ յաջորդին՝ համեմատ Ա. Բժշկարանի եւ միւս Բժըշկարանին որ կը յիշուի ի թ. 2234։ “Այս խոտն լեռներն կու բուսանի, հերն՝ որպէս Սխտորէ [ո՛չ Խոլրօտի կամ Խորուտի. Թերեւս՝ խստորի], ծաղիկն դեղին է, եւ մօտ ի տակն որպէս երկուորէք կախ է,, եւ այլն։ Հետեւաբար ջնջելի է եւ գրեալն ի Շալակին, երես 678—679, թ. 1133։ “Խոլրոտ, տես թ. 3372, ուր վկայուի դեղին ծաղիկ ունենալն,, եւ այլն, տեսանք որ ի թ. 3372 պէտք է կարդալ. “հերն՝ որպէս Սխտորէ, ծաղիկն դեղին է,, եւ այլն։

Այլ է ռամկօրէն Խօրօտ Մօրօտ (Հայբուսակ, թ. 1761), ըստ գրոց Հաւրուտ եւ Մաւրուտ[2]։ Ի նմին տեղւոջ Հայբուսակի կը յիշուին Արօտ եւ Մարօտ ի Պարսից առասպելաց։ Ես եւս վաղ նկատած էի զնմանութիւն “Հաւրուտ եւ Մաւրուտ,,ի ընդ “Հարութ վէ Մարութ,,, քանզի այսպէս կ'ուղղագրէ Գէորգ, եւ կ'ըսէ. “Են սոքա հռչակաւոր երկու Հրեշտակք առասպելեալք՝ զորս մերժեալ Աստուած ի կայից իւրեանց՝ կախեաց ասեն գլխիվայր ի մէջ հորոյ միոյ ի Բաբելոնի [որ կը կոչուի Զաւէ Պապէլ = Նոր Բաբելոնի, տես զայս եւս ի Գէորգ], վասն ուսանելոյ նոցա զկախարդութիւն, եւ որք կամին զկախարդութիւն, երթեալ ուսանին ի նոցանէ,,։ Հաւանական է որ Հաւրուտ եւ Մաւրուտ Հայոց հեթանոսութեան ժամանակի առասպելի մի հետ աղերս ունին։

Ծանօթութիւն.

1. Համեմատէ ընդ Թ. 1751. "Ծաղիկ մի կայ ծիրանի եւ կարմրագոյն է, ի մարգագետինն լինի, եւ ինքն նման է Հրակի ծաղկին, եւ տերեւն նորա որպէս Սխտորի է" եւ այլն:

2. Ագաթանգեղի "Հօրօտն եւ Մօրօտն" (Բ. տպ., Ս. Ղազարու, երես 480) ուղղելի է ըստ բնտիր Ձեռագրի՝ "Հաւրաւտն եւ Մաւրաւտն": Ճիշդ այսպէս եւ Մխ. Գոշ յԱռակսն, Լ, երես 36, "Հաւրաւտն եւ Մաւրաւտն":

**ՂԶ.** 2193. "Նզաձաղիկ, ըստ Գալիենոսի բառից նոյն է ընդ Բարձուենեկի":

= Գաղ. Գ՝ կը գրէ. "Արտեմեսին, Եղեւին կամ Նզաձաղիկ": Գաղ. Ա՝ "Արտեմեսին, Եղեւին կամ Գնտածաղէկ [sic]": Իսկ Գաղ. Դ՝ "Արտեմեսին, Եղեւին կամ Գնտածաղէկ": Այս Գնտածաղէկէ ուղիղն՝ նշանակեալ ի Հայբուսակին, Թ. 501, "Գալիենոսի բառարանն այլ գրէ. "Արտեմեսին (յն. 'Αρτεμισία [տպ. Άγτεμισία]), Եղեւին կամ Գնտածաղիկ": Նոյն բոյս է գղ. Armoise, իսկ Բարձուենեկ՝ յն. 'Αβρότονον, լտ. Abrotonum կամ Abrotonus (որ ի Հայբուսակին կը գրուի Abrotanum, Թ. 321 երկիցս, եւ ի Ցանկին), գղ. Aurone, Գնտածաղէկ բուսոյ Հնագոյն վկայութիւնն զոր ի Նախնեաց ունինք, կը գտնուի ի Դաւթի Ներգինացւոյ Վերլուծութեանն Պորփիւրի, երեսք 324—325, եւ զոր չի յիշեր Հ. Ալիշան. "Եթէ խառնի [ձէթ] ընդ վարդուն, փոփոխէ զջերմ ի ցուրտ, իսկ եթէ ընդ կոչեցելումն Գնտածաղէկ խառնեսցի, յայնժամ ի ջերմն փոխէ զցուրտն":

*Նզաձաղիկ անգոյ բոյսն կը գտնուի եւ ի բառագիրս Ռոշքեանի. “Նզաձաղիկ, Նշանաւոր խոտ, որպէս Օշինդր, Թփոտ [sic]՝ բայց զմեծագոյն եւ զթանձրագոյն տերեւս ունի, կրկին է*[1], *մին՝ լայնատերեւ, միւսն նեղատերեւ եւ բարակագոյն, ախտից կանանց է դեղ,* Artemisia,,: “*Արթէմիզիա, ըստ մեզ Նզաձաղիկ*,,, Բէստէն: “Artemisia, *Եղեւլին խոտ, Նզաձաղիկ*,,, Ճամճեան, Բոգ. խտ.:

Ծանօթութիւն.

1. Այսպէս են Բժշկ. Ա. “Գնդաձաղիկ, Երկուորեակ էն,,, կը յիշէ զայս Հ. Ալիշան ի Թ. 501, եւ կը յաւելու. “բայց չի բացատրեր զանազանութիւնը,,, զոր Ռոշքեան կը բացատրէ, թէպէտ եւ կը սխալի Նզաձաղիկ գրելով:

**Դէ.** 2194. “*Նզայտակ, ըստ Սեբաստացւոց Համեմային խոտ մ'է, եւ Թուրքերէն կոչուի* Եըլան ղավի,,:

= Ամիրտովլաթ Եըլան ղավի կը կոչէ զ'նուիկ [= գղ. Serpentaire commune, լտ. Arum dracunculus ըստ Լիննէի]. Թ. 2221. “*այնոր համար որ որձան*[1] *օձու խորիս կու նմանի*,,: Այս պատճառաւ թուի ինձ թէ եւ Նզայտակ՝ գրելի է Նըլ-կայ դակ ի կարգի Նունէն բանջարոյն որ ի Թ. 2221: Ամիրտովլաթ կ'ըսէ որ եթէ զՆուիկ բանջարոյ “դակն մեղրով օծես՝ օգտէ քալաֆին,,:

Ծանօթութիւն.

1. Ցիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս Որբեայ անուանած եմ զEtamine, բայց Ամիրտովլաթայ

Որձոյն՝ վեր ի վայր յիշատակեալ յԱնգէլոյ անդէոն՝ թուի գղ. Hampe, զոր այսպէս կը մեկնէ Գաղղ. Ակադեմիոյ Բառարանն. "Tige herbacée sans feuilles ni rameaux, et destinée seulement à porter la fleur et le fruit. La tige du pissenlit, de la jacinthe, est une hampe„: Համեմատէ զոր ինչ կ'ըսէ Ամիրտովլաթ զՆուոէկ [լտ. Arum dracunculus] բուսոյ, թէ "Որձան օձոխորխ է որ նմանէ„ ընդ հետեւեալ բանս Emm. Le Maoutի (Botanique, երես 376). "Les Dracunculus ont leur hampe tachetée de noir comme la peau d'un serpent„:

**ՂԸ.** 2196. "Ներգիւն, Ներգոյն, ըստ բառից Գալիենոսի է Լոտոս, լտ. Lotus: Տես Լուտաս„:

= Ուղիղն է Նէքգէւն: Տես ի համարն ՃԵ:

**ՂԹ.** 2215. "Նոպարենի, վայրի ծառ մի՝ որոյ յն. հոմանիշ գրուած է Եղատէ, այսինքն Ελάτη, Եղեւին, բուսաբանք Էլատինեան անուամբ (Elatineae) ազգ մի ջրային եւ ցամաքային [տպ. ցամաքացին] խոտեղինաց ճանչնան, տերեւնին եղեւնեայց տերեւոց նմանելուն համար: Բայց մեր հայերէն անուանն յատուկ ծառ մի գուշակէ, արժանի քննութեան եւ գիւտի„:

= Նոպարենի[1] անշուշտ սխալ գրութիւն է փիլոնի Լուծմանց մի Ձեռագրի, քանզի յայլում Ձեռագրի յն. Եղատ բառն, կամ թեբրեւս փիճի, մեկնեալ է Սնոպարենի: փիլոն կ'ըսէ ի Մեկնութեան Լինելութեան [= Ծննդոց] գրոց, Դ. ա. 240. "կաղնահարք [կոչին] եւ որք զե-

ղատս եւ զՄայրս եւ զՀամանմանս Հատանեն„. ուր յ2Դ ծանօթութեան ի մէջ կը բերէ Հ. Մկ. Աւգերեան զբանս Լուծմանց Փիլոնեայ. "Սովոր են մարդիկք՝ որ կամենան ի մայրին գնալ եւ փայտ կտրել, ասեն, թէ "ի կաղնուտն երթանք„, թէպէտ որ այլեւայլ փայտս Հատանեն, փիճի, եւ Սօսի, եւ զեղատսն, որ է Սօնոպարէնին„: Սօնոպարէնի է պրս. եւ արբ. Սանէվպէր = լտ. Pinus (Կելսիոս, Հ. Ա, 107), գղ. Pin, որ ի Գիրս Վաստակոց ստէպ կը յիշուի Սանոպրէ գրութեամբ (տես Սանոպրէ ի Հայբուսակն, Թ. 2786), եւ զոր Ստեփ. Ուռպելեան, Պատմ. Սիւնեաց, ԿԶ, 304 (տպ. Էմին), կը կոչէ Սնոպար, իսկ յն. Ελάτη է գղ. Sapin, Եղեւին՝ ըստ թարգմանութեան Ծննդոց գրոց, ԽԱ, 15: Ամիրտովլաթ զՍանէվպէր կը կոչէ Հայերէն փիճի, Հայբուսակ, Թ. 3061: Ի վերջին տեղւոջս Սնոպար փայտի վկայութեան Համար նշանակեալ է Ստ. Օրպել. Ը, զոր պէտք է կարդալ ԿԶ. դարձեալ՝ "Հելաղու... Սմբատ խաւրեց Օրպելեան իշխանը ի Բասեն„, պէտք է կարդալ "Հէլաղու... խաւրեց զՍմբատ իշխանն Օրպելեան ի Բասեն„:

Ի Թ. 2786, Սանոպրէ, Հ. Ալիշան կը գրէ. "Չգիտեմ ինչ նմանութեամբ կամ յարմարութեամբ գրած է բնախօս մի, "Եղաւ ի սիրտն՝ բնական ջերմութիւն, ըստ կերպի Սնօղարէ, գոյնն թուխ կարմիր են խիստ եւ պինտ անախտելի?„ Այս Սնօղար ոչ ինչ բան եւ գործ ունի առ Սանէվպէր = փիճի = գղ. Pin, այլ է արբ. Սնըպար կամ Սնէոպար, որ ըստ Բէստէնի է լտ.

boriandrum, գղ. boriandre, գ.ինձ: Իսկ բնախօսդ՝ է Իշոխ Ասորի, զորոյ զբանսն ես այսպէս ընթերցած եմ յՈսկեփորկի միում Ս. Ղազարու. «Նգաւ ի սիրտն բնական ջերմութիւն՝ ըստ կերպի Սնոպարէ գոյնն թուխ է– կարմիր, եւ Իէր եւ պինդ անյաղթելէ»:

Ծանօթութիւն.

1. Այս անգոյ ծառոյս անուն գործածուած է ի Հ. Ալիշանէ եւ ի Սէ[illegible]ն, երես 422ա. «Հոծեալ բազմութեամբ եղեւնեաց. Նոճարենեաց եւ եղջերենեաց»:

Ֆ. 2286. «Տարի, պտուղն այլ Տար կոչուի, եւ է կասլայ եւ իր հատերն. տես զայն, Թ. 1332, լտ. Bacchae Lauri»: Եւ ի Թ. 1332, ի բառն կասլա, Տար՝ կը գրուի հոմանիշ Սարգենի ծառոյ, եւ պտուղն եւս կը կոչուի Տարի պտուղ:

= Դար է ուղիղն, արաբերէն անուն Դափնի ծառոյ, ինչպէս կը գրուի ի Թ. 1805. «Դար. Դափնի, կասլայ», եւ ի Թ. 1332, ի բառն կասլա, գղ. «Laurier. թուրք. Տէֆնէ, արբ. Դար», եւ ոչ թէ Տար: Այս Դար է՝ տառադարձութեամբ Կար գրեալն ի Թ. 1323. «Կար, բժշկարան մի կ'ըսէ՝ թուրքերէն Տէֆնէ եէմիշի է, այսինքն Դափնոյ հատիկներն»: Նոյն է եւ ի Թ. 1635, Հապըլխար, այսինքն արբ. Հապպ էլ-ղար, պտուղ Դափնւոյ: Տես ի Թ. 621, «Եզրեղոյ պտուղ, որ է Հապ ըլ-ղար, որ է Տափնին»: Տես եւ ի Թ. 2158. «Հապ ըլ-ղար,

որ է Տափնին„: Տես եւ ի թ. 2158. "Հաղ ալ-խար (Հաղ ըլ-ղար)· Հոփոյ պտուղ, Դափնոյ պտուղ„:

Դարձեալ ի թ. 1332. "Դուշմաղդայ՝ կասալայի պտուղ„ գրէ Հին Բժշկարանն, ի՞նչ լեզուով? Նոյն բառն է ի թ. 2912, "Տահմազդ [տպ. Տախմազդ, այլ յերես 682 կ'ուղղուի Տահմազդ] = կասլա: Դուշմաղդայ եւ Տահմազդ՝ պարսկերէն Տէհմէզէք կամ Տէհմազէք բառն է, այս ինքն Դափնի. տես զբառսդ ի Գ.էորգ յերես 541, սիւնակ Ա:

**ԾԱ.** 2293. "Ծաւաշ, Գալիենու բառից մէջ գրուած է. "Կիկղամինոն (Cyclamen). Արանց ծաղիկ կամ Ծաւաշ„: Տես Թաղթ„: — 2381. "Ծօշ, գրուած է իբր Թաղթ. Նշանակուած է եւ ի Նոր բառհաւաքէ առանց բացատրութեան„:

= Գաղ. Ա՝ կը գրէ. "Կիկղամինոն. Արանց ծաղիկ կամ Ծաւշ. խսկ Գաղ. Գ՝ "Կիկղամինոն, Արանց ծաղիկ կամ Լօշ„, եւ Գաղ. Բ՝ "Կիկղամինոն, Լօշ„ Լօշ կը գրէ եւ Հ. Ալիշան ի թ. 949, 192, եւ այս թուի ուղիղն: Հայբուսակին զգղ. Cyclamen կ'անուանէ Խաղէ, թիւք 192, 759, եւ այլն. ըստ իս Թաղէ, որ եւ Թայլ, է գղ. Arroche. տես զայս յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս. տես եւ Թայլ ի Հայբուսակին, թ. 764:

**ԾԲ.** 2369. "Ծուրմրայ. Յիշուած է իբրեւ վայրի Սամիթ„:

= Ոչ Ծուրմրայ, այլ Շամրայ, ինչպէս կը գրուի ի թ. 2354, առանց վկայութեան ի

գրոց։ Շամրայի ալ լաւագոյն գրութիւնն է Շամրայ, ըստ Ձեռագրի Անտոնեան Հարց Ս. Բարսղի Վէյսաբէլին, Թ. 186. "Եւ աւձից աչք յորժամ ցաւիցեն, երթայ ուտէ զՇամրայ[1], այս ինքն զՍամիթ վայրենի, եւ ողջանայ". ուր տպագիրն Ս. Ղազարու ունի շամրայ, եւ ի ծանօթութեան կ՚ըսէ. "Յօրինակին թուի շամրայ". Ս. Ղազարու հին Ձեռագիր մի կը գրէ Ջամրա (Բարբէհլ Գ., երես 103)։ — Շամրայ սեմական բառ է, ասորերէն Շամրա. արաբերէն Շէմրէ, գղ. Fenouil marin. որ հայերէն կ՚ըսուի Սամիթ վայրենի, եւ ըստ Բժշկարանաց՝ Հոռոմ Սամիթ (իսկ Սամիթ լոկ՝ է գղ. Aneth)։ Պարսիկ անունն Շամրայի է Ռազիանէ, Ռազիանէճ (տես ի Գէորգ, ուր կը յիշուի եւ արաբերէն Շէմրէ). տես եւ ի Հայբուսակն, Թ. 2668, Ռզիան, Ռազիան։

Հ. Ալիշան կը գրէ այլուր, Թ. 2269, "Շամրա? կամ Շամրա, ծաղիկ մ՚է կ՚ըսէ Յովհ. Երզնկացի, որով օձ իր ապականեալ մարմինը նորոգէ! Անծանօթ է մեզ այդ զարմանալի բոյսդ, եւ ծագումն անուանն. լսեցընէ քիչ մի յն. χαμαίρωπς, որ գետնամած բոյս մի նշանակէ, կամ ցած Արմաւենի"։ Հաւանական է որ Յովհ. Երզնկացւոյ վերագրեալ բանդ՝ նոյն է զոր ես գտած եմ ի Ձեռագրին Ս. Ղազարու Աղթարքներ ԺԲ, երես 75. "Թէպէտ եւ բոլոր մարմինն ապականի, երթայ առնու ծաղիկ մի, անունն Շամրա, եւ զզոհեալ մարմինն նորա ողջացնէ"։ Եթէ համեմատենք զբանս ընդ գրելոցն ի Վէյսաբէլին, կարծեմ թէ Շամրայ եւ Շամրա

կը նոյնանան։ — Շամբալ, զոր կը յիշատակէ Նոր Հայկզ. ի Տաղարանէ, նո՞յն է թէ այլ ինչ՝ չգիտեմ.

“Սոսկալի պայծառ ծաղիկ,
Շամբալ ծաղկանց անդրանիկ„։

Ծանօթութիւն.

1. Ճշդիւ զնոյն կ'ըսէ զօձից եւ Ամիրտովլաթ բողխան անուամբ, որ է Շամբայ, Սամին փայրենի. տես Հայբուսակ, թ. 2668։

**ՃԳ.** 2381. “Ծօշ = թաղթ„, եւ այլն։
= Տես ի համարն ՃԱ։

**ՃԴ.** 2558. “Պլվէնակ. այսպէս գրեն բժշկարանք՝ Սիրքէճիւպին[1] (քացախամեղը) զուգելու նիւթոց կամ հունտերու հետ, թերեւս ուղղական բառն ըլլայ Պլէն„։

= Հայբուսակն կը գրէ այլուր, ի թ. 2570. “Պղվտակն, Ամիրտովլաթայ բառագրոց մէջ յիշուի Հատամ Պղվտակ, որ է Օշնդրին տակն„։ ի թ. 1009. երես 239, տողք 1—2. Պղվտակ կը նշանակուի իբր հոմանիշ խաչափայտի կամ փենունայի. գղ. Pivoine. անդ, երես 240, տողք 1—2, “Հատ. [այսինքն՝ Հատամ] Պղվէտակն, որ է Օշինդրին տակն„։ ի թ. 3253, երես 655. “Ուրիշ լաւ Օշինդր բերող տեղուանց հետ յիշէ [Ամիրտովլաթ] Սիսը եւ Տարսոնն այլ, նա եւ Թամին, զոր Մխ. Հերացի՝ Հատամ Օշինդր կոչէ։ Յիշուի եւ Օշինդրի տակ, որ առանձին անուամբ Պղվտակ այլ կոչուած է„։ ի թ. 66. “Աղուէսակ. Գուցէ վերինն ըլլայ (Աղուէճակ), բժշկարան մի

կ՚ըսէ. Թէ ձեռն ուռել լինի՝ զտորա (Լօշտակի) [Թերի Թուի] եւ զՀոռոմ Աղւխասկն ընդ ջիբար ծեծէ եւ ի վերայ դիր,,: Ուրիշ տեղ ալ կ՚իմացընէ Աղուխասկի ինչ ըլլալը. "Հոռոմ Աղւխասկ՝ որ է Օշինտըն,,: Հոռոմ ըսելով ալ կ՚իմացընէ որ տեսակ մի է սա, իսկ բուն Աղուխասկն [տպ. Աղուխճակն] ո՛ւր տեղացի է,,:

Աղւխասկ (եւ ոչ Աղուխասկ), Պըշքէրտաք, Պըշքէրտաք կամ Պըշքրտաք՝ ի վերոյեդեալ վկայութեանց կը յայտնուի որ մի եւ նոյն բոյսն է: Ուղիղ գրութիւնն Թուի Պըշքէրտաք (Աղւխասկ՝ նոյն բառի սխալ ընթերցուածն կ՚երեւի, Պ շփոթեալ ընդ Ա, Տ շփոթեալ ընդ Ս): Հաւանական է Թէ Պըշքէրտաք կը նշանակէ յունարէն Ἀψίνθιον, զոր մեր նախնիք ի վաղ ժամանակաց Հայացուցած են Աֆշինթ ձեւով, եւ Հոռոմ Պըշքէրտաք նոյն է ընդ Հոռոմ Աֆշինթ յիշատակեալ ի Մխիթարայ Հերացւոյ, խԱ, 126: Ջբանն Ամիրտոլվաթայ "Հոռոմ Պըշքրտաք, որ է Օշինտըրէն տակն,,, պարտ է իմանալ "Հոռոմ Պըշքրտաք, որ է [Հոռոմ] Օշինտըրէն տակն,,:

Ծանօթութիւն.

1. Գրելի էր Սիքէնճէպին, արբ. Սիքէնճէպին, որ է պրս. Սիքէնկէպին [= Սիքէ՝ քացախ, Էնկէպին՝ Մեղր], գղ. Okymel, Հայերէն քացախաթան՝ ըստ Բառից Գաղիանոսի: M. Devic կը գրէ Sikendjoubin ի բառն Téréniabin, ծան. 7: — Ի Թ. 808, երես 194, քացախաթան կոչելի էր զՍիքնճէպին, եւ ոչ Օշարակ:

**ՃԵ.** 2617. "Պրուտու, Պրոնթու, ա-

նունն յայտնէ յունական ծագումն եւ աւանդութիւն, ըստ որում Հերա մեծ դիցուհի անգամ մի իր վրայ ձգէ Աստղկան պատմուճանը, եւ ահա նոյնժամայն բղխեաց երկիր ամենազան ծաղիկս, Վարդ եւ Մանուշակ եւ Շուշան, Պրասնթոս եւ Յակինթոս,,, որպէս գրեն Տօնապատճառք մեր, յորոց համառօտելով Յովհ. Երզընկացի կ'ըսէ [դնելի էր թէ յո՛ր գիրս]. “Մանիշակս, Շուշանս, Պրոտոսս եւ Յակինթս,,: Պրոտոս՝ հաւանօրէն է Protius, որ եւ Balsamea, տաք երկիրներու բոյս, ուսկից զտուի Բալասանի նման հիւթ մի: Մեր յիշողքն այս [տպ. այս այս] անունս առած են ի Նոննոսէ, որ կ'ըսէ “Կրովկոս (Crocus, Քրքում), Պղովտոս եւ Յաթինկոս [sic]: Կայ Plotia տունկ մի, որ կոչուի եւս Myrsine,,:

= Պրոտոս, Պրասնթոս կամ Պրոնթոս եւ Պղովտոս աղաւաղեալ գրութիւնք են Լոտոս = յն. Λωτός բառի, զորմէ կ'ըսէ Alex. 1. Lotus ou Mélilot, ou autre plante de cette famille servant de fourrage, d'où par extension Fleur des prairies, herbe, fourrage, surtout chez les poëtes. 2. Lotus ou Nelumbo, espèce de Nénuphar, plante aquatique d'Égypte. 3. Lotos ou Jujubier, arbre d'Afrique, fruit de cet arbre, vanté par Homère [այս է որ յոյն բառիւ Լոտոս կը կոչուի յԱշխարհագրութեան Խորենացւոյ, իսկ ի Բառս Գաղիանոսի արաբերէն բառիւ Նէպքին, որ յամենայն Ձեռագիրս սխալ գրեալ է Ներգին,

եւ սովին սխալ ընթերցուածով մնեալ ի մեր այժմու Բառարանս եւ յայլեւայլ գիրս]. 4. Celtis ou Micocoulier, arbre, Պրաւնթոս եւ Պրոտոս գրութեանց աղբիւրն լինելով Նոննոս, ինչպէս կ'ըսէ եւ Հ. Ալիշան, հարկ է ստուգել նախ զՆոննոսի Պղովտոսն, որոյ ուղիղն է ըստ Լովտոս:

Նոննոս, ի Մեկնութեան Առասպելաց, Գ., ՀԴ., կը յիշատակէ ի Հոմերի Իլիականի ԺԴ երգոյն՝ թէ ինչպէս Հերա առ ի խափանել զԱրամազդայ ձեռնտուութիւնն Տրովադացւոց կողմանն՝ լաւագոյն հնարս կը համարի քունել ընդ դիցահօրն. որպէս զի մինչդեռ սա ի գիրկս իւր կը զուարճանայ՝ տկարանան Տրովադացիք եւ զօրանան Յոյնք. "Զայսոսիկ խորհելով [Հերայ], առեալ զգօտին ամենայն ի կեստէն Ափրոդիտեայ, ...զարդարեալ ելանէ առ Զեւս, եւ շարժէ զնա ի տռփանս եւ ի պակշոտութիւն: Եւ ապա երկիր բուսեաց զխոտս եւ զծաղիկս, որզան՝ կրոկոս [յն. Κρόκος, գղ. Safran], Լովտոս [2 Պղովտոս, յն. Λωτός], եւ Յակինթոս [2 Յատինկոս, յն. Ὑάκινθος, գղ. Jacinthe], զոր Հ. Արսէն Բագրատունի թարգմանած է յԻլիականին, ԺԴ, 346.

"Ասաց, եւ ամուսնոյն գիրկս արկ զաւակըն
Զրուանեան.
Ընդ նոքօք ծընաւ Երկիրն աստուածեղէն
բոյս նորազուարճ,
ԸզՆերգիւն ցօղալից եւ ըզՔըրքում եւ
ըզՀօրուտ".

բայց Ներգիւն, որ ուղղելի է ՆԷԲՓԷ-Ն, բառ արաբացի, ոչ է Alexandreի Բառարանին առաջին կամ երկրորդ նշանակութիւնն՝ յոր միտս միայն կարէ հասկացուիլ Հոմերին Λωτός, այլ 3րդ նշանակութիւնն՝ որ է Պտուղ, զորմէ խոնարհագոյն։ Բախտաւոր ենք որ ի Նոննոսի թարգմանչէն յունական ձայնիւ Ղոտոս կոչեցեալն՝ հին հայերէն գեղեցիկ անուամբ թարգմանեալ է ի հինգերորդ դարու՝ Ս. Գրիգորի Նազիանզացւոյ յԱռաջնում Արձանագրին Յուլիանոսի (զոր յիշեցի եւ ի համարն Լ). "Զի՞նչ եւ սքանչելի խառնակութիւնն Ամպայարուցին եւ պանծալւոյն Հռեայ, յորժամ զնոսա ամաչեցուցեալս [ամաչեցեալս?] հաւանեցուցանէ ի միջաւրէին, թէպէտ եւ բանարալքն հանդերձ չափովքն ողոքիցեն զնա, Անիարոյ ի ներքոյ տարա եղով ցաւղալիցս, եւ Քրքում ի վեր բուսեալս յերկրէ, եւ Նարդոս,, (տես զայս յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս ի բառն Lotus)։ Այսչափ միայն գիտէինք յԱգաթանգեղէ, երես 480, Բ. տպ., թէ Անիար ծաղիկ մի է, ինչպէս կ՚ըսէ եւ Հ. Ալիշան ի Թ. 107, որում անծանօթ է Նազիանզացւոյն Անիար = Λωτός. կը յիշեմ թէ որչափ ախորժեցաւ մեծանուն Բագրատունին երբ յամին 1866 ցուցի նմա զայս տեղի հայերէն Նազիանզացւոյն՝ զոր ինքն չէր կարդացած։

Եկեսցուք ի ՆԷԲՓԷ-Ն, որ ի գաղ. Ա եւ Դ՝ գրեալ է "Ղոտոս, Ներգիւն,, եւ ի գաղ. Բ՝ "ղոտոս, Ներգոյն,,, Ներգիւն եւ ամենայն բա-

ռաւրանք, Ներգիւն կամ Ներգոյն եւ Հայբու-սակն, Թ. 2196, որ կը յղէ զայն ի Լատին: Վաղուց կասկածելի երեւցած էր ինձ այս բառ[1], քանզի գտած էի ի թարգմանութեան Դեղոց. "Նբքն. Բուինչ„, եւ ի M. Devic, "Nabca; fruit d'une espèce de Jujubier. Chez nos botanistes, le mot s'écrit aussi nebca, nabqah, nabach, napeca, nabeca, nebbek. C'est l'arabe nabiqa, nibqa, Rhamnus nabeca, dans Freytag„. Գտի պատ եւ այլուր թէ Հոմերի Λωτός պտուղն էր տեսակ մի Յունապ. "Le Jujubier lotos (լտ. Zizyphus lotus) croît en abondance sur les côtes d'Afrique et dans l'île de Zerbi[2], l'ancien pays des Lotophages; c'est son fruit, dont la saveur agréable faisait oublier leur patrie aux voyageurs qui en avaient mangé„. Emm. Le Maout, Botanique, երես 230. Համեմատէ ընդ վերոյգրեալ Λωτός բառի 3դ նշանակութեան, Lotos ou Jujubier եւ այլն: Կերխիոս (Հ. Ա, 20—24) զայն ծառ՝ որ կու տայ զNebicon պտուղն՝ կը կոչէ լտ. Lotus Cyrenaica, եւ արաբերէն Majisch Sidra, ըստ Աղեքսանդրացւոց՝ Connar. "Majisch nomen est Arabicum, et dicitur Graece Lotus„. — Sidra species Loti arboris cujus fructus Nebicon appelatur„. — „Sedrah (ըստ D'Herbelotի, Bibl. Orient.) est une espèce d'arbre, que nous appelons le Lot [այս ինքն Lotus], que les

Arabes appellent encore d'un autre nom, Nobak, et quelques commentateurs de l'Alcoran disent, que les tables de la loi que Dieu donna à Moïse, étaient faites de ce bois„. — Կը յիշէ Կելսիոս եւ զConnar յԱթենէոսէ, որ գրեալ է յ'Alex. *Κόνναρος*, եւ կը մեկնուի Espèce d'arbrisseau épineux. Կը գրէ եւ L. M. Langlès ի գիրս Ուղեւորութեանց Շառդէնի (Voyages du chevalier Chardin en Perse, édition Langlès, Paris 1811), Հ. Գ, 293–294, ի ծանօթութեան. „Le mot Seder, plus correctement Sedrah, est le nom des arbres de l'espèce du Lotus, dont les fruits se nomment Nébiq et Nebq, suivant le Vân-qouly, cité par Meninski; mais suivant Ebn-Beithar, cité par don Banqueri, c'est le fruit du Nebq ou Alisier; et suivant Abou-zakharyâ, Nebq est le même arbre que le Enâb [= արբ. Ի'-ննապ, Յունապ, Յունապի], et désigne le Jujubier„. Իսկ Գէորգ կ՚ըսէ պարզապէս. "Քէյ-նար. է տեսակ իմն մրգոյ, թուրքերէն Սէտրէ եէմիշի„. տես վերագոյն Connar կամ *Κόνναρος*, եւ Sidra, Sedrah. Յայս ամենայն հեղինակութեանց կը հաստատուի որ նախնեաց *Λωτός* պտուղն էր Յունապ, կամ տեսակ մի Յունապ, Լօտօս՝ ըստ Խորենացւոյ Աշխարհագրութեան[3], Նէպքէ-ն կամ Նէպքն ոչ է հայ բառ՝ այլ արաբացի, Nabiqa, Nibqa, Nebicon. Թէ այն ծառ որ կը բերէ

զայս պտուղ՝ կը կոչուի արաբերէն Majisch, եւ՝ Sidra, ըստ Աղեքսանդրացւոց *Κόνναρος* թէ ծառն եւ թէ պտուղն, որ է պրս. Քէնար, թուրքերէն Սէտրէ էէ-Պէշէ. եւ լատիներէն Lotus Cyrenaica.

Լոտոս կամ Նէպքէ-ն պտղոյն հայերէն անունն է Բոխնչ՝ ըստ թրգմ. Դեղոց, "Նըկն. Բոխնչ„: Իսկ ի Բառս Գաղիանոսի երիցս Բոխնչ կը գրուի իբր հոմանիշ Կուլուլ, Մէրղանէ, Մուրա-ճողանէա բառից՝ զորոց եւ ոչ զմին կարողացած եմ ցարդ ստուգել: Նոյնպէս եւ Ամիրտովլաթ թէպէտ Բոխնչ կ'անուանէ զարաբականն Մայս [= Majisch. տես վերագոյն], այլ կը շփոթէ զիս՝ Պղպեղի նմանեցնելովն. "Մայս, որ է թուրք բառով Տաղանն, եւ Հայն Բոխնչ կ'ասէ. եւ իրենն վայրի Պղպեղ կու ասեն, եւ քան զՊղպեղն՝ այլ մեծ կու լինի, եւ միրգն քաղցր կու լինի եւ անուշահամ կու լինի[4]. երես 205 verso. Հայբուսակն ի թ. 387, Բոնչէ, Բոնչենէ կը կոչէ զծառն, առանց վկայութեանց ի գրոց. "Պտուղն այլ որ Ցունապի գունով եւ փոքրիկ է, Բոխնչ... թուրքերէն Չոնլանէ...[5]: Գալիենոսի բառից մէջ կան քանի մի անստոյգ եւ խանգար բառեր՝ որ այսօր զուգուին. Նաբաք (Ար. Նըբըկ), Քէնար? Կուլուլ...: Թէ ոչ մի եւ նոյն՝ այլ մօտ ազգակից է Բոնչին ընդ Լդդենւոյ (զոր տես), երկուքն այլ լտ. Celtis, ետքինն Celtis Australis [= գղ. Micocoulier] կոչուի, իսկ առաջինն Celtis Occidentalis„. Տեսանք որ Alexandre եւ *Λωτός* բառի 4դ նշանակութիւն կը դնէ Celtis ou Mi-

cocoulier. *Նոյնպէս տեսանք թէ* ՆԱԲԱԿ = ՆԸԲԿԻՆ *եւ* ՔՕՆԱՐ *ինչ են։* ՆԸԲԿԷ = ԲՌԻՆՉ, *եւ պրս.* ՔԱՆԱՐ, *տես եւ ի* Թ. 2172 ՀԱՅԲՈՒՍԱԿԷ, *ուր կը յիշուի եւ արբ.* ՍԷԴՐ, *այն զոր ես գրեցի* Sidra, Sedrah *մի եւ նոյն է Ամիրտոլվաթայ* ՍԷԴՐ *կոչածն ի* Թ. 940, *ուր սխալ հասկացուած է "ծոթրին"։ Տես եւ ի* Թ. 3209, ՔԱՆԱՐ[6] = ՆԱՊԻ, *ուր* ՔԱՆԱՐ *բառի պարսկերէն "կրակի առաջին կայծ" նշանակելն անծանօթ է ինձ։ Դարձեալ յերես* 461. "ՆԸԲԿ. *տես* ՆԱՊԻ": — *Ի մէջ բերեմ պատուական վկայութիւն մի* ԲՌՆՉԻ *ծառոյ յԺԲ դարէ՝ որ ի* ՀԱՅԲՈՒՍԱԿԷՆ *չգտնուիր.* "*Եւ իմ գտեալ զակն բիւրեղ՝ եկի առ ծառոյն* ԲՌՆՉԻ[7], *զոր ասեն Հոփանի [տպ. Հովանի] Բարտամայ արքայի, եւ աղաւթեցի անդ զվեց աւր*". ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎՐԱՑ, (Ս. Ղազար, 1884) *երես* 48. *զոր* Brosset, Hist. de la Géorgie, Additions et Éclaircissements à l'Hist. de la Géorgie, I[re] Partie, Chronique Arménienne (St. Pétersbourg 1851), *երես* 22, *թարգմանած է.* "Pour moi, ayant trouvé l'oeil de bérylle, j'allai sous un arbre nommé Brintch, dont l'ombre, dit-on, était recherchée du roi Bartam". *Թուի թէ Վրացիք ի Հայոց առած են* զԲՌՆՉԻ *անուն ծառոյս. քանզի նոյն իսկ ի Վրացերէն բնագրի* ՊԱՏՄՈՒԹԵԱՆՆ ՎՐԱՑ (Hist. de la Géorgie, I[re] Partie, St. Pétersbourg 1849, *երես* 103) Brindj *գրեալ է, զորոյ գաղղիերէն հոմանիշն հետազօտել փոյթ չէ ունեցած Բրոսէ.* "Elle y vit [sainte Nino sur le plateau] sur

pied quelques arbres, de ceux que l'on appelle Brindj, beaux, élancés, ayant de hautes branches, dans l'endroit où le roi Bartam venait jouir du repos et de la fraîcheur„։

[Ըստ Լիտրէի Lotus կը կոչուի եւ փշուտ թուփ մի, "Le Rhamnus* spina Christi, qui a servi, dit-on, à faire la couronne du Christ„, նոյնն զPaliure, ի Լիննէոսէ անուանեալ Rhamnus paliurus, որ է փշալից թուփ նման Ցունապղոյ, կը կոչէ այլով անուամբ Épine du Christ, այսպէս եւ Alex. գյն. Παλίουρος կ'անուանէ գղ. Paliure, vulgairement Épine de [sic] Christ, arbrisseau épineux. Հայոցս աւանդութիւնն թուի, թէ այն փուշն՝ որով Քրիստոսի դահիճք պսակեցին զնա անգթութեամբ՝ Կ–ծ–ծ անուանեալն է, քանզի կ'ըսէ Յոհ. Վանական Վարդապետ ի Հարցմունս իւր. "Հ. Փշեղէն պսակն որպէս էր։ Պ. Կեմ ոլորեցին. եւ յամէն ազգ փշէ ի ներս հարին. եւ զայդ որ Կ–ծ–ծ ասեն՝ թագաձեւ ի վերայ դրին„. Հայբ––––ն չունի զայս վկայութիւն ի Կ–ծ–ծ, թ. 1451։ Կ'ըսէ Հ. Ալիշան ի թ. 842. "կ'աւանդեն ոմանք յարեւելս, թէ Քրիստոսի փշեղէն պսակն այսոր [այս ինքն գղ. Framboisier ի] ճիւղերէն ոլորուած ըլլայ„։]

Ծ–նօթ––թի–ն.

1. Ցայս սակս գրած եմ յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս, ի բառն Lotus, 3դ նշ. "Լոտոս, Ներդիւն (?)։„

---

* Rhamnus է գրած։

2. Gerbi *կը գրէ* Dezobry. "Meninx, Girba, ou île des Lotophages, ancienne île de la Méditerranée, sur la côte N.-E. de la Numidie, dans le golfe de la Petite-Syrte, produisait beaucoup de lotos. Aujourd'hui Gerbi„։

3. *«Լինի յԱփրիկէ բանջար ինչ Լօտօս անուն, զոր թէ ուտէ ոք՝ զհայրենիսն մոռանայ». տպ.* 1865, *երես* 597։ — *«Կայ [յԱփրիկէ] բանջար [տպ. բանճար] ինչ Լօտօս անուն, զոր թէ ոք ուտէ՝ զհայրենիսն մոռանայ, ասէ Հոմերոս.» տպ.* 1881, *երես* 18։ *Քննելի է թէ ուստի առած է Խորենացի Բանջար անուանել զԼօտօս։*

4. *Զայս վկայութիւն Ամիրտովլաթայ՝ Հ. Ալիշան կը գրէ ի Թ.* 892, *Լըգդենի, գղ.* Micocoulier. *«Եւ Հայն Բօքինչ կ'ասէ» բառերն չկան ի Հայքարամին։ Նկատելով որ Ամիրտովլաթ զ«Բոքինչ» կը կոչէ արաբերէն Մայս, եւ թուրքերէն Տաղան, թերեւս Մայսթաղանէս կազմեալ է ի բառից Մայս = Մայս, Տաղան = Թաղանէս։*

5. *Գէորգ թուրքերէն Չէթլաղաճ կը կոչէ զպրս. Քէճէնդէն եւ զարբ. Հաղղէթ էլ հաղր, որ է Բեւեկնոյ պտուղ. տես անդ եւ Խէնճէք եւ Խէնդէքէ, արբ. Հաղղէթ էլ հաղր, թուրքերէն Չէթլէնէքէ, Մէնէքիչ կամ Մէնէքիշ։ Էմինեան* Lotus *բառի համար կ'ըսէ. «Նշդրին, ծառ ինչ եւ միրգ. Չէթլէմէճի»: եւ ի* Micocoulier [*որ է* Celtis australis] *կը գրէ. «Նշդրին. լոտոս. Չէթլէմէճի աղաճը»։*

6. *Թերեւս այս պրս. Քէնար, թուրքերէն Սիտրէ էէմիշի կոչուած պտուղն է (— եւ ոչ «ծաղիկն» — ինչպէս կ'ըսէ Հ. Ալիշան ի Թ.* 3200)՝ *Քնարօտ անուամբ յիշատակեալ յԱգաթանգեղ,* 479, *Բ տպ. «Սերկեւիլն, եւ Մորտն, եւ Ընգոյզն, եւ Նուշն, եւ Քնարօտն, եւ Հաճարուկն, եւ Թութն, եւ Նուռնն, եւ Հոյնն»։ Սորա ծառն է*

հաւանականաբար քն-րէնէ (Հ-յբ-----է, թ. 3199), որ կը գտնուի ի համառօտ բանին “Յաղագս Ծա-ռոց„ (տես ի համարն ՀՁ, ծան. 2). “Թթենիք, նշենիք, քն-րէնէ+, փշատենիք„: Langlès, ի նմին Գ. հատորի Ուղեւորութեանց Շարդէնի, երես 293, ասէ. konâr նոյն կը դնէ ընդ գղ. Cornouiller, զր է Հոյնի, Դուարայ: Կայ եւ ասորերէն քն-ր-, քէն-ր-, Sorbus arbor [= գղ. Sorbier կամ Cormier] (Payne Smith, Thes. Syr., ի նշանագիրն ք-ֆ, Coph, Պրակ Ե, էջ 1769):

7. Տպագիրն սխալ կը գրէ բ-ն-չէ, նոյնպէս եւ Նոր Հայկզ. ի Յաւելուածին. “բ-ն-չէ, անուն ծառոյ առ վրացիս„. յորմէ եւ Առձեռնի Ա. եւ Բ. տպագրութիւնք. “բ-ն-չէ, ծառի մը անուն ի Վիրս„:

**ՃՁ.** 2632. “Ջոլիրան. տեսակ մի նռան. Նշանակած է բառհաւաք մի„:

= Ուղիղն է Ջ-լէն-ր, որ Ճ--լէն-ր ձեւով կը գտնուի ի Թիւսն 1904, 2227. եւ է պրս. Կէ-լն-ր, արաբացուցեալ Ճէ-լն-ր. “Խոշոր բազմաթերթ եւ կարմիր ծաղիկ վայրի նռնենւոյ, արպ. Շէքէէր էսւ Մըւրէ. Շիրազեցիք Կէ'-լէ ---- դէրէ [= վարդ հարիւրթերթի]„ (Գէորգ), գղ. Balauste, զոր տես յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս: Ջոլիրան սխալ գրութիւնն է ի թարգմանութենէ Գեղոց. “Ջաւլիրան, նռան ծաղիկ„. յորմէ եւ Նոր Հայկզ. ի բառն “Նուռն„. “Ի բժշկարանի [իմա՝ ի Թրգմ. Գեղոց]... ազգ ինչ նռան Ջոլիրան կոչի„: Ուղիղ կը գրուի ի Բժշկ. Ա, 143. “Բալասիոն [յն. Βαλαύστιον, գղ. Fleur du grenadier sauvage]. Ճ--լէն-ր, որ է նռան ծաղիկ„: Իսկ Գաղ. Ա, Բ,

Գ, Դ՝ «Բաղատրոն [ընթերցիր բաղաւստիոն]. նռան ծաղիկ»: — Ի Թ. 2227, յն. Βαλάστιον գրեալն՝ ուղղելի է Βαλαύστιον:

**ՃԷ.** 2 55. «Զրման ջուր». եւ այլն:

= Ուղիղն է Ճղեման [այս ինքն Ճղեմն խոտոյ] ջուր. տես ի համարն ՉԸ:

**ՃԸ.** 2725. «Սարուն? գուցէ վրիպագրեալն (Սարու ծաղիկ [տես զայս ի համարն ՃԻԴ]) ըլլայ, եւ գրուի նոյն Գալիենոսի բառից մէջ. համանիշ Եղէնթադրանոն? յունարէն մտիկ ձայնով ἡλιοκάνθαρος նշանակէ Արեւու բզէզ, միջատ մի»: [ἡλιοκάνθαρος, Escarbot consacré au soleil, chez les Egyptiens. Alex.:]

= «Եղիթադրանոն, Տորոն», կը գրեն Գաղ. Ա եւ Գ: — «Եղիթադրանոն, Տորոն», Գաղ. Բ: — «Եղիադրանոն. Տորոն», Գաղ. Դ. չգիտեմ թէ Հ. Ալիշան ուր գտած է Սարուն: Յոյն բառն ուղղելի է Երեթրոդանոն, Ἐρηθρόδανον[1] լտ. Erythrodanus, որ է գղ. Garance, հայերէն Տորոն, Տորոն, Տորոն, զոր մեք այժմ կը կոչենք սովորաբար Տորոն. տես Տորոն ի Հայբուսակն, Թ. 2981: — Նոր Հայկզ. ի բառն «Ստեպղին վայրի» կը նշանակէ իտալերէն Robbia, Deron. Robbia է նոյն ինքն Տորուն կամ Տորոն. իսկ զհոմանիշն Deron, որ մեր Հայ բառն թուի, ցարդ չեմ կարողացած գտնել իտալերէն լեզուի:

[Արժան էր որ Հ. Ալիշան Տորոն անուան ներքեւ ի Թ. 2981 յիշատակէր զմերազգին Յովհաննէս Ալթըն (Ալթընեան?), որ մեծ ար-

դինիք ունեցած է գաղղիացւոց համար։ Emm. Le Maout կ'ըսէ, Botanique, երես 105. „Vers le milieu du dix-septième siècle, Frauzen, de Hagueneau, introduisit la culture de la Garance en Alsace; à la même époque, Jean Althen, Arménien catholique, apporta d'Ispahan de la graine de Garance dans le comtat d'Avignon, et dota ce pays d'une industrie qui produit aujourd'hui pour vingt millions de Garance dans le département de Vaucluse". Կը գրէ եւ Dezobry. „Althen (Jean), né à Chaouc [= Ճահուկ?], en Perse, en 1709, mort en France, 17 nov. 1774. Elevé dans l'esclavage, puis proscrit, il vint en France; ses efforts persévérants le tirèrent de la misère, transformèrent l'agriculture et enrichirent l'industrie d'une de nos provinces. Il fut en effet l'agent le plus actif et le plus direct de l'implantation de la Garance dans les États d'Avignon et du Comtat, et de la prodigieuse extension que prit en peu de temps cette culture. Avignon a érigé en 1846 sa statue sur le rocher de Notre-Dame de Doms. V. Notes sur Althen, par M. Achard, Avignon, in 8°, 1849".]

Ծանօթութիւն.

1. Սխալ թուի ի նոր Հայկզ. յն. Ερεάνον ի բառն "Տորոն":

**ՃԹ.** 2791. “*Սոխորմ*. տես ինչ որ յիշուած է այսոր համար՝ Աղէկո խոտ անուամբ, թ. 140„։ — 140. “Աղէկո խոտ... Ամիրտովլ-վաթ կ'ըսէ. “Հաշիշ ըլ-զուճաճ, որ Հայք Աղէկո խոտ կ'ասեն, եւ Հոռոմն րէսիմօն *Ρήσιμον*, փեգենա)...„։ Դիոսկորիտէս գրէ՝ թէ պատերու վրայ ալ բուսնի, ասոր համար Ստ. Ռոշքեան ալ *Սոխորմ* թարգմաներ է. լատին անունն ալ որմ (պատ) նշանակէ, Parietaria, ֆ. Pariétaire...։ Տես եւ Փէնիրախ„։ — 541. “Դուղէ? Բժշկարան. բառագրոց մէջ գրուի. “Սոխ է, որ ընդ որմն ի վեր երթայ, եւ սպիտակ ծաղիկ ունի„։ Այսպիսի պատէ վեր քալող Սոխի յարմարագոյն անուն համարի Ստ. Ռոշքեան՝ *Սոխորմն*, եւ յարմար լատին անունն ալ գրէ, զատ յայլոց, Parietaria, ֆ. Pariétaire, որ որմնային թարգմանուի։ Այս բոյս է արաբերէնէ թարգմանուած Աղէկո խոտն, զոր յիշած եմք (թիւ 140)։ Մեր Հարց բառագրոց մէջ կոչուած է եւ Փէնիրախ„։ — 3058. “Փէնիրախ. Բուրաղ. Այս բառս գործածուեր է (Նախ որմէ՞, չէ յայտ), այն՝ կպչուն խոտին համար, զոր բացատրած եմք Աղէկոյ խոտ անուամբ, թ. 140„։

= Ի Ռոշքեանի բառագիրս ես ընթերցած եմ *Սոխոր*, եւ ոչ *Սոխորմ*, “*Սոխոր*, ոյ. խոտ՝ որ յորմս եւ ի պարիսպս բուսանի. զսպիտակ ծաղիկ առնէ. Parietaria„, եւ այլն։ Ռոշքեան հնարած է զիւր *Սոխոր* ի հետեւեալ բանից Գաղիանոսի բառից. “Դաղէ. Սոխ որ ընդ որմն ի վեր երթայ, եւ սպիտակ ծաղիկ ունի„.

Գաղ. Ա, Գ, Դ, այս է զոր կը յիշէ եւ Հայբուսակն ի Թ. 541: Դաբէ սոխոյն լտ. Parietaria լինելն՝ մեծապէս երկբայելի է ինձ: Իսկ Աղէկայ խորոյ յունարէնն *Ρήσιμον*, լաւ եւս *Ἐρύσιμον*, ոչ է փեգենայ, գղ. Rue, այլ գղ. Érysimon ou Vélar, որ կ'ըսուի եւ Tortelle: — Փէնէրախ կամ Բաբրաղ ոչ է հայ բառ, այլ թուրքերէն պանիրաք. Գէորգ կը գրէ. "Տաժէ. է փուշ ինչ բոլորակ, որ կպչի ի հանդերձս, եւ ի բուրդս ոչխարաց. որ թուրքերէն ասի պանիրաք,,:

**ՁԺ.** 2835. "*Սըմըրնկօզի*? Արցախային ծառոց տեսակ մի, ըստ Մեղու օրագրի (ԻԲ, 83)":

= Կարդա՛ Ս[ը]մ [ը]նկօզի, որ է Սամ ընկոյզ, ինչպէս կը գրուի ի Թ. 743. "Սամ ընկոյզ. թուրքերէն Եալան ճօզ. յիշէ Բարխուդարեան ի կողմանս Աղուանից,,, այս ինքն՝ յԱրցախ:

**ՁԺԱ.** 2846. "Սէօտօշ. Իր ազգակից բարբոջին հետ յիշուած ի Սալաձորեցւոյն. ուրիշ օրինակի մէջ Քօէօտօշ կամ Նօշտօշ գրուի,,: — 3223. "Քօէօտօջ. Սալաձորեցին յիշած է զայս, յետ չորս ամենէն առաջ բացուած ծաղկանց. յիշուած է եւ յօրագրի (Մշակ. ԺԲ, 88),,:

= Որովհետեւ Քօէօտօջ ծաղիկ յիշուած է այլուստ եւ ի Մշակ լրագրի, կը հաստատուի որ նոյնպէս Քօէօտօջ պէտք է կարդալ ի Սալաձորեցւոյ Տաղին Ծաղկանց, եւ ոչ *Սըօտօշ*: Կայ յԱ բժշկարանի, երես 143. "Ալմ. Նօնօղէ տակ. Շուշան ծաղիկն է,,. եւ դարձեալ յերես 144. "Նօնօղէ ծաղիկ. Նինօֆար,,. տես զայս ի Հայբուսակն, Թ. 1458, ուր փոխանակ "Գալին-

նոսի բառք,,՝ ընթերցիր "Հին [այս ինքն Ա] բժշ-կարան,,։ Կոչոռչէ, որ սեռական է, կ'ենթադրէ ուղղական չոչոռոող կամ չոչոռէչ. բայց թերեւս չոչոռչէ՝ է փոխանակ գրելոյ չոչոռ[ո]չէ (համեմատէ ընդ խոծկորկի = խոծկորակի, փերփերնի = փերփերանի. տես ի Համարն ՀԸ). որով մարթի կարծել թէ Սալաձորեցւոյն Քոտոռոջ՝ գրելի է չոչոռող ըստ Ա Բժշկարանի։ — Ա՛յլ ինչ թուի չոչոռոչ, Հայբուսակ, թ. 1459։

**ՃԺԲ.** 2920. "*Տանն*? Բժշկական բառից կարգի մէջ գրուած եւ իրեն զուգուած է Հապին,,?

= *Տանն* սխալ բառ է. ուղիղն է Տանձ, թ. 2918, որոյ յունարէնն է Հապին։ "Հապին, *Տանն*,,, կը գրէ Գաղիանոս Բ. իսկ Գաղ. Ա, Գ, Դ՝ "Հապին, Տանձ,,, որ է յն. Ἄπιον, գղ. Poire։

Ի նմին թ. 2918, երես 602, կը յիշուի ի բառից Գաղիանոսի՝ իբր ազգ ինչ Տանձ պտղոյ՝ "Պերիտէս, Քարպատանձ,,։ Ես ի Գաղիանոս Բ միայն գտած եմ "Պիտրէս. Քարաձանձ,,, եւ ո՛չ *Քարպատանձ*. ցարդ չեմ յաջողած ստուգել զՊիտրէս. բայց Քարաձանձ նոյն է որ կը յիշուի ի թ. 3173 Հայբուսակին, եւ զորոյ զորպիսութիւնն նոյնպէս կ'անգիտանամ։ Աւասիկ Քարաձանձ կամ Քարձանձ բառի այլ վկայութիւնք՝ որք չեն մանր նշանակեալք ի Հայբուսակին. "Հալպրա. Քարձանձն,,. Բժշ. Ա, 144։ — "Քարձանձ. Ուրձն [2 Քարձանձուրձն] կամ խոռ,,. Արիստակէս Գրիչ, Քերթողական բառք. — "Կաքուարոտ, Քարձանձ,,. Ասարայ Սեբաստացւոյ Բժշկարան։ (Կայ եւ առ Շահրիմանեանի Քարաձանձ, լտ. Salvia,

Տէշ օթա. որ է գղ. Sauge. տես զայս ի Թ. 3157 Հայբուսակէ։)

**ՃԺԳ.** 2959. "Տվորուկ", եւ այլն։

= Ուղիղն է Աւձորակ, այս ինքն Աւէարակ կամ Աւէարեակ, գղ. Marum. տես ի Համարն ԶԳ, Դէտ. Թիւ 7։

**ՃԺԴ.** 3000. "Տրբենա", եւ այլն։

= Մի եւ նոյն անծանօթ բոյսն է որ այլ երկիցս կը գրուի ի Հայբուսակէն. Թիւք 263 եւ 2148, Աֆրէնա եւ Ցաբէնայ? գրութեամբք։ Կ'երեւի թէ փոխանակ կարդալոյ Արբէնա [= Աֆրէնա, Ցա[ր]բէնայ]՝ Տ կարդացուեր է առաջին գիրն, ինչպէս եւ Տվորուկ՝ փոխանակ Աւձորակ։

**ՃԺԵ.** 3070. "Փնդի, գալինոսի բառից մէջ գրուած կայ. Կաղամ՝ փնդին է կամ Դաղցն (Դաղձ)"։

= Գաղիանոս Ա եւ Գ սխալ կը գրեն. "Կաղամփինդինէ, Դաղձն". իսկ Գաղ. Բ՝ "Կաղամինթէնէ, Դաղձն". որ է յն. καλαμίνθη կամ καλάμινθος, գղ. balament, herbe aromatique (տես balament յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս. տես եւ յիմ Հայկ. Բառաքնն. երես 98. իսկ Հ. Ալիշան ի Թ. 545 կը դնէ "Դաղձ = Menthe sauvage")։ Ի Թ. 176 կը յիշուի յունարէնն καλαμινθη (գրեալ καλαμίντης), եւ Հայերէն կը կոչուի Վայրի Դաղձ. կը յիշուի եւ ի Թ. 1461 (գրեալ χαλή Μίνθα, փոխանակ καλαμίνθη), եւ կը մեկնուի "Ազնիւ ազգ մի Անանուխի կամ Դաղձին"։

Ի վերջին տեղւոյդ՝ Կողամիտա? յԱշխարհագրութենէ Խորենացւոյ, որ յն. Καλαμίνθη կը կարծուի, ուղղելի է Կալամիտա, ինչպէս կը գրուի ի տպ. 1881, երես 23, կամ Կալամիտ՝ ըստ տպ. 1865, երես 602, ծան. 6։ Այս Կալամիտ կամ Կալամիտա, որ զոյգ կը յիշուի ընդ Ստիւրակ խնկոյ յաշխարհին Իսաւրիոյ, գղ. Calamite թարգմանեալ է ի տպ. 1881, երես 32։ Ես եւս վաղուց Calamite կարծած էի, թէպէտ զայդ բառ այդպիսի նշանակութեամբ ցարդ գտած չեմ ի յոյն կամ ի լատին լեզուի, այլ միայն ի գաղղիականին. Լիտրէ կ'ըսէ. "Calamite; gomme résine, sorte inférieure de storak [Ստիւրակ] qu'on recueille dans des tiges de roseau„. եւ ի ԺԶ. դարէ վկայութիւն ի մէջ կը բերէ "styrak, calamite„։

**ՃԺԶ.** 3080. "Փոթորնի։ Գալիենոսի բառք գրեն. "Եփիթիմոն. ծաղիկ վայրենի Փոթորնոյ„։ Պէյթար յն. բառոյն գրէ, յորմէ եւ Ամիրտովլաթ. "Աֆթիմոն, որ է փռ. Եփիթիմոն... ի վերայ ծաթրուն բուսնի...„։ Յն. Ἐπίθυμον [տպ. Ἐπὶφυμον] անունն՝ ծոթրինի-վրայ ըսել է. ինչպէս Ամիրտովլաթ այլ ըսաւ "ի վերայ ծաթրուն բուսնի„. այսինքն կու պլլըլի կամ փաթթըլի, անոր համար կ'ըսուի եւ բաթկենի (որ պէտք էր փ տառիւ գրուիլ ինչպէս Փոթորնին այլ Փոթոռնի) եւ Գայլխոտ, լտ. Cuscuta Epithymum„։

— Զիք Փոթորնի բառ, քանզի Գաղիանոսի բառք միաբան կը գրեն. "Եպիթիմոն. Ծա-

ղիկ Վայրի Ծոթորնոյ,,. Գաղ. Գ, Դ կամ "Ծաղիկ վայրեն[ի] Ծոթորնոյ,,. Գաղ. Ա: Ծոթորնոյ՝ է սեռականն Ծոթորոյն բառի թարգմանութեան Դեղոց. "Փրասիոն, խորտակ [=թուխ պրս. Խէ-ր-, Մանր] Ծոթորոյն,,. սա այլ նոյն է ընդ Ծոթրէն, թ. 1172 Հայբուսակի, գղ. Thym կամ թերեւս Serpolet, յորում տեղւոջ կը յիշուի "Եպիթիմոն. վայրի Ծոթրէն,,:

Եպէթիմոն բառն է՝ որ ի մեր Բժշկարանս սաէպ կը յիշուի Աֆթիմոն գրութեամբ (տես ի թ. 3299): Կայ եւ Աւթիմին կամ Ավթիմին ի բառս Գաղիանոսի. "Պիւրեթրու, Աւթիմին,,. Գաղ. Բ: — "Պիւրեթրու, Ավթիմին,,. Գաղ. Ա. յորմէ Նոր Հայկզ. կը գրէ "Ափթիմոն,, կրկին նշանակութեամբ. 1. յն. Ἐπίθυμον, լտ. Epithymum [տպ. Epithimum]: 2. յն. Πύρεθρον, լտ. Pyrethrum, որ է գղ. Pyrèthre[1], sorte de Camomille, ըստ մեզ Բողի տակ կամ Իգաբողի տակ (=Ակրկարհա, տես ի Համարն 2Դ, Դէ-., Թիւ 9): Յառաջ քան զՆոր Հայկզ՝ գրած է եւ Ռոշքեան յիւր Բառարանին Օթեմին ձեւով, զոր կը յիշէ եւ Հ. Ալիշան ի թ. 3235: "Օթեմին, ըստ Ռոշքեանի, "Խոտ՝ որ տերեւս եւ ծղօտ ունի նման Սամթի, արմատն է յոյժ կծու, բայց օգուտ ատամանց ցաւոյ, եթէ ծամեսցի, լտ. Pyrethrum,,, ուրեմն է Ակրկարհա, տես զայս, թ. 44, եւ Իգաբող,,:

Ես կարծեմ թէ ի Բառս Գաղիանոսի գրելի էր "Պիրեթրու, Անթեմոն,,= յն Ἄνθεμις, գղ. Camomille, Երիցուկ կամ Խնձորխոտ (որ առ մեզ

ըսուած է եւ յունարար Անթեմ[2]), վասն զի տեսանք որ Alex. զΠύρεϑρον կը մեկնէ sorte de Camomille, և գիրն սխալմամբ — կարդացուելով՝ եղեր է Աւլթիմոն, սա ալ Ավլթիմոն եւ Օթեմոն, որ առեր է զնշանակութիւն Pyrèthre բուսոյ։

Ծանօթութիւն.

1. "Pyrèthre, Անթիմոն", եւ Էմինեան։

2. Ի Թ. 106 Հայբուսակի՝ վկայութիւն կը բերուի Անթեմ բառի ի մեկնիչ վարդապետէ Սողոմոնի Ուրախ լեր երիտասարդ բանին. "Անթեմն՝ բանջար է երեւելի, եւ բազմապատիկ ունի շուրջ զինքեամբ զտերեւոյն լուսանման բողբոջն"։ Այս բան առեալ է ի Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան գրոց (տպ. Վիեննա 1832), ԺԵ, 321. "Անթեմ. այս երեւելի բանջար է, որ բազմապատիկ շուրջ զիւրեաւ ունի բուսեալ ճառագայթաձեւս զտերեւոյն" [տպ. "...բանջար է, բազմապատիկ որ շուրջ". Թերեւս՝ "...բանջար է բազմապատիկ, որ շուրջ"]։

**ՃԺԷ.** 3141. "*Քապողկրիտակ*, *Քապողկլիտակ*, Ակրկարհայն է ըստ Ասորայ, տես Թ. 44"։

= Ուղիղն է Իգաբողէ տակ, Թ. 847։

**ՃԺԸ.** 3235. "*Օթեմոն* = Pyrethrum" եւ այլն։

= Տես ի համարն ՃԺԶ։

## Գ.

*Միեւնոյն բուսոյ անուն այլեւայլ գրութեամբք կամ հնչմամբք նշանակեալ երկիցս եւ երիցս:*

**ՃԺԹ.** 12. Աղարիղն: 854. Իղարիղայ? (3216, Քուշուլա):

= Աղարիղն եւ Իղարիղա անտարակոյս միեւնոյն է. նոյն է եւ Քուշուլա, քանզի թէ Աղարիղն եւ թէ Քուշուլա բուսոց համար կ'ըսուի թէ "Ագռաւուն ուտէ՝ խեւնայ„: — Սխալ է Աղարիղի ի թ. 2355, նոյն սխալ է եւ ի թ. 3216. "Քուչուլա որ է Աղարիղն„, որ է Agaricus„:

Ի թ. 854, Իղարիղայ? գրեալ է, "Ճղերն տունկ? (Սունկ?) կու նմանէ, եւ երկան կու լինի, եւ մէկմէկի կու փաթութէ„: Ուղիղ է Տալիէ, եւ ջնջելի է Սալիէ: Տալիէ կը նշանակէ Որթ կամ Որթատալիէ, գղ. Vigne, ինչպէս գրեալ է ի թ. 2991. "Տալիէ, խաղողի ծառն[1] է„, ուր եւ Դաւշաբ Տալիէ թուի թէ է իբր պրս. Թաքէ տէշնէ, այս ինքն Որթ վայրի (տես Նէխուշ ի Գէորգ): Նմանապէս ի թ. 1580, "Սպիտակագոյն տալիէն„ գրեալն՝ ուղղելի կը կարծուի Սալիէ, ասա եւս ուղիղ է տալիէն, Սպիտակագոյն տալիէ է թարգմանութիւն պարսկականին Սէփիտտաք եւ արաբականին Քէրմէի Էլ Պէյզ = Սպիտակ Որթ, որ նոյն անուամբ կը կոչուի եւ յունարէն եւ գաղղիերէն եւ թուրքերէն (տես

ի համարն ԴԼԱ)։ Ընուած է նաեւ Սղէտաճ Այքէ, թ. 3260, Փաշարա։

Ծանօթութիւն.

1. Խաղողէ ձառն, այսինքն Որթ, Որթատունկ, ընուած է նաեւ Խաղողի տակ, արաբ. Քէրմ = Որթատունկ (ի մեր Բժշկարանս Քարմ գրեալ)։ Հ. Ալիշան ի թ. 3221 կը գրէ իբրեւ անծանօթ բառս Քարմ? Տակն Խաղողին? Նոյնպէս կ'անգիտանայ եւ ի թ. 978, յերկոսեան տեղիսդ եւս շփոթելով զՔարմ (ճշդագոյն Քէրմ) ընդ Քիմ կամ Քիմէ = Գերերի։ Բայց ի թ. 2411, երես 507, իմացած է թէ Քըրմ կամ Քարմ արաբերէն Որթ է։ Նոյն է ընդ Քէրմ արաբականին եւ Քէրմէն, զոր տես ի համարն ԴԼԱ։

**ՃԻ.** 300, Բամբաղ կամ Բիամբաա. 372, Բամբաղ կամ Բիամբաա, Բամպաղ։

= Այս ծաղկի անուան ուղիղ գրութիւնն է Բամբաաա, որ կը գտնուի ի Ձեռագրի ուրեք Երուսաղեմի մատենադարանին, "ի խնկածաղկէն եւ ի Բամբաաաէն", ինչպէս հաղորդած է ինձ ամօք յառաջ Տ. Թ. Սաւալանեան։ Լսած եմ ի Տ. Սերոբէ Ալիշանէ որ ի Հայս ցարդ Պամպաա կը կոչեն զարաբ. Սինպիլն, որ է գղ. Nard կամ Jacinthe, Բամբաաա նոյն թուի հնդիկ Pampê կամ Paumpé բառին հետ, որ է գղ. Nard, տես ի Chardin, Voyage en Perse, édit. L. Langlès, Հ. Գ., երեսք 349—350, զծանօթութիւնն Լանգլէսի։

**ՃԻԱ.** 319, Բարէձաա. 2525, Պարշաա.

3051, “Փէժառ, տես Մաղխ„ (ի թ. 1945, Մաղխ կը գրուի Բարէժառ, Փէժառ, Բարղառ):

= Վաղուց ըսած եմ ի Հայկական Բառաքննութեան, երեսք 25—26, թէ ճիշդ է Բարֆժառ, զոր այլք սխալ կարդացած են Գ.ժառ, եւ սխալ մեկնութիւն տուած են: Բարֆժառ պարսիկ բառ է, Պէյրղէր, որ ըստ Գէորգայ նոյն է ընդ Էնկէժեր, հայերէն Ընգուժատ, գղ. Galbanum. Գէորգ ունի նաեւ “Պէյրղէ, է խիժ իմն որպէս մեղր, որ ունի զհոտ սուր„:

**ՃԻԲ.** 325. Բոյթառէ? 2534. Պոյխար:

= Երկոքեան եւս գաւառի բառիւ անուն ծառոյ, թերեւս միեւնոյն ծառն է ըստ այլեւայլ հնչմանց:

**ՃԻԳ.** 351. Բուտըրխա? 2522. Պատրխան:

= Երկոքեան եւս գաւառի բառք. թերեւս նոյն: Բալտրղան, զոր գտի ի Յովհաննէս Աթանասեանցի "Երեւանի նահանգի բուսականութիւնը„ (Երեւան, Պօղ լրագրի տպարան 1881), կը հաստատէ զիմ կարծիս: Կ'ըսէ Աթանասեանց յերես 80. "Լեռնային աղցաններ համարւում են հետեւեալ բանջարները. Բոխ, Երջանուկ, Ողորմակոթ, Ղանձիլ, Բալտրղան, Կապառ, Բոլի, Ուռցն, Փէյվազ, Մանդակ քեղ (տպ. քեղ), Շուշան, Կանգառ, Կծոռուկ եւ Կոճղէղ„: Եւ յերես 81—82. "Բալտրղանը մեծ տերեւներով բոյս է, որ սիրում է ջրային եւ հով տեղեր: Բուսանում է ձորերի ու հովիտների միջից հոսող առուների ու գետերի մօտերքում՝ քարերի մէջ, եւ բարձրանում է մարդու հասակից բարձր:

ցողունի մէջը դատարկ է, եւ ինքը շատ ջրալի։ Սորան մարդիկ աղ չեն դնում, միայն երբեմն թարմ ժամանակ ուտում են„։ Թէ Բլերբիլ եւ Բոլերդղան միեւնոյն աղցանն է՝ չկը բնաւ տարակոյս. Բոլերդղան եւ Պօրբիան ալ այնչափ նման են ձայնիւ՝ որ պէտք է նոյն համարուին։

**ՃԻԴ.** 353. Բլիլաճ։ 2556. Պլելճ։

— Նոյն, արաբ. Պելէյլէճ, պրս. Պելէյլէ (գէորգ)։ Տես եւ Belléric ou Belliric ի M. Devic, ի Թ. 2556 ջնջելի է գղ. Badamier, որ այլ ինչ է, տես Badamier ի M. Devic։

**ՃԻԵ.** 529. "Գօնդօն? Նոր բժշկարան [տպ. բժշկարանն] մի շատ հեղ յիշէ Գօնդօնոյ կօտ [հօնդ?] եւ ջուր։ Անուամբ մօտ, բայց չի կարծուիր Gentiana (Բոգ)„։ — 1295. "Կանտան...։ Պէյթարի թարգմանութիւնն Պրօգրած է կանտանայ տեղ„։ — 3135. "Քանտան կամ Քանտանա. Այսոր թէ հունտն [որով սխալ թուի կօտ[1] ի Թ. 529] թէ ջուրն իբրեւ բժշկարար դեղ յիշուի. բայց ոչ՝ ինչ ըլլալն։ Տես եւ Կանտան, Թ. 1295„։

— Գօնդօն, Կանտան, Քանտան կամ Քանտանա է պրս. "Կէնդանէ. Պրաս, Պրախ. Փրաս է արպերէն Սադի Պէրրէ [= խստոր վայրի]„, գէորգ. որ է գղ. Poireau. Պրաս բանջարն կ'ըսուի եւս Քառաթ ի բժշկարանս, որ է արաբ. Քէրրաթ. "Քառաթ, որ է Կանտանայ„, կ'ըսէ Ամիրտոլվաթ. տես ի Թ. 2612։ Հ. Ալիշան շփոթած է զպրս. Կէնտանէ ընդ լտ. Gentiana ի Թ. 757. "տերեւն նման է կանտանայ տերեւին

(տես թ. 356 [այս ինչըն՝ բոգ = Gentiana])։ Շփոթութիւն կայ եւ ի թ. 3242, ուր Ս---ձ ղէբբէ = Վայրի Սխտոր՝ զոյգ կը յիշուի ընդ Gentiana. Թուի թէ Ս---ձ ղէբբէ կը նշանակէ եւս յու. Teucrium Scordium, գղ. Germandrée aquatique. տես ի թիւսն 1155, 3242։

Ծ--նօ--ին--ն.

1. Իսկ ի թ. 1025, «շ---ան--ն ձգէ», թուի ուղղելի շ---ան. համեմատէ ընդ թ. 2588։

**ՃԻՁ.** 578. Գեղին ծաղիկ (զոր տես եւ ի Շ.ալակին, երես 677)։ 2724. Սարա ծաղիկ = Երկրորդիս համար կ'ըսուի. «Գուցէ ըլլայ վերոյիշեալ Սար-ծաղիկն (թ. 2715)»։ Ինձ թուի թէ Սարա է թուրք բառն Սարը = Դեղին, Սարա չիչակ [= Սարը չիչէկ], ինչպէս կ'ըսէ կամարկապցին ի թ. 578. որով Գեղին ծաղիկ եւ Սարա ծաղիկ կը նոյնանան։ Տես եւ Մօր ծաղիկ ի թ. 2110, որ նոյնպէս թուի ի թուրք Մօր բառէն, Մօր չիչէկ։ Եթէ Սարա ծաղիկ ի հայ Սար բառէն ըլլար (որպէս թուի Սար-ծաղիկն)՝ յայնժամ կ'ըսուէր Սարէ ծաղիկ. տես Սարէ Ան[-]ն--խ, թ. 98. Սարէ Գազն, ի թ. 545. Սարէ Խնձոր, թ. 2718. Սարէ Ռեհան, թ. 2666 Սարէ Վարդ, թ. 2874. Սարէ Տանձ, ի թ. 2918։ — Տես ի համարն ՃԸ զ'Սարա ծաղիկ, նոյն կարծեցեալ ընդ *Սարուն?* որոյ ուղիղն է Տարանա, Տորոն, գղ. Garance.

**ՃԻԵ.** 626. Եղ-ծաղիկ։ 878. Իւղ-ծաղիկ։

**ՃԻԸ.** 707. Ձէֆին? 1200. Ծէֆին։

**ՃԻԹ.** 860. Իշախաղող։ 872. Իշու խաղող։

**ՃԼ.** 1035. Խարծի։ 1649. Հարած? ուր *կը յիշուի եւ Հարծի ալիւր, եւ Հ. Ալիշան Հածար կը կարծէ։*

= *Եթէ կայ ուղղականն Հարած՝ քննելի է թէ Խարծի ուղղակա՞ն է թէ սեռական. եթէ սեռական է՝ անշուշտ գրեալ է փոխանակ Խար[ա]ծի, որով Խարած եւ Հարած կը նոյնանան։*

**ՃԼԱ.** 1151. Խաւանջ, *բանջար*։ 1164. Խըրանջ, *բանջար, յորմէ եւ Խըրախորուկ,* Թ. 608, *եւ* Մեծախրանջ, Թ. 2739, *եւ* Մզէառանջախրանջ, Թ. 1164, 608։

= *Նշանակեմ զայրս. «Խէրաւք. է խոտ մին որ յորդեալ առաւելու զկաթն կնոջ». Գէորգ։*

**ՃԼԲ.** 1121. Խօլնճան, *գղ.* Galanga։ 3351. Հավլընճան, *գղ.* Galanga։

**ՃԼԳ.** 1328. Կաւբ? 3150. «Քաւագ. *տես* Թախ. (756, «Թախ. *որ է* Քաւագն». *Ամիրտովլաթ. ըստ Պայթարայ՝ Տեսակ մի մեծ Արմաւ։)*

= *Նշանակեմ զայրս. «Թաւլ. է ծառ մին որոյ պտուղն կոչի* Պոռ ծէճլ խուրմաւէ, *յորոյ կեղեւոյն՝ չուան ոլորեալ ի գործ ածեն». Գէորգ։*

**ՃԼԴ.** 1377. «Կաւզբաչ? Հաշէ ծառ *լսուած է. բայց ոչ լսողն եւ ոչ լսածն յայտնի է ինձ»*։ — 1489. «Կօզբարած, Հայէ ծայր *կոչուած է ի Բժշկարանս., եւ այլն։* Կօզբարածն *կը յիշուի եւ ի* Թ. 1487, Կօզու ասբաւէ?

**ՃԼԵ.** 1378. Կաֆաւր։ 3182. Քաֆուր։
[*Երկրորդ տեղւոջս ի մէջ կը բերուին Ամիր-*

տոլվաթայ բանքն, թէ Քաջբերն «Երեք ցեղ է. Ղայբաշբէ, Ըօսագանլը եւ Չէնէ», եւ թէ Խրլ. Պայթարայ գաղղիացի թարգմանիչն Ռէօհէ կ'ընէ փոխանակ Ռօսագանէ. բայց Գէորգ եւս ի բառն Քէաջբեր՝ կը գրէ Գօյունբէ, Բէօղանէ, ուր տպագրութեան սխալ թուի Բէօղանը։ Տես եւ ի թ. 1789 Խաբդաղը Ըօսագան]։

**ՃԼԶ.** 1288 [տպ. 1285], կեծակէ ծաղիկ։ 1389. կեծակէ ծաղիկ։

Նոյն է եւ թ. 1287 [տպ. 1286], չայծակ փուշ, եւ թ. 1285, կայծակ, որ ոչ է «մնասակար խոտ», այլ փուշ, տես Ագաթ. 484, Բ. տպ. ուր կէսք ի Ձեռագրաց կը գրեն կայծակ, եւ այլք կայծակ։

**ՃԼԷ.** 1411. կլմբօղ = ճակնդեղ։ 1819. Ղլըմբօղ = ճակնդեղ։

= կը գրէ եւ Շահրիմանեան. «ճակընդեղ. ի Մուշ՝ կլմբող. այլուր՝ Տակ»։ Նոյնպէս եւ Ինճիճ. Նոր Հայաս. 40. «ճակնդեղ, զոր ի Մուշ կոչեն նաեւ կըլըմբող. որ է Տակ, ըստ Տաճկաց Բանճար»։ Նոյնպէս եւ Գարեգին Վ. Սրուանձտեանց, Մանանայ, 447. «կարմրաբանջար, կլմբօղ. ճակնդեղ»։ Բայց Հ. Ալիշանի պատուական եղբայրն Տ. Սերոբէ ըսած է ինձ, ինչպէս եւ այլ ոմն՝ որ տեղեակ էր վանեցւոց լեզուին, թէ կլմբող՝ կաղամբ է։ Թուի թէ այս կլմբող՝ աղաւաղութիւն է կաղամբոյ բառի, որ կը գտնուի յԱմիրտոլվաթայ Անգէտից անուան, երես 167 verso: «Ղանադեր, որ է ինքն ի կաղամբոյն ցեղերուն». տես զայս եւ ի Հայբուսակն,

թ. 1270. "Դաննաղէտ, որ է ինքն ի կանքաւէ? ցեղերուն„. ի Ձեռագրին Տ. Սեր. Ալիշանի ես ընթերցած եմ կաղամքաւին։ Եթէ այս կանքաւ? է որ կը գրուի ի թ. 1283, կամքաւ? որ եւ կը յիշուի ի թ. 1282, ջնջելի է կամքաւ? ուղիղն է կաղամքաւ = կաղամբ։

**ՃԼԸ.** 1424. "Կղէմ. Տեսակ մի կնիւն է. յիշէ Ռոշքեանն. իսկ Ասար կ'ըսէ ՝ձիլ [տպ. ծիլ] մանր եւ բոլոր„. կը յիշուի կղէմ եւ ի թ. 1437։ — 1883. "Ճղէմն... "կնիւն՝ ճղէմն է, որ ի հեղեղատս բուսանի, մանր ու բոլոր ճիլն„։ = Բուն անունն ճղէմն է ըստ իս, եւ ոչ կղէմ։

**ՃԼԹ.** 1453. Կոճառէ կամ Կոռճառէ = Երիցուկ։ 1522, Կոռճառէ = Երիցուկ։

**ՃԽ.** 651. Կառբէ Եղէնճ։ 1529. Կառբեղէճ [տպ. Կառբեղէէ, այլ ի Շալակին յերես 679, թ. 1529, ուղղեալ է Կառբեղէճ]։

**ՃԽԱ.** 1683. Հէամառէ։ 2155. Յէամառէ կամ Յէամէէ։

**ՃԽԲ.** 1777. Չէբառէ? 1872. Ճբառէ։ = Թերեւս նոյն։ Այլ է ի թ. 2306, Շբառէ, Տեսակ մի թթու Տանձ։

**ՃԽԳ.** 2875. Զավարդ։ 3029. Յրվարդ։

**ՃԽԴ.** 1950. Մամիրան։ 3364. Մամռան։ [Տես պարաբերէն անունն Մամիրան ի թ. 1300։]

**ՃԽԵ.** 2202. "Նէշադ, Նշադ. Ամբրոլվաթ ի Բառարանին գրէ. "Անրաք, որ է Նէշադն, որ է Ալուճն, որ Վայրի Ալու [= պրս. Ալու, Սալոր] ասեն„. իրաւ է որ յն. 'Αδράχη Ալոճ

նշանակէ». [յն. Ἀδράχνη չգիտեմ. կայ Ἀνδράχνη, որ բաց ի գղ. Pourpier, Հայերէն Անմեռուկ կամ խոճկորակ (տես ի Համարն ՀԵ) նշանակութենէն՝ է եւս Adrachné ou Andrachné. sorte d'Arbousier [= Մաթղի], arbuste]: 3374. «Նշ--ղ տես Ատրաք», որ ի կարգին. Թ. 188, գրեալ է. «Ատրուք ատրաք? Ալոճի պտուղ, ըստ Սեբաստացւոց» [իցէ՞ արդեօք՝ ըստ Ասարայ Սեբաստացւոյ]:

= Նէշ--ղ կամ Նշ--ղ, զատ զատ նշանակեալ, թուի պարսիկ բառն «Նէշշ--. Տեսակ ինչ Շլորոյ. որ եւ ասի Նէշշէ, եւ Ալ--յէ Պ--չէրէ [= Սալոր Տապարաստանի]». Գէորգ: Նոյն է թերեւս եւ Նէշ-- ի Թ. 2200: Պարսկերէն կայ եւս «Նէշ--ղ. է անուն դեղոյ իրիք, զոր կախուն ի բերանի. եւ է օգտակար ցաւոյ ատամանց եւ բերանոյ». Գէորգ:

**ՃԽԶ.** 2282. Շ-ն Ս--ր: 3379 Շն-խ--ր:

**ՃԽԷ.** 2304. Շէրխէշ-: 2314. Շէր--խ--ժ, Շիր-խ--չէ:

= Մի եւ նոյն պարսիկ բառն է, Շէր-խէ-չէ, Շէրխէ-շ-, Սէրխէշէ, ըստ Գէորգայ՝ նոյնանիշ ընդ Կէզէնկէ-պէյն [= Գազի կամ Մոշւոյ մեղր], որ է ըստ մեզ Գազապէն կամ Գազպէն:

**ՃԽԸ.** 2326. Շմ---էլ--է: 2377. Շմ---էլ--է:

= Շմ---էլ--էն նոյն կը կարծուի ընդ Թ. 2280, Շ-ն-էլէ = Հոտիսոյ. լաւ եւս թուի ինձ նոյնացնել զայն ընդ Շմ---էլ--է:

**ՃԽԹ.** 2371. Շ--+--ֆ-յ? 3382. Շ+--ֆ-?

= Պրս. Շէ+է--ֆէ կամ Շէ-+է--ֆէ, Ծաղիկ. Չէչէկ. կ՚ըսէ Գէորգ. Նոյնպէս եւ յի-չ+է---ֆէ, եւ յ7 նշանակութեան Լ-- բառի:

**ՃԾ.** 2586. «Պ--պ-ւ?... ինքն նման է ճավզպուէմին»: — 3093. «Փ--ֆլէ... Ամիրտոլվաթ գրէ. «Ֆ--ֆ-ւ, որ է Բ--բ-ւն, ի Հնդկաց կու գայ, զէտ ճավզպուէ է...», գղ. Arec»:

= Պրս. «Փ--ֆէլ, էր իր ինչ՝ որ լինի ըստ չափու քանակութեան ճէվզ պէվ--յէ, զոր արաբացուցեալ Ֆ--ֆէլ ասեն. եւ է սա տեսակ իմն դեղոյ». Գէորգ:

**ՃԾԱ.** 2896. Վէֆն: 3265. Ֆէկ:

= Վէֆն է գղ. Vesce ընդեղէնն, որոյ պարսիկ (կամ արաբերէն) գրութիւնն է Ֆէյկ. «Ֆ--ւ, էր սեաւ ունդն այն որ կոչի Ֆէյկ, եւ հայերէն Վէֆն, որ է խար եզանց եւ ուղտուց. որ եւ ասի Ֆէնէ». Գէորգ:

**ՃԾԲ.** 3056. Փէշֆէշ--կ: 3078. Փշֆշ--կ:

= Չգիտեմ թէ նո՞յն է եւ Թ. 3106, Փ--տ--կ կամ Փ-ֆ---կ, որ կ՚ըսուի եւս Ցորենուկ:

Տես եւս զհետեւեալսդ անփոփոխ գրութեամբ ի կարգի այլեւայլ նշանագրաց:

**ՃԾԳ.** 1177. Ծ---կ-նֆ--: 1293 Ծ---կ-նֆ--:

**ՃԾԴ.** 1249. Կ-ընֆ--ղըէ: 3085 Կ-ընֆ--ղըէ:

**ՃԾԵ.** 2490. Օյէ Պ-ճ--կ: 3244. Օյէ Պ-ճ--կ:

## Դ.

*Քանի մի Հայ եւ Օտար բուսոց հոմանիշք:*

**ՃՄՁ.** 65. «Աղուիճակ. նոյն է ընդ խուրասանէկ՝ ըստ Հին Բժշկարանի. սա ալ նոյն համարուի լտ. Staphisagria [տպ. Staphysaria], փ. Staphisaigre [տպ. Staphysaigre], որ ի յոյնէն առնուած են, յորում Ստաֆիս ագրիա՝ ըսել է Լեռան խաղող, անոր համար ոմանք ի մերոց Խաղողախոտ կոչեր են, բայց չեմ հանդիպած ի գիրս. Արաբացին ալ նոյնպէս կ'ըսէ Զէպիպ էլ-ճէպէլ. այլ եւ Զէպիպ պէրրի, որ է գլխոյ հունտ կամ Ջամիչ գլխոյ, այսինքն ոջլի դեղ ըլլալուն համար... փ. Herbe aux [տպ. au] poux. իսկ Պարսիկք կ'անուանեն Մէյ-ֆէզէճ կամ Մէյֆէզաճ», եւ այլն: Եւ ի թ. 1989, Մավիզաճ կը յղուի յԱղուիճակ:

= Ա. Բժշկարանի վկայութիւնն՝ որ չի յիշուիր ի տեղւոջդ, կը գտնուի ի թ. 2613. «Սիռան մի չափ Աղուիճակ՝ որ է խուրասանէկն՝ ի ներքս խառնէ, եւ յաչքն դիր»: Նոյն բժշկարան կ'ըսէ եւ յերես 143. «Աղուիճակ, խուրասանէկ, Մաննեխ, Մարձակ, աղա՛ եւ մեղրով յարո՛». տես զայս ի թ. 2022: Ես զխուրասանէկ հասկացած եմ իբր թուրք բառն խօրասանի, որ մերթ Եղեւին կը թարգմանուի յայլ Բժշկարանս, մերթ Եղեւնահունդ կամ Եղեւնի սերմ: Տես ի թ. 642. «Եղեւին՝ Ճէհ... հունտն է խուրասանն», եւ «Ճէհ, որ է խուրասանին. թուրքն Եշաւշան ասէ»:

— "Խորասանի, որ է Եղեւնահունդն հայ բառով. եւ յարապն վահշիզաք կու ասէ". Ամիրտ. Անգ. անպ. 129: — "Թարինջ [պրս. դէրէմնէ-ծանէֆ], Խորասանի, Եղեւնի սերմ", Թրգմ. Դեղոց: Տես դարձեալ Խորասանի = Եղեւին ի Հայբուսակ, Թ. 1126, յորում կը զանազանուի Խորասանիէ = Աղուինձակ ի Թ. 1127, որ ի Թ. 2854 կը գրուի Խորասանի = Աղուինձակ. տես եւ Խորասանու հունտ ի Թ. 2704 [տպ. 2804]: Այս Եղեւինն՝ է գղ. Santonine կոչուած բոյսն, տեսակ մի գնդածաղիկ (գղ. Armoise. տես ի Հաւմարն Դ.Ձ.), ըստ Լիննէի Artemisia santonica, եւ որոյ համար կ'ըսէ Լիտրէ, թէ "les semences et sommités sont vermifuges", նոյն անուամբ Santonine[1] կը կոչուի ըստ Լիտրէի եւ տեսակ մի "Matière cristallisable, amère et âcre, isolée des sommités fleuries de la santonine". Նոյնպէս կը գրէ եւ Emm. Le Mavut, Botanique, երես 72—73. "Ces capitules (զանազան գնդածաղկանց) renferment une huile volatile âcre, une substance cristallisable, inodore, peu soluble dans l'eau, légèrement amère, nommée Santonine, une résine, et divers sels". Աւասիկ մեր բժշկարանաց Եղէնահունդն կամ Եղէնի սերմն, զոր Ա. Բժշկարանն կը կոչէ այլով անուամբ Աղուէճակ, անշուշտ քանզի սերմն՝ աղի նման կը բիւրեղանայ (տես վերագոյն երկիցս զբառն cristallisable): Թուի ինձ թէ նոյն Աղուէճակ է՝ որ Աղուէճակ գրութեամբ կը գտնուի յՈսկեբերանի Մեկ-

Նուրէան Խուայէայ, ԾԱ, 370, իբր գղ. Sel gemme[2]: "Երկինք իբրեւ գծուխ հաստատեցան„. Ակիւղաս ասէ. "Երկինք իբրեւ գծուխ պատեցան„. Թէոդիտոնն ասէ. "Իբրեւ զաղ մածցին„, զվանագոյն ականագոյնն երկնից՝ աղ-ճամէյի նմանեցուցանէ կերպարանաց: Իսկ Խօրասանէ ըսուած է անոր համար որ ի հին ժամանակս ի Խորասան աշխարհէն Պարսից կու գայր ընտիր տեսակն. Կելսիոս, Հ. Ա, 413, ի մէջ կը բերէ զգրեալն ի Կաստելլեայ (Castell, Lex. Pers., p. 264) ի բառն Տիրէմնէ, "Diramne; Absinthium Ponticum [= Աւշինդր Պոնտական], quia circa Pontum frequens, unde semen contra vermes colligitur, et ex Chorasan deportatur Halebum. Ital. Seme santo[3]; Lat. Sementina„. ընդ որում համեմատէ եւ զԳ.էորգայ գրածն. "Տիրէմնէ[4], է խոտն այն՝ որ Թուրքերէն ասի Խավշան օթի. եւ արաբերէն Շէյհ, Թէպէտ է գառն քան զՕշինդրն, բայց քան զայն սակաւ է կանոնական զօրութիւն սորա„: Տեսանք որ մեր Բժշկարանք ալ զնշուին կը կոչեն Շէհ[5] եւ Խավշան: — Զգիտեմ ուր գտած է Հ. Ալիշան թէ Խորասանէ = գղ. Santonine է գղ. Staphisaigre որ բոլորովին այլ ինչ է[6]:

Կան եւ այլ քանի մի անճշդութիւնք ի նմին թ. 65: Յունարէն Σταφὶς ἄγρια է Չամիչ վայրի. արաբերէն Զէպիպ էլ ճէպէլ կը թարգմանուի Չամիչ լերին (ինչպէս ուղիղ կ՚ըսուի ի թ. 2444, Լերան Չամիչ). Զէպիպ ճէպէլ է Չամիչ Վայրի, իսկ պարսկերէն անունն կը

գրուի ի Գէորգայ Թառարանին Մէճէյղէ, ի Մէ-ճէյղ բառէն՝ որ Ջամիչ կը նշանակէ։ Խադադա-խօփն ալ ի Ռուշքեանի բառագրոցն է կարծեմ, որ կը գտնուի ի Նոր Հայկզ. Խաադախօփ գրու-թեամբ։ — Ի Թ. 976, ևթէ Խադաղ Լէանէ սոուգիւ գզ. Joubarbe des toits, յնչելի է "Ցեռ Աղուինճակ"ն, զոր ըստ իս՝ Հ. Ալիշան սխալմամբ նոյն կարծած է ընդ Ջամիչ լերին = Staphisaigre։

Ծանօթութիւնք.

1. Տես ի Լիտրէ և Semencine, Semen-contra, տես և ի Ցաւելուածին Barbotine, երեքին ևս "Եղեւնի սերմն, Խօրաանէ", ըստ Լատինեանի։

2. "Ou donne le nom de Sel gemme au sel fossile; . . . il se trouve sous une forme solide, concrète et cristallisée en amas immenses, dans plusieurs régions du globe". Buffon, տես Gemme ի Լիտրէ։

3. "Եղեւնի սերմն, որպէս ռամկօրէն Խօրա-անէ. իտալերէն Seme santo". Նոր Հայկզ. ի բառն "Եղեւին"։

4. Այս է զոր տառադարձութեամբ Դըրմանէ գրած է Պետրոս Քալանթարեան ի Թ. 604, և Հ. Ալիշան չէ իմացած. Դըրմանէ? Սերմն Santo-nicum լեզուահամ բուսոյ"։

5. Կայ Շէհ Թարդէ, որ և Հայերէն կը կո-չուի Թուրք Եղէնի. "Եղեւին, որ կոչի Թուրք Եղեւին կամ Շէհ Թարդէ". Բժշկ. Ա, 143 (տես զայս և ի Հայբուսակ, Թ. 642, ուր գրեալ է Թուրք Եղեւին). և դարձեալ. "Թուրք Եղեւին, որ է բարձունենեկ", Մխ. Հեր. Խե, 133. բուսած է նաև Տէրմանայէ Թարդէ (որ ի Հայբուսակին, Թ. 642,

գրեալ է Տարմինայէ Նարդէ)։ Կայ եւ Շէհ Էրմանէ, որ «ի Հայաստանեայց երկրէն գայ» (Հայբուսակ, անդ). սա կոչուած է նա եւ Հայ Շէհ (Հայբուսակ, թ. 2299), այլ լաւ եւս էր ըսել Հայ Եղեւին։ Թուի ինձ թէ եւ Շնճարմի կամ Շէնճարմի? ի թ. 2339 նոյն Հայ Շէհն է, որ սխալ գրեալք են փոխանակ Շհ արմի, Շէհ արմի = Շէհ Էրմանէ. Համեմատէ ընդ Թրգմ. Գեղոց. «Բընջասիդ [պրս. Պէրէնճասէփ] եւ Շէհ արմի [Զ ջեհարմնի], Եղեւին»։

6. Staphisaigre կը կոչուի եւս գղ. Pédiculaire, Herbe aux poux, որ սխալ գրեալ է puces ի թ. 3383։ Herbe aux puces ռամկօրէն անուն է Conyze եւ Psyllion բուսոց. տես գերկրորդս ի Լիտրէ, ի բառն Puce, 4։

**ՃԾԵ.** 153. «Աբէ-ձմորէնէ = յն. *Βράθυ* [տպ. *Βράθυς*] = լտ. Juniperus Sabina = Գ.ի»։

= Գաղիանոսի բառք են որ կը գրեն «Բաստոս, Առիւծմորենի», Գաղ. Ա, Գ։ — «Բաստրոս, Առիւծմորմենի», Գաղ. Դ։ — «Բրաստոս, Առիւծմորմենի», Գաղ. Բ։ Յոյն բառն ուղղելի է Բատոս, *Βάτος*, գղ. Ronce = Մորենի, որոյ մի տեսակն թուի Առիւծմորենի, թերեւս յն. *Ἰδαία βάτος* [= Իդա լերին Մորենի], որ եւ լտ. կ'ըսուի Rubus Idaeus, գղ. Framboisier, պտուղն Framboise. այժմ Նորաճնար բառին Արթայաճուր կոչեցեալ առ մեզ, թուրքերէն Ըզմավուլա (Հայբուսակ, թ. 244)։ Իսկ յն. *Βράθυ*, լտ. Juniperus Sabina, որ է գղ. Sabine, հայերէն կ'ըսուի Ցրդի, ըստ Գաղիանոսի Բառից՝ Գ.ի։

Ի Թ. 842, Ժօխ, Framboise պտուղն կը կոչուի թուրքերէն Ֆրէնկ Իւզիւմի, Կրատագուլա. բայց Ֆրէնկ Իւզիւմն է գղ. Groseille, ինչպէս կը գրուի ի Թ. 1459: Կրատագուլա (Framboise? Groseille?) կայ եւ ի մեր Բժշկարանս եւ յայլ գիրս Ստորին Հայերէնի. "Կատագուլէ տերեւ շաղցո՛, եւ դի՛ր, եւ ճիճն փոխէ՛,, Բժշկ. Ա. (Հայքօս-սէ, Թ. 1538): — "Ա. [այսպէս դատարկ թողուած է ի Ձեռագրին]. ինքն ծառ մնէ որ Թուրքն Կրատագուլէ կ'ասէ. եւ տերեւն Մրտի տերեւ կու նմանի, եւ միրգն նման է Ցրդոյ [Չ ծրթոյ] պտղին,, Ամիր. Անգ. անպ. 12:

"Ծառ մի կայ ուր կայ հով ջուր,
Պըտուղն է իւր կարմիր զերդ հուր,
Արի՛ գնա՛ կե՛ր, էր կաս ի լուր.
Թո՛ղ է լեղի, կե՛ր քան զապուր:,,

Հանելուկք վերագրեալք Ներսէսի Շնորհալւոյ, ուր կը մեկնուի Կրատագուլայ: — Ի Հաւաքման ուրեք Գաւառական Բառից (22 Ս. Ղազարու) գտած եմ դարձեալ. "Գրատագուլայ կամ Հաղարջ, Ֆրէնկ Իւզիւմի,,:

**ՃՄԸ.** 1166. Ի բառն Խոտոսէ, "Առուոյտ Բժշկական = լտ. Trifolium Medicum,,:

= Trifolium Medicum կը թարգմանուի Առուոյտ Մարական. նոյն է եւ լտ. եւ իտ. Medica, որ յն. կ'ըսուի Μηδικὴ πόα = Մարական խոտ, կամ լոկ Μηδικὴ = Մարական, գղ. Luzerne, ըստ Լիննէի Medicago sa-

tiva. Իմինեան զLuzerne կոչած է Մարական Առուոյտ, իսկ ես՝ Մարառուոյտ, որ է յինէն յարմարեալ բառ: Տես ի թիւն 158 եւ 173 Medicago, Luzerne (տպ. երկիցս Luzèrne). տես եւ ի թ. 2489 Medicago sativa:

**ՃՄԹ.** 302. «Բան» = լտ. Myrobalanum [տպ. Myrobalanum] = գղ. Myrobolan = արաբ. Հէլէյլէ.:

= Myrobolan կը կոչուին Սալորոյ նման բազմազգի պտուղք՝ որ ի բժշկութեան կը գործածուին: Իսկ Խորենացի յԱշխարհագրութեանն, երես 612, Երջանիկ Արաբիոյ անոյշ խնկոց կարգին կը յիշէ զոյգ ընդ Բալասանի եւ Յասմկան զԲան, որ գղ. Ben կը կոչուի՝ առաւել յարաբականէն Ban. կը գրէ M. Devic, "Ben; arbre nommé par les botanistes Moringa obeifera, dont la semence fournit une huile pour la parfumerie. C'est le ban des Arabes, souvent cité par les poëtes„ եւ այլն: Ի թ. 2494 կը յիշուի Պանէ Ճէր ի Բժշկարանաց: Ի սմին տեղւոջ կը գրուի գղ. Béhen [տպ. Behen] = Moringa, զոր ուղղելի է Ben. զի Béhen = արաբ. Պէհմէն, այլ ինչ է. տես զայս ի թ. 3077: "Il ne faut pas confondre Béhen avec Ben, comme l'a fait Richardson„ եւ այլն, կ՚ըսէ եւ M. Devic. տես առ Béhen եւ Ben: — Myrobolan = յն. Μυροβάλανος, նոյն ձայնիւ կոչուած է Միրոբալանոս ի Պատմութեան Աղեքսանդրի, 145, որ չգտնուիր ի Հայկազեանն:

**ՃԿ.** 369. "Բողկ = լտ. Raphanus = = գղ. Radis":

= Ճշդագոյն եւս էր կարծեմ կոչել գղ. Raifort:

Ի բանին Ամիրտովլաթայ, անդ. "Ինքն [Բողկն] երկու ցեղ կու լինի. մէկն Վայրի է, որ է Աֆէոս? [Աֆրոսղ?], ...եւ մէկ Ածվոցն է", Աֆէոս է յն. Ἄπιος, ինչպէս կը գրուի ի Թ. 832: Ի վերջին տեղուոջս կ'ըսէ Ամիրտովլաթ թէ "Աֆէոս [յն. Ἄπιος, գղ. Espèce d'Euphorbe] է Թուրքերէն Պօսաղուլախն, եւ Հայերէն Ժախոսկ, եւ Կաղնուկ այլ կ'ասեն. եւ բժշկապետացն ոմանք Աշխէս [յն. Ἰσχάς, գղ. Euphorbe ou Ésule] ասեն, եւ ոմանք Խամալանէս [յն. Χαμαιβάλανος, գղ. Espèce de Tithymale] ասեն, եւ ոմանք Րաֆանէս ադրէա [յն. Ῥαφυνὶς ἀγρία, գղ. Revenelle, sorte de Rave sauvage], որ թարգմանի Վայրի Բողկ", Չգիտեմ թէ ինչպէս կաղանչանն (գղ. Tithymale), կամ կաղանչանան տեսակք (գղ. Euphorbe Ésule), կարեն նաեւ կոչուիլ Վայրի Բողկ: Ջիարդ եւ իցէ՝ Աշխէս է յն. Ἰσχάς (անծանօթ է ինձ Հ. Ալիշանի գրածն Ἰσχάθα)· Րաֆանէս ադրէա, "որ թարգմանի Վայրի Բողկ", է յն. Ῥαφανὶς ἀγρία = Բողկ Վայրի, եւ ոչ թէ Ὀρεινὴ ἀγρία, զոր չեմ ճանաչեր:

**ՃԿԱ.** 1016. "Լտ. Chamaesice = գղ. Figuier sauvage":

= Լատին բառդ անշուշտ նոյն է ընդ

յն. Χαμαισύκη [= գետնոյ թզենի], գղ. espèce d'Euphorbe։

**ՃԿԲ.** 468. «Գէրէրէ, Խորենացւոյ Աշխարհագրութիւնն Սիւնեաց երկրի բերոց մէջ յիշէ «Մուրտ եւ Գէրէրէ եւ Նուռն»․ զոր Սէն-Մարտէն փռանկ թարգմանեալ է Geranium. Հին Բժշկարանն զուգէ «Գերերի՝ Քէմէ»․ Նոյնպէս եւ Ամիրտովլաթ. «Քէմէն՝ որ է Գէրէէ», փոխանակ գրելու Գերերի։ Ռոշքեանն ր տառի տեղ դ կարդալով Գէդէրէ գրէ, եւ ըստ իմաստին (մօտ ի գետ) համարի Potamogeton, փ. Potamot [տպ. Potamon] բոյսը, եւ կ'ըսէ. «Ազգ Բալասանի, բարձրագոյն քան զայլս, թաւ կեղեւով. Eumecest?» Մերոց յիշեալ Քէմէն թուի Քամահն Արաբաց, զոր տեսանք գետնախնձոր կամ Տոմալան։ — Բայց այս ամենայն կ'ունայնանան՝ եթէ փոխանակ Գ տառի Դ կարդանք Դերերի. զի այս անուամբ կոչեն Արաբացիք ուրիշ բոյս մի, Aristida obtusa, ի ցեղէ Սիզոց»։

= Շատ հետաքրքրական է Գէրէրէ բառի պատմութիւնն։ Սա որ կը գտնուի յԱշխարհագրութեան Խորենացւոյ (տպ. Ս. Ղազարու, 1865, երես 609), յեղեալ է ի լատիներէն թարգմանութեան Վիստոնեան եղբարց (տպ. 1736, երես 360) Geranium[1], անշուշտ ի նոյնութենէ գէր եւ Ger ձայնից (տես եւ ի համարն ԼԱ Սակուղաջուր եւ Sagapénum.) — ի գաղղիերէն թարգմանութեանն հրատարակելոյ ի Սէն-Մարտէնէ (Mémoires historiques et géographiques sur l'Ar-

ménie, 1819, Հ. Բ., երես 365) նոյնպէս Geranium, առեալ ի Վիտոնեանց. — յԱշխարհագրութեան Խորենացւոյ (տպ. Ս. Ղազարու, 1881, երես 33) կը գրուի. "լինի [ի Սիւնիս] մուրտ եւ. Երերի եւ նուռն ազնիւ". ի ծանօթութեան կ'ըսուի, "Գէրէրէ ըստ այլոց, զոր հին Բժշկարան ասէ լինել քէմէ". գաղղիերէն կը թարգմանուի (անդ, յերես 44) kéréri, եւ ի ծանօթութեան կ'ըսուի. "kéréri, d'après le dictionnaire de la médecine arménienne, correspond au kimé, qui est probablement le grec κῆμος, une herbe magique chez les anciens": — Նոր Հայկազեանն ալ անդստին յամէ 1836 գրած էր. "Գէրէրէ (կամ Գէրէրէ), պտուղ ինչ եւ ծառն". ըստ որում եւ Առձեռնն. "պտղոյ ու ծառի անուն":

Անտարակոյս եթէ միայն ի Խորենացւոյ Աշխարհագրութենէն ճանաչէինք զԳէրէրէ, հանգոյն Վիտոնեանց, Սէն-Մարտէնի եւ Նոր Հայկազեանի պիտի անկարանայինք գիտել զայնորիկ որպիսութիւնն, եւ յայլեւայլ մոլար կարծիս պիտի զառածանէինք (Geranium, պտուղ, ծառ): Բայց որ օր գտայ զԳէրէրէ եւ ի Պատմութեան Աղեքսանդրի, երես 127 (գիտէի թէ հրատարակեալ էր յոյն բնագիրն, բայց ես չունէի զայն) եւ յԱ. Բժշկարանի, երես 143, "Գերերի, քէմէ", ծնաւ յիս ակնկալութիւն որ պիտի յաջողէի վերջապէս իմանալ թէ ինչ է Գէրէրէ: Եւ ահա յամին 1877 ի M. Devicի Բառարանին հանդիպեցայ ի բառն Potiron. "Truffe [արա-

բերէն], kamā„. այս էր ուրեմն այն Քէմէ՝ յն. χῆμος Դիւթական խոտ կարծեցեալն՝ զոր ի շատ ժամանակաց կը խուզէի կ'որոնէի, եւ գրեցի անմիջապէս յիմ Գաղղ.-Հայ. Բառագիրս. "Truffe, Գէրէրէ, Բողբոջ„, նշանակելով զամենայն վկայութիւնս երկոցունց բառիցդ[2] մինչեւ որ Աղեքսանդրի Պատմութեան յոյն բնագրին եւս ծանօթանալով՝ լիուլի վստահ եղայ որ Գէրէրէ ստուգիւ է արբ. Քէմէ եւ յն. Ὕδνον, այս ինքն գղ. Truffe: Թէ որչափ յարգ գտաւ իմ գիւտս, բաւական կը յայտնեն զայն երկու Գաղղիերէն-Հայերէն Բառարանք որ լոյս տեսան յետ իմ Բառագրոց. մին Նախամեծար կ'ընտրէ զԼէմնեանի ինքնահնար բառն Գետնա-ունկ, միւսն զArroche բանջարոյ հայ անունն յափշտակելով՝ Բոյլ կը կոչէ զTruffe, քանզի Հ. Համազասպ Սափարեան ալ (Բուսաբանութիւն, Ս. Ղազար 1884, երես 233) այնպէս կոչած է. իսկ Հ. Յակովբոս Տաշեան՝ թէպէտ եւ գիտէ թէ Գէրէրէ է յն. Ὕδνον, սակայն տեղեկութիւն չունելով որ ես 7—8 ամօք յառաջ գրած եմ "Truffe. Գերերի„, չորս գաղղիերէն հոմանիշ կը դնէ Ὕδνον բառի, այս ինքն Hydne, Urchin, Nignache, Érinace[3], զորոյ զառաջինն[4] հազիւ գիտէի, ոչ իբրեւ Truffe, այլ իբրեւ այլ ազգ մի Սնկան. իսկ զմնացեալ երիսն ոչ միայն ես չեմ ճանաչեր՝ այլ եւ ոչ Լիտրէ գլխովին: Այժմ Հ. Ալիշան կ'ըսէ թէ Գէրէրէ ոչ է Գէրէրէ, այլ Դերեւի, բառ արաբացի, տեսակ մի Սեղ:

Տեսանենք եւ զգրածն Ռոշքեանի. "Գէրէրէ [այսպէս կարդացած եմ ես, եւ ոչ Գէորէրէ]. Ազգ Բալասանի բարձրագոյն քան զայլս, թաւ կեղեւով, Eumeces [Չ Cumeces]. Խ. Աշխ. "լինի ի նմա մուրտ եւ Գէրէրէ եւ նուռն„: Eúmeces, իտալերէն Eumece, "sorta di Balsamino, maggiore degli altri, e che ha la scorzia liscia„, կ'ըսէ Pasini. Չգիտեմ որպէս ստուգած է Ռոշքեան թէ Խորենացւոյն Գէրէրէ՝ Պլինիոսի Eúmecesն է, ազգ Ապրասամ ծառոյ:

Ծանօթութիւնք:

1. Յայտ է թէ լտ. Geranium, գղ. Géranium, ծաղիկ մի է, զոր մեք այժմ կը կոչենք խորդենի, կռնկենի, [illegible] ըստ թուրքաց: Տրապիզոնեցւոց Մլմլուկ ծաղիկն Géranium է, կ'ըսէ Հ. Ալիշան ի Թ. 2067:

2. Աղեքսանդրի Պատմութեան (Սուտ-Կալլիսթենէս) վկայութիւնն յիմ Բառագիրս՝ ուղղելի է. "Ծովային քաղէին ի ծովէ անտի. եւ յերկրէ [տպ. յերկիր]՝ Գէրէրէ — որ առ մեզս լինին — որ ունէր լտերս քան եւ հինգ, քաղեցին եւ եսուն մեզ„, երես 127:

3. Ուսումնասիրութիւն Սուտ-Կալլիսթենեայ Վարուց Աղեքսանդրի, Վիեննա 1892, երես 83: Նոյն է եւ ի Հանդէս Ամսօրեայ 1891, Յունիս, երես 173 Ա—Բ:

4. "Hydne; champignon à chapeau irrégulier, hérissé en dessous d'aiguillons mous, dont presque toutes les espèces sont alimentaires„. Լիտրէ, ի Յաւելուածին: — Alex. Ὕδνον բառի համար գրած է գղ. Truffe, sorte de champignon. Լիտրէ երկբայել թուի, քանզի կ'ըսէ ի նմին տեղւոջ (Hydne). "Hýdnon,

que l'on croit être la truffe". Բայց Սուտ-կալլիսթենեսի Հայ թարգմանութիւնն եւ Ա. Բժշկարանին "Գերերի = Քէմէ" կ'արդարացնեն զAlex. եւ կը ցրեն զտարակոյս Լիտրէի։

**ՃԿԳ.** 950. երես 224 [տպ. 124]. "Իթ-պուրունու = Շանխաղող":

= Թուրքերէն բառ՝ Մասուրն է, այս ինքն գղ. Gratte-cul[1], պտուղ Églantierի. "Մասուր, եւ թուրքերէն իթ պուրնի կ'ասեն", ըստ Ամիրտոլվաթայ. տես ի թ. 1987։

Ծանօթութիւն.

1. Gratte-cul, իթ պուրնու (Աւգեր). կէօտ պուրնու (Իւմին)։

**ՃԿԴ.** 809. երես 196. "Մէշմէշ = թութիայի էրմէնի":

= Կարդա՛ նէ-ֆֆ-աճէ էրմէնէ (Պօղաճ.), որ յարաբականէն կը թարգմանի Հայ խնձոր, այս ինքն Ծիրան։ Տես ի թ. 1198, նաֆ-աճ էլ-էրմ-ենէ։

**ՃԿԵ.** 2108. "Մուշէ, Մուշամ-ալ-յէրէ = գղ. Bruyère [տպ. Bruyére]":

= Ըստ իս Մուշէ = գղ. Tamaris. Մու-շամ-ալ-յէրէ = գղ. Bruyère, որ կ'ըսուի եւս կարծեմ Ցախ։

**ՃԿԶ.** 2871. "Նասրին = Ջանկին ճուպան[1] [տպ. շուպան[1]. նոյնպէս եւ ի թ. 3262, եւ ի Ցանկին՝ երես 694] = լտ. Rosa Eglanteria = գղ. Églantier։ Տես եւ Մասրենի":

= Գղ. Églantier Մասրենին է, ինչպէս կը գրուի ի թ. 1987. իսկ Նասրին՝ է պրս. Նէս-

-դէյն, որ կ՚ըսուի նաեւ Հէ–լէ Նէ–րէյն, Նէ–զէրէյն, Մէ–շ–քէյն-վէֆադար, գղ. Rose musquée. տես M. Devic ի բառն Nizeré. Գէորգ կը գրէ. «Նէ–զէրէյն, Ծաղիկ ինչ սպիտակ եւ անուշահոտ, եւ է նման վարդի՝ որ զամիսս երիս կամ չորս շարունակաբար փթթի. ասի եւ Հէ–լէ Նէ–րէյն»։

Ի Թ. 1987 կը կարդանք. «Իրմէ [ի Սալահորեցւոյն] առաջ Թլկուրանցին այլ երգեր է.
«Նա խնդալով ցնծայ եւ ուրախանայ այն Մասրենին». ոչ Թլկուրանցին (Յովհաննէս), այլ Կոստանդին Երզնկացի, որ կ՚ըսէ յիւր Տաղին «Այսաւր եղեւ պայծառ գարուն, ցընծան ծաղկունք եւ յորդորին».

«Նա խընդալով ցընծայ 'ւ ուրախանայ այն Մասրենին,
Ու մըտէ ի բուրաստան քան (sic!) ժողովէ զայլ ծաղկընին.
Ժողովեցան զինչ [Զ զինձ] որ ծաղիկ կայ ի յերկրի գարնանային,
Եւ խորհուրդըս չարութեան եւ նենգութեան վարդին կամին»։

Մեր Հաշրէվարդն (Հայբուսակ, Թ. 1583) թերեւս է այս Հէ–լէ Նէ–րէյն, գղ. Rose musquée. Գր. Նարեկացի ունի Հաշրէվարդ ի Տաղին Յարութեան Ղազարու, երես 471 (տպ. Ս. Ղազար, 1840)։

«Փունջ սուսին սաղարթ ստեղնաշիտակ տնկոցն խուռն Հաշրէվարդին մանուշկաբեր բիւրին».

ունի եւ առանձինն Հուղրէ (ինչպէս եւ պրս. լուկ նէուրէյն) ի Տաղին Ծննդեան, երես 465.

"Ի ծամին խեղեփին Հուղրէ":

Ռամկական բանաստեղծութեանց մէջ կը գրուի եւ Հուղուրվուրդ, զոր Հ. Ալիշան նշանակած չէ.

"Գոյնըզգոյն ծաղկունք եկեալ աւետարեր
եղեն Պիւլպիւլին,
Մանուշակ ու Հուղուրվուրդ մատուցանեն, հա՜յ,
կանանչ Թըփին.
Ուրախանան հետ կարմիր վարդին, հետ ճեր-
մակ վարդին".

Տաղ "Ար'եկ որ մըտնունք պաղչան": —

"Հուղուրվուրդն այլ բոլոր զգունովըն դեղ եւ
աղւոր,
Կոկոնին հետ միաւոր ի մէջ նոցա փառաւոր".

Տաղ "Արեւելք առաջին" (յոյժ սխալագիր):

Ծանօթութիւն.

1. || Զտպեալն "Զառին ղատահ" ուղղած եմ "Զառին գատահ": Պէտք է ուղղել "Զառին ղա-տահ", բստ սովորական տառադարձութեան Ամիր-տովլաթայ: Տես "Դախլաթ ըլ համղա" ի ԻԶ, ծան. 1: — "Ղատան չիչակի" ի ՄԺ: — "Հա-տաղէ քըմանի" ի ՄԻԸ, եւ այլն: || "Jonquille. Զէրրէն գատէհ. Զէրէն. Գուլէ... Էմին: Jonquille է ծաղիկ յազգէ Նարգիսայ, գղ. Narcisse, ինչ-պէս կ'ըսէ եւ Հ. Ալիշան ի Թ. 3262: Գէորգ

կը գրէ Արատաքէրտէ ծաղկի համար. "Էր ծաղիկ իմն ի տեսակէ ծաղկանն Ջէրրէյն քատէն„ եւ այլն:

**ՃԿԷ.** 2182. "Նարտէս ծառ. Այսպէս կարդացուած է Ս. Բարողի Վեցօրէից մէջ (Երես 101). Բայց ըսածն կարծել տայ թէ Նարդէս կարդալու է եւ Նարգիլակ [այս ինքն գղ. boco] իմանալու„:

= Ուղիղ է Նարթէք, եւ կը նշանակէ գղ. Férule, ինչպէս թարգմանած է Fialon յերես 410: Տես եւ ի Հոյքաստան, թ. 2539, "Ferula persica = Նարդէս պարսկային„, որ ապա սխալ կը գրուի Նարթէքս փոխանակ Նարթէք: Նոյնպէս ի թ. 1945, տող 6, "Նարգիւից ցեղէն (Ferula)„, ուղղելի է Նարթիւից: Տես անդ "Նարդէս = Ferula„ եւ ի թ. 361: Նարթէք է յն. *Νάρθηξ*, գղ. Férule.

**ՃԿԸ.** 77. "Շէմամ կոչուած գեղեցիկ Զմերուկն„: — 2047. "Զմերուկի տեսակ մի, իբր Շամամ„: — 2264. "Շամամ, փոքրիկ եւ խատուտիկ Սեխ, ըստ ոմանց Զմերուկ„: — 2734. "Պթեխ, Շամամ, խարբզակ, հասարակօրէն Զմերուկի վերաբերին„:

= Շամամն տեսակ մի է Սեխոյ, եւ ոչ Զմերկի. պրս. Շէմամէ, որ եւ "Տէսթէնպույ. Պտուղ իմն որպէս փոքր Սեխ, որ լինի խայտ եւ անուշահոտ. Թուրքերէն Եայլաղը„, Գէորգ: Կ'ըսէ եւ Ամիրտոլվաթ ի թ. 77. "Տաստանպույէ, Թուրքերէն Լանկուած կու ասեն...: Ինքն փոքրիկ զէտ Սեխիկներ է... Շամյիքն Շամամա ասեն. եւ ինքն

զէտ Ղամամկներ կատուկ է եւ անուշահոտ է„: Գէորգայ Եօյլուղը՞ բառն է զոր Ամիրտոլվաթ կը գրէ Լանդուզ՞, եւ Հ. Ալիշան թուի թէ ի Եըլան = Օձ բառէն ստուգաբանելով զայն՝ կ'ուզէ ուղղել Իէլանդուզ՞ ի թիւսն 77 եւ 2928. Նոյնպէս եւ ի Ցանկին. "Եըլանդուզ՞. տես Լանդուզ՞ [տպ. Լանդղաճ]„: — Նոյնպէս եւ Խարբըզանի Սեխ է, եւ ոչ Ձմերուկ. տես ի համարն կ:

**ՃԿԹ.** 2268. "Ղամղէրան = լտ. Symphytum = գղ. Consoude, ըստ Սոնթի. Ղահրիմանեանի„:

= "Ստուգաբանի Ղամղիտակն Թօքաքօօ„, կ'ըսէ եւս Ղահրիմանեան, զոր չգիտեմ ուր գտած է: Իսկ Meninski, յիւր Onomasticon, զHermodactylus կը կոչէ Ղէմղէրէն, որ անշուշտ Ագաթանգեղեայ (երես 480, Բ. տպ.) Ղամղէրանն է: Յն. Ἑρμοδάκτηλος [= Հերմեայ կամ Հերմեսի մատն] է գղ. Quintefeuille բոյսն. Նոյն յունարէն բառն է եւ գաղղիականն Hermodacte զոր Լիտրէ կը մեկնէ "tubercules... que beaucoup pensent provenir d'une espèce de Colchique [Ձիւնծաղիկ]„. լտ. Hermodactylus թուրքերէն Սէօրէնճան [Ձիւնծաղիկ] է, ըստ Բէստէնի. եւ անտարակոյս այս է որ խանգարմամբ կը գրուի յ'Ա Բժշկարանի, երես 144. "Հուպոկտաս, Մուստաճլէ [թուի՝ Հումուտակղոս, Ամլտէճ = Ἑρμοδάκτηλος, Ղիմլիտէճ], կամ Սօրէնջան, կամ Ձյնծաղկի տակ„: Վերջապէս կ'ըսէ եւ Ամիրտոլվաթ ի Թ. 1780 Հայքալլի. "Ասաբէհ ըլ-Հարմազ [= Մատունք Հէրմէսի.

ոչ թէ Որմզդի, ինչպէս կը հասկանայ Հ. Ալիշան]. ինքն Սորընծանէն ծաղիկն է. գեղին կու լինի, եւ սպիտակ այլ կու լինի„: Գէորգ ալ կը գրէ թէ "Շէմլէյա է ծաղիկ իմն անուշահոտ„:

**ՃՂ.** 1288 [տպ. 1287]. "*Շանճուք* = լտ. Cynomorium, Orobanche = յն. *χυνόμορον* [տպ. *Χυνομοίρον*]„:

= Հ. Ալիշան անշուշտ ուղած է գրել Շան Խուխ, ինչպէս ի Թ. 1090, համեմատ յունին *χυνόμορον* [= Շան թութ], գղ. Fruit de la ronce, պտուղ Մորենւոյ: Շանխոտ է Orchis, զոր տես ի Թ. 2278:

Ի նմին Թ. 1288 փոխանակ Շէհրէմանէ ասելի էր Ուշէքան. զի սա է որ կը գրէ. "Կայո. խոտ առանց տերեւոց. զսպիտակոյթ ծաղիկս ունի, եւ զՍեսեռն եւ զնմանիս պատառատէ. Orobanche, Cynomorium„. Դիտելի է որ յն. *χυνόμορον* կը նշանակէ պտուղ Մորենւոյ, իսկ լտ. Cynomorium համանիշ կը գրուի Orobanche խոտոյ նա եւ ի Pasini.

**ՃՂԱ.** 2325. "Շմուրղալ. Գրած է մէկն՝ իբր համանիշ լտ. բառիւ Struthion, որ չի լսուիր. թերեւս ըլլայ Struthiola, որոյ յն. անունն, սերմն եւ ձեւն յարմարին ճնճղկալեզուի, թիւ 1892„:

= Շահրիմանեան է գրողն. "Շմորտակ [ոչ թէ Շմուրղալ]. յն. *Στρούθιον* [գղ. Saponaire ou Herbe au foulon]. ծղօտն երկոտնաչափ նուրբ, տերեւն լայն եւ ջղոտ, ծաղիկն հինգթերթի՝ ի գոյնս գոյնս„: Այս է որ յն. *Στρού-*

θιον եւ լտ. Struthium անուամբ կը գտնուի ի Հայբուսակին, թ. 3022։ Տես անդ եւ թ. 3250. մինչդեռ Հ. Ալիշան կ'անգիտանայ զայն ի թ. 2325։

**ՃՀԲ.** 2400. «Ոսկեխոտ = լտ. Sanguinaria = գղ. Sanguinaire, խաշխաշից ընդհանուր ցեղէն»։

= Նոյն է ընդ Ոսկեխոտոյ եւ Արեան խոտ ի թ. 197, եւ Արեփական մայր ի թ. 199, ինչպէս կ'ըսէ եւ Հ. Ալիշան ինքնին, բայց նոյն է եւ Քիմիատան ծաղիկն ի թ. 3195 [տպ. 2195], երես 646, եթէ միտ դրուի նկարագրին։ Քիմիատան բառն կարծել կու տայ ինձ որ Ոսկեխոտ եւ այլն, ոչ է գղ. Sanguinaire, այլ Alchimille, plante de la famille des Rosacées (կամ Sanguisorbées, ըստ Emm. Le Maoutի, Botanique, երես 271), զորմէ կ'ըսէ Լիտրէ. «On tire ce mot de l'arabe alkemelieh, à cause de l'importance de cette plante pour les alchimistes, qui avaient cru trouver dans la rosée recueillie sur ses feuilles un adjuvant pour la transmutation des métaux vils en or»․ որով կը հաստատուի եւ հայերէն Ոսկեխոտ կոչման պատճառն։

**ՃՀԳ.** 1028. «Պալատաւր = Մոլեխինդ»։

= Պալատաւր է լտ. Anacardium [գղ. Anacarde], թ. 2483, զոր Հ. Ալիշան շփոթած է ընդ թուրքերէն Պալատըրան = Մոլեխինդ. տես ի թ. 1072։

**ՃՀԴ.** 2588. «Պ....ր, Պ....էր. Բժշկարան մի զուգէ այս անունս ընդ Խարաէ? եւ «զկոստն ձգէ» ըսելով՝ կ'իմացընէ մէկ յատկութիւնը: Արաբ. Պ....էր նշանակէ Եզնագի, խռնդատ» [գղ. Molène, Bouillon-blanc]:

= Խարա... է պրս. «Խէրէ. Զոր Արմաւ» (Գէորգ). ընդ որում նոյն է եւ արաբ. Պ....ր, զոր Պ...ր կամ Պ....ըր գրութեամբ՝ Հ. Ալիշան ի թ. 1025 կը մեկնէ «Տհաս Արմաւ». իսկ ի թ. 2598 կը գրէ Պ..ըր կամ Պօ.ր եւ կը մեկնէ լոկ «Արմաւ»: Այլ ինչ է պրս. Պէք..ըր (Պօղաճ.) կամ Պ....էյր (Գէորգ), նոյն ընդ պրս. Մ...ր [= Զկան թոյն], հայերէն Զկան մահարար, Եզնագի, Խռնդատ, գղ. Molène, որոյ արաբերէն կը նշանակուի Պ....էր կամ Պ....էր- ի թ. 609:

**ՃՀԵ.** 2845. «Ս...., Ս. Բարսեղ Վեցօրէից մէջ ըսած է (Ե. երես 101). «Այլազգի կերպարանս ունի հոյզն ծառոյն որ անուանեալ կոչի Ս....»: Յն. Σχοῖνος, լտ. Schoenus, փ. Choin, կնիւնի տեսակ բոյս է, դիմացկուն, կիպեռիսի ցեղէ. բայց Ս. Բարսղի յիշած խժաւոր կամ հիւթաւոր ծառն տարբեր ցեղէ ըլլալու է»:

= Հ. Ալիշան շփոթած է զյն. Σχῖνος ծառն, գղ. Lentisque, Հերձի (Թիւք 1684, 1221), ընդ Σχοῖνος, գղ. Jonc, կնիւն: Ս. Բարսեղ կը խօսի զΣχῖνος ծառոյն, զոր Fialon թարգմանած է Lentisque յերես 410. իսկ Հայ թարգմանն՝ որ անգիտանալ թուի թէ

նոյն բառն թարգմանեալ է Հեբր. ի Դանիէլ, ԺԴ., 54, յունականաւն ըսած է Ս[illegible]:

**ՃՀՁ.** 2856. „[illegible]„ = յն. եւ լտ. Schizanthus = փ. Schizanthe, իբր թէ պատըռտած ծաղիկ: Ամիրտովլաթ գրէ լտ. բառն այլ [illegible]. „եւ [illegible]? այլ կ'ասեն, եւ պարսիկն [illegible] [illegible] ասէ... Իժխիրին պարսկերէն [illegible]? կ'ասեն...: Սինեայ որդին կ'ասէ թէ Սէզ կու նմանի. ի Մակքայու կու գայ„:... Ըստ բուսաբանից՝ [illegible][-][illegible] նարգոսից ցեղէն է„:

= [illegible] է խոտ յազգէ Սիզատեսակաց (գղ. Graminées), ինչպէս կը յայտարարէ եւ Ամիրտովլաթ „Սէզ կու նմանի„, եւ գղ. կը կոչուի Jonc odorant, զորմէ կ'ըսէ Լիտրէ ի բառն Jonc, 3. „Nom vulgaire de l'Andropogon Schénanthe„, Ամիրտովլաթայն [illegible], որ է ի յունականէն Σχοίνανθος, Espèce de Jonc odorant: Յն. եւ լտ. Schizanthus եւ գղ. Schizanthe, ի ցեղէ նարգոսից, պատըռտած ծաղիկ, անծանօթ են ինձ: Այս [illegible] լաւ տեսակն յԱրաբիոյ գալուն համար [= „ի Մակքայու կու գայ„, Ամիրտ.]՝ արաբերէն կը կոչուի (բաց յայլ անուանէ զոր պիտի տեսնենք) [illegible] [illegible][1], այս ինքն Ցարդ Մաքայի, զոր Հ. Ալիշան չէ հասկացած, եւ կը գրէ [illegible]? նովին մօք կ'ըսեն եւ թուրքերն [illegible] [illegible], ինչպէս կը տեղեկանանք ի Շահրիմանեանէ, որ կը գրէ. „Վաղմեռուկ, լտ. Juncus odoratus, [illegible] [illegible]. տեսակ ինչ

կնիւնոյ„։ Պարսկերէն Վաղամերսոօն կը կոչուի "Կէօրէէյա [= Ցուռ կամ Իշավայրոյ խոտ], խոտ ինչ զոր շատ ուտէ ցիռն, որ եւ ասի Կէօ-պէէ տէշքի. արաբերէն Իտխիր, եւ Հինտի լեզուաւ Սօրպա„ (Գէորգ). ուրեմն եւ ի վերոյգրեալ վկայութեան Ամիրտովլաթայ գրելի է՝ "Կօր-պայէ տաշտէ կ'ասէ[2]„, եւ Կօրէէա [= Կէօրէէյա] բառի Հարցական նշանն ալ ջնջելի է։ Ի Գէոր-գայ յիշատակեալ Իտխիրն է ի Բառս Գաղիա-նոսի "Ազխար, Վաղամեռուկ„. եւ ի Բժշ. Ա, երես 143՝ "Ա-զխօր, Վաղամեռուկ„. եւ ի Թրգմ. Դեղոց՝ "Ատխար, Վաղմեռուկ„ (տես զվերջինս ի Համարն 2Դ)։ Կ'ըսէ եւ Emm. Le Maout, Botanique, երես 374. "Les Andropogons ont des racines aromatiques, usitées en médecine. Le Schœnanthe d'Arabie, ou Foin des chameaux, provient d'un Andropogon: c'est une herbe très odorante, célèbre dans l'Orient pour ses propriétés stimulantes, diurétiques et diaphorétiques„.

Տանօքա-քին.

1. "Թէպնի Մէքքէ, Վաղամեռուկ. կնիւն ա-նուշահոտ„. Կօղամ. ի բառն Թէպն = Ցարդ։ Ի Մաքա քաղաքի յանուանէ է եւ պրս. Սէնայէ Մէքքէ, գղ. Séné de la Mecque Աճաւ (Séné) թփոյ տեսակ մի (տես Սէնա ի Գէորգ, եւ Séné ի M. Devic), որ ի Հայքաաաքին, Թ. 2699, գրեալ է Սա-նամբքէ։ Նոյնպէս եւ արաբ. Հաշիշի Մէքքէ, որ թուի Պրտոու, գղ. Papyrus, կամ ազգ մի Պրտուոյ. "Կէֆլան, Պապիր. տունկ ինչ. արաբերէն Հաշիշի Մէքքէ„ (Գէորգ)։ || Այս է զոր Հայքաաաք կը գրէ ի

Թ. 1737. "Ցօշադամակէ? կամ Հոսրով մակէ. յիշէ Ասար բժիշկ. իբր անծանօթ„։ Աւասիկ Ցօշադամակէ, նոյնանալով ընդ Հողաչէջի Մէքքէ, ոչ ևս կը մնայ անծանօթ։ ||

2. Այսպէս եւ ի Թ. 3115, "Սուրխ մորդէկ ասեն„, ուղղելի թուի "Սուրխ մորդէ կ'ասեն„։ Կայ պրս. Սէրխմէրդ, տեսակ իմն կարմիր ծաղկան, ըստ Գէորգայ։

**ՃԴԷ.** 782. "*Տէվտար* = Գարա աղաճ = Թեղի„։

= Հայերէն Թեղն՝ ոչ է Տէվտար, այլ Տարդար = գղ. Orme. տես ի թիւսն 781, 1438, 2942. ի վերջին տեղւոջս "պտուղ„ կ'ըսուի, զոր ուղղելի է "ծառ„։ Գէորգ կը գրէ. "Տէրտար, է ծառն այն՝ որ կոչի թուրքերէն գարաաղաճ„, գղ. Orme, թեղի. նոյնպէս եւ Կլուսիոս, Հ. Բ. 135. "Persis Dardar est Ulmus„։ Ա՛յլ է Տէվդար կամ Տէվդար ծառն, զոր տես ի թիւսն 782 եւ 2955, պարսկերէն "Տէյվդար. տեսակ Սօճի ծառոյ, որ կոչի Սանէվպէրէ հինդի, եւ լինի ի Հնդիկս„ (Գէորգ)։

**ՃԴԸ.** 3022. "Ցմախ = լտ. Struthium [որ է գղ. Saponaire. տես ի համարն ՃՀԱ] = կամ ըստ այլոց Gypsophile„ [որ Շահօքրամի, գղ. Oeillet, ցեղէն ծաղկի մի է]։

= Ցմախ բուսոյ ստոյգ նշանակութիւնն թուի գղ. Ellébore կամ ճշդագոյն Ellébore blanc. քանզի ուր ի Պատմութեան Աղէքսանդրի, երես 141, կ'ըսուի. "Եւ եկեալ ի գետն՝ գտանէաք զջուրն դառնագոյն քան զՑմախ„, յոյն

բնագիրն ունի ’Ελλέβορος. Ըստ այսմ եւ Արիստակէս Գրիչ յիւր քերթողական բառում, "Եղբորոս [Չ Եղգորոս] Ցմախ„. Նոյնպէս Ամար Սեբաստացի "Խարբաղ [արբ. Խարբաք. կոճ վրացի. Եղեբորոս. Պօղաճ.] Ցմախ խոտ„, զոր Հ. Ալիշան ի թ. 3023 կը գրէ Ցմախոտ, եւ կ’ըսէ. "Սպիտակ վրացի կոճն է„. (տես անդ Վրացի կոճ, գղ. Ellébore, ի թ. 1462)։ Դարձեալ ի Թրգմ. Դեղոց. "Քունտուշն. Ցմախ„։ Այս Քունտուշ՝ սեմական բառ է, ասորերէն Քանդուշ կամ Քունդուշ, kandousch, koundosch, զորմէ կ’ըսէ Payne Smith, Thes. Syr., ի Նշանագիրն Քոֆ, Qof, Պրակ թ., էջ 3659. "Saponaria officinalis herba, Arabes[1] eam vocant Veratrum album [= Սպիտակ Եղեբորոս կամ Սպիտակ վրացի կոճ]„։ Մեր բժշկարանք յարաբիկ լեզուէ թարգմանեալ լինելով՝ իրենց Քունդուշն (որ ոչ է թուրքերէն Գունդուղ = Ջրշուն, ինչպէս կը կարծէ Հ. Ալիշան ի թ. 3022) պէտք է համարուի գղ. Ellébore blanc (եւ ոչ Saponaire), որ կ’ըսուի եւս Vératre. Կայ եւ ի Գաղ. Ա՝ "Սեղուա. Ցմախ„, որ ի Գաղ. Բ. գրեալ է Ցմամ. ցարդ չեմ կարողացած ստուգել զՍեղուա, զոր Ռոշքեան ըստ կամս հասկացած է լտ. Silaus, տեսակ մի լախուր կամ Նեխուր = գղ. Ache. Նոյնպէս եւ Հարանց Վարուց Ցմախն², Հ. Ա. 688, չգիտեմ Սպիտակ վրացի կո՞ճ է թէ այլ ինչ. "Ասէ ցնա ծերն. Մայր մինչ կամիցի հատանել զմանուկն ի ստենէ, Ցմախ արկանէ ի վերայ ստեանցն իբրեւ գնայ

մանուկն դիել. եւ իբրեւ ճաշակէ, փախչի ի դառնութենէ նորա։ Այսէ ցնա եղբայրն. Եւ զի՞նչ իցէ Ցմ-խն զոր ի նմա պարտ է արկանել„. Գաղղիացիք սոյն նպատակաւ կը գործածեն զChicotin որ ոչ է մեր Ցմ-խն, թէպէտ Իւմին կը թարգմանէ “Հիւթ Ցմ-խոյ„. տես յիմ Գաղղ. — Հայ. Բառագիրս Chicotin, 2դ նշ.։ Կայ եւ ի ճառին Ս. Եփրեմի Ա— Ցօվ-էփ, Հ. Դ, 102. “Բնութիւնս մարդկան իբրեւ զիւղ է. յիւղ յորժամ արկանէ վարդ, լինի վարդիւղ [տպ. վարդ իւղ]. եւ եթէ Ցմ-խ արկանէ, լինի Ցմ-խիւղ [տպ. Ցմախ իւղ]„։

Ծանօթութիւնք.

1. Այս է թերեւս գրեալն ի Գէորգայ. “Քէնդէր. Էր խոտ իմն թունաւոր, որ ասի արպերէն Գոնդէր„։

2. Զգիտեմ ինչու Հ. Ալիշան կը յիշէ զվկայութիւնն Հարանց վարուց ի Ռուշքեանէ Բառարանէն, փոխանակ ուղղակի առնլոյ ի Հարանց վարուց, եւ կը գրէ զայն ի Ցմ-ծ, Թ. 3024։

**ՃՀԹ.** 883. “Քէրէվիզ = գղ. Ache„։ — 1373. “Քէրէվիզ = գղ. Sélin [տպ. Selin]„։

= Թուրքերէնն Քէրէվիզ, Հայերէն կարօս, է գղ. Céleri։

**ՃՁ.** 3231. “Քյմէ = յն. եւ լտ. Paronychia = գղ. Panaris„։

= Գղ. Panaris ոչ է բոյս, այլ այն ախտումն մատանց ձեռին կամ ոտին զոր Թուրքն

կը կոչէ Տօլամա, իսկ մեր բժշկարանք եւ գաւառացիք Մատնչուրչ[1]. բոյսն է "Paronyque, plante qui passait, chez les anciens, pour guérir le panaris„. Լիտրէ։

Քօշի, զոր Հաճրիմանեան կը գրէ Քօշին, սխալ բառ թուի ինձ. զի Քօշէմ կամ Քօշեմ (յորմէ Քօշի, Քօշին) ոչ է գղ. Panaris, այլ Envie, Շէյթան թըրնաղը ըստ թուրքաց. տես յիմ բառագիրս Envie, 6դ նշ.։ "Քցիմ. ըղրընքլէն թօզլէն բօսած փօղ. Շէյթան տըրնաղը. Քցիմն„. Բառգիրք յԱշխարհաբառէ ի Գրաբառն (Աշակերտաց Մխ. Աբբայի)։

Ծանօթութիւն.

1. Գղ. Panaris կը կոչուի նաեւ ռամկօրէն Vire, զոր Լիտրէ կը ստուգաբանէ ի Virer = Դառնալ բայէ, „parce qu'il tourne autour du doigt". Ընդ որում համեմատէ զՄատնչուրչ։

**ՃՁԱ.** 1735. "Փարասիօն՝ վայրի քարաւոն է„, ըստ բժշկարանի։

= փոխանակ Փարասիօնի կարդա՛ ֆարասիլէոն ըստ թ. 883, կամ ֆարասիլէոն ըստ թ. 11. "ֆարասիլէոն, եւ ինքն է վայրի քարաւիզն„։ Այլ է ֆարասիոն, արբ. ֆէրասիյուն, որ է յն. πράσιον, գղ. Marrube, հայերէն Հօտիսոյ. տես ի թ. 1735։

# Է.

## *Ստուգաբանութիւնք եւ Ստուգագրութիւնք Բուսոց:*

**ՃՁԲ.** Աշան։ Արաբերէն բառ է, *եզակի* Իշըն, Ականջ. *յոքնակի* Աշան *կամ* Էշան, Ականջք։ Ի Թ. 2174, *Լսան* ըլ-առնէպ, *ուղղելի է* Աշան։ — Ի Թ. 1346, Աշան ըլ·*ղըրթ*, *կատուականջ*, *ուղղելի է* հըրր.[1] (Հըրր *է կատու*)։ — Ի Թ. 943, Աշան ըլ-ֆէշէշ *կը թարգմանուի* Երէցու *մորուք*. *կարգա* Երէցու ականջ *ըստ* Թ. 3179։

Ծանօթութիւն.

1. *Պէտք է ուղղել «Ազան ըլ ղըրթ» ըստ սովորական տառադարձութեան Ամիրտովլաթայ (տես* ՃԿԶ)։

**ՃՁԳ.** 2918. «Ալխարը *կամ* Ալխար, *վայրի* Տանձ»։ — Կրկին *կը գրուի ի* Թ. 3272. «Ալխարը. Այս *այլ տեսակ մի* Տանձի *անուն է*»։

= Թուի *թուրքի բառն* Ախլաթ, *եւ նոյն ընդ* Քարճին *(տես ի համարն* ԾԹ)։ Գէորգ *կը գրէ.* «Կէլօնչէյր. Քարճին. *է տեսակ ինչ լեռնային* Տանձի. [*Թուրքերէն*] Ախլատ. Պօղաղալան»։ Նոյն *է թերեւս եւ գղ.* Poire d'angoisse, *զոր տես յիմ* Բառագիրս *ի բառն* Angoisse.

Նման *է թուրքականին* Ախլաթ՝ յն. Ἀχράς (*սեռական* ἀχράδος). Poirier sauvage, *եւս* Poire sauvage, *ի* Բառս Գաղիանոսի *Հայերէն ըսուած* Խողաբանջ (Գաղ. Ա. *եւ* Դ.), Խողէ Տանձ

(Գաղ. Բ), եւ փոխանակ գրելոյ յն. Աէրաքօ՝ աղաւաղանօք Աքրաքէղ (Գաղ. Ա), Ակրաքէղ (Գաղ. Դ), Աքրաքէ— (Գաղ. Բ)։ Ի Թ. 2918, զգրեալն Աքրաքէ—? իմա Աէրաքօ, ի. կ ի Թ. 1094, զյն. Ἀχράκις[1] ընթերցիր Ἀχράς։ Յերկրորդ-տեղւոյս սխալ է խողաքանյ համարել եւ զգղ. Scrofules կամ Écrouelles. Նոյն սխալ է եւ ի Նոր Հայկզ., եւ յետին երկիցս յÉcrouelles եւ ի Scrofules, զոր հայերէն կը կոչենք խողէ (արաբ. խանզիր, խոզք), թուրքերէն Սըրաճա։

Ծանօթութիւն.

1։ Նոր Հայկզ. կը գրէ ի "Խոզաստանձ", Ἄρχας, ἀχράκις. բայց կարծեմ թէ ἀχράκις եղեալ է իբր սեռական Ἀχράς բառի, մինչդեռ Alex. կը դնէ սեռական ἀχράδος։

**ԾԶԴ.** 551. Ալաքաքա, Ալա բէքար։

= Պրս. Ալայէ օէյաճ = Սալոր սեաւ. Ալայէ Պախարա = Սալոր Բուխարայի (Գէորգ, ի բառն Ալու)։ — Ի Թ. 1393, Ալայէ տղաղայլէ՝ անշուշտ է պրս. Ալադալա = կեռաս (Գէորգ)։

**ԾԶԵ.** 2186. Աքարոն կամ Բաշխ = Լեռնցի Նարդոս։

= Ի Բառս Գաղիանոսի գրեալ է. "Աքարոն. Բաշխ է". եւ դարձեալ՝ "Ակարոն, Վայրի կամ Վայրենի Նարդին"։ Ճիշդ է "Աքարոն = Բաշխ", յն. Ἄκορος, գղ. Acorus (կամ Acore, Roseau odorant). (տես Բաշխ ի Հայբուսակն, Թ. 311. տես եւ զհամարն ԽԳ, եւ Հայկ. Բառաքնն. երեսք 109—110)։ Իսկ "Ակարոն,

վայրի կամ վայրենի նարդին», ուղղելի է Ասարոն, յն. Ἄσαρον, գղ. Asaret, Cabaret, Nard sauvage։ Տես ի Համարն ՉԴ, Դէփ., Թիւ 2։

**ՃՂՁ.** Այէոտանո? Այլէոյտան? 321, երես 86. «Հոռոմն Այէոտանո? ասէ [Բարձուենեկին]»։ — 2811. «Տերեւն ի Այլէոյտանէ? տերեւ կու նմանի»։

Յերկոսեան տեղիսդ եւս թուրքերէն Այէրօնո (պօղաճ.) բառն է, աղաւաղութիւն յունականին Ἀβρότονον, գղ. Aurone, Բարձուենեակ։ Տես ի Համարն ՂՁ։

**ՃՂԷ.** Այսուղոերգոն? 835. «Հոռոմն [Ցիմար կամ վայրի թզոյ] կ'ասէ Այսուղոերգոն? (Αἰσυλοεργόν? վնասակար)»։ [Ցն. Αἰσυλοεργός, գղ. Qui agit en scélérat]։

= կարգա՛ յն. Ἀγριόσυκον, գղ. Figue sauvage, վայրի թուզ։

Ամիրտոլվաթայ Ցէմար Բուղոյն հետ յիշելի էր եւ Սերբերիանոսին (կամ Ց. Ոսկեբերանի) Ցէմար Բուզէնէ, ԺԳ, երեսք 209—210. «Շնորհալից աւետարանիչն ասաց Ցէմար Բուզէնէ զՋակքէին, զի նշանակեսցէ՝ թէ լայն եւ ընդարձակ է ճանապարհն յիմարութեան»։ ՑԱւետարանին Ղուկասու, ԺԹ, 4, Ժանտաբուզէնէ. նոյն է այլուր ըսուածն Մոլաբուզէնէ։

**ՃՂԸ.** 96. *Անանեխ*։

= Չգիտեմ ուր գտած է զայս Հ. Ալիշան. ես գիտեմ միայն Անանուխ, ռմկ. Աննուխ։ Իսկ ի Թ. 34 կը գրուի «Վայրի *Մանանուխ*»,

որ նոյնպէս անծանօթ է ինձ. կ՚ըսենք Մանանիս, ռմկ. Մանանէս, Մաննէս:

**ՃՁԹ.** 1465. Անգրուեղ:

= կարդա՛ Անգրուեղ ըստ Թ. 2783:

**ՃՂ.** 911. Անտրոսլիվանոս? Անտրոսլիանոս? = Խնկի ծառ. որ ի Թ. 698 գրեալ է Անտրոսլիանոս:

= Խմմ. յն. Δενδρολίβανος. գղ. L'arbre à encens, խնկի ծառ: Այս է թերեւս խնկենի ի Վարդանայ Մեկնութեանն Ընթացուածի. "Ի խնկենեաց ոստոն տեսանէին պէսպէս պտուղս" (Նոր Հայկզ.): Նոյն թուի եւ Լիբան փայտ, Լիբանան [Լիբանոն?] ծառ. "Զի բոյն շինէ իւր [Արմաւ հաւն, որ է փիւնիկ] ի Լիբան փայտէ, եւ ի Զմուռս փայտէ, եւ յամենայն խնկոց". Կիւր. Երուս. Կոչ. Ընծ. ԺԸ. 404: — "Նման էր երանելին անուշահոտ Լիբանան ծառոյ, որոյ զոստոն կտորեալ իցէ եւ տեղն միայն կայցէ", Վկայ. Սրբոյն Յակոբկայ, Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց (տպ. Ս. Ղազար 1874), Հ. Բ, 120:

**ՃՂԱ.** 116. Անճարակ = Մարզանկօշ:

= Հայ բառի կերպարանք ունի (ճար, ճարակ), բայց պարսկերէն է, Էնճէրէք (Գէորգ), ոչ ինչ ընդհատ քան զՄարզանկօշ (Մերզէնկէօշ = Մկան ականջ):

**ՃՂԲ.** 119. Անճիրէտամ. "Ինքն թուզ կու նմանի, բոլոր եւ կարմիր... եւ ի մէջն որպէս կէտեր ունի":

= Պրս. "Էնճիյրէ Ադէմ, էր տեսակ իմն մրգոյ որ լինի ի Հնդիկս, ըստ ձեւոյն բոլոր եւ

ըստ երանգոյն կարմիր. եւ ունի ի միջի իւրում սպիտակ կէտ ինչ. եւ թարգմանի Ադամայ Թուզ„ (Գէորգ)։ Կայ գղ. Figuier d'Adam, որ եւ Figuier des banians, le Bananier, ըստ Լիննէի Musa paradisiaca (Լիտրէ ի Figuier, 2). այլ ի Bananier կ'ըսէ նոյն Լիտրէ թէ Figuier d'Adamն ըստ Լիննէի կը կոչուի Musa sapientium։ Տես եւ ի Հայբուսակն, թ. 2145, Մաւզ։

**ՃՂԳ.** 121. Անձաւ = Յօտ = Հալուէ։

= Անձաւ է պրս. "Եէլէնձաւէ, Էլէնձաւէ. փայտ խնկոյ. Ո՛ւտ ալուաճէ„ (Գէորգ)։

**ՃՂԴ.** 3287. *Ասփոթիլոն*։

= Ուղղել Ասֆոտէլոն ըստ թ. 757։

**ՃՂԵ.** 764. *Ատրոֆաքսիս* = յն. *Ἀτρωφάξις* = գղ. Arroche։

= Կարդա՛ Ատրաֆաքսիս, *Ἀτράφαξις* կամ *Ἀτράφαξης*։

**ՃՂԶ.** 205. Արեւպաշ = թուրքերէն Այ չիչէկի։

= Անշուշտ Արեւպաշտ է ուղիղն, թարգմանութիւն պարսկականին Աֆթապփէրէսթ, Խօրֆէրէսթ = Արեգակնապաշտ, Արեւապաշտ, յոր անուն կը կոչուի Արեւածաղիկն, Կիւն չիչէկի, կամ այլ ծաղիկ մի "որ դառնայ ընդ արեւու, որոյ տերեւքն եւս յայն կողմն հակին„ (Գէորգ յԱֆթապփէրէսթ [գղ. Tournesol]). որ եւ ի Խօրֆէրէսթ կը գրէ "Արեւածաղիկ. Կիւնէյէ չիչէկի. Այ չիչէկի„։ Պրս. Խօրֆէրէսթն է գրեալ Խուրֆըրուշ առ Մխիթարայ Հերացւոյ, ԻԲ, 46. "Եւ ի խաւարգնուն

զհոյն եւ զգիճային ի բան պահէ, որպէս Հաւզարն, եւ Փլիփլեմն, զԴալար Գինձն, եւ զխորֆէրլօտնը. զոր Հ. Ալիշան ի Թ. 1135 կը գրէ Խորֆէրլօտ? եւ "ծռած կամ սխալ գրուած" կը համարի:

**ՃՂԷ.** 2985. Արղան? "տեսակ մի կորեկի": Տես Արղան եւ ի Թ. 434.

= Պրս. Էրզէն, կորեակ (Գէորգ): Նոյն թուի եւ ի Խորենացւոյ Աշխարհագրութեան (տպ. 1881, երես 45), "Հրէզըն, որ է կորեակ". այլ ի գղ թարգմանութեանն, երես 59, ծան. 2, Պտղոմէոս կը գրէ Ὄρηζα, որ է գղ. Riz, Որիզ, Բրինձ: Տես Հրէզըն եւ ի Հայբուսակն, Թ. 1754, ուր զյն. Ὄριζον ուղղէ Ὄρηζον, որ նոյն է ընդ Ὄρηζα:

**ՃՂԸ.** 214. *Արծուոց* Մոշէ:

= Գրելի է Ածուոյ Մոշէ, ըստ որում ունի եւ Նոր Հայկզ. ի "Մոշայ". "Ածուոյ [տպ. Ածուոյ] Մոշին": Տես եւ ի Թ. 2108 Հայբուսակէ. "Խսլ. ածուոյ, եւ վայրի լինի": — Թ. 161, "լաւն այն է որ ածուոյ լինի եւ ի լի լինի": — Թ. 168, "մէկն ածուէին լինի, եւ մէկն վայրի լինի. եւ լաւն այն է որ յածուոյն լինի". եւ այլն եւ այլն: Ածուոյն (յ'Ածու բառէ), որ կ'ըսուի եւ Ածուէնէ, Տանոյ կամ Տանու, Ցանածոյ, է գղ. Cultivé, կամ Satif, հակադրեալ Վայրի, գղ. Agreste, բառի. տես Satif ի Լիտրէ:

**ՃՂԹ.** 212. Arvenogonum. (որ եւ Satyrion.) "հիմայ բուսաբանութեան մէջ այսպիսի անուն չի լսուիր":

= Ռոշքեան անշուշտ ուղիղ գրած է Arsenogonum ըստ Պլինիոսի, որ է իտ. Satirio բոյսն (Pasini)։ Յունարէն Ἀρσενογόνος կը նշանակէ Qui engendre des mâles: quelquefois Mâle, en parlant des plantes. եւ գոյականօրէն Ἀρσενογόνον է գղ. Satyrion բոյսն, ըստ Պլինիոսի Arsenogonon.

Բառիս ընդդիմակն է յն. Θηληγόνος, Qui procrée des enfants ou des petits du sexe féminin: quelquefois Femelle, en parlant des plantes. եւ գոյականօրէն Θηλήγονον, Nom de diverses plantes. յորմէ լտ. Thelygonon, զոր Հ. Ալիշան կը գրէ Thelygonum ի թ. 2210, գաղղիերէն ալ Théligon փոխ Thelygone, եւ զայն բառն սխալ կը ստուգաբանէ ծընկածն (ի Γόνυ = ծունգ բառէ), փոխ. Էգածին (Θῆλυς = Էգ, Γίγνομαι = ծնանիմ)։

**Ա.** 3295. *Արքայարմատ* = լտ. Imperatoria. Նոյնպէս եւ յերես 681, ի թ. 2004, *Արքայարմատ*։

= «Թուրք-Հայ Բժշկարանն» անշուշտ Օղուլլուխեանի Նէ-ի Բժշկարանն է, ուր գրեալ է յերես 67. «լտ. Imperatoriae radix. Թուրքերէն Քրալ քէօքի. Հայերէն Արքայ արմատ»։ Ջախջ. Բռգ. Իտ.-Հայ., կ'անուանէ զImperatoria Կայսերաքոյս, Կայսերատունկ։ Գղ. կ'ըսուի Impératoire, զոր ըստ Շահրիմանեանի կոչած եմ Մարգացնծաղ յիմ Բառագիրս (Հայբուսակ, թ. 2004)։ Թերեւս նոյն է Ա. Բժշկարանի Արքայից խոտն (Հայբուսակ, թ. 245)։

**ՄԱ.** 3301. «Բադանճ, Յովակիմ Օղուլլուխեան բժիշկն այսպէս կ'անուանէ զնարինջ. իրմէ հնարած բառ չ'երեւիր, բայց տաճկաբառ է»։

= Օղուլլուխեան առած է զայդ ի Հ. Մկրտիչ Անանեանի ՅԱշխարհաբառէ ի Գրաբառն Բառագրոց (տպ. 1769). «Փորթուգալ, պտուղ է անուշ թթուռունճի նման։ || Բադանէ։» Ըստ նմին Անանեանի՝ թուրինջ (գղ. Bigarade) եւ նարինջ (գղ. Orange) նոյնանշան են. «Թուրունճ. || Թուրինճ, կամ Թուրինջ, Նարինջ»։

**ՄԲ.** 332. *Բեկոն*։

= գրելի է փէլիւն, բառ Նորահնար, «Faggio, փէլիւն կամ կաղամախ. Կիւրկէն աղաճը» Ջախջ. Իտ.-Հայ.։ — «Hêtre, փէլիւն կամ կաղամախ». Աւգեր։

**ՄԳ.** 340. *Բզրկի տուտն* = լտ. Alopecurus, ըստ Բառից Գաղիանոսի, որ եւ *Բզրուկ* վայրի... *Բզըրկի* կամ Աղուէսու *տուտն*»։ Տես *Բզրուկ* վայրի եւ ի Թ. 1559։

= Գաղ. Ա. կը գրէ. «Աւ օթէօշ, Բզրկատուն». իսկ Թրգմ. Գեղոց՝ «Աւօթօէշ, վայրի Բզրկատուն»։ Սէթէօշ կամ Աւօթօէշ է պրս. Խաթէյօօշ, որ նոյն է ընդ «Խաթէզօօլ», է խոտն այն, որոյ սերմն կոչի արպ. Պէզրէ գաթօօնա, թուրք. Գարնէ էօրթէ»։ Չէք ուրեմն *Բզրկի տուտն* = լտ. Alopecurus, եւ ոչ իսկ *Բզրուկ* վայրէ, այլ Բզրկատուն կամ Բզրկատուն է ուղիղն [= արաբ. Պէզրէ գաթօօնա], ինչպէս կը գրուի եւ ի Հայբուսակին, Թ. 339, 340, 1559։ Պարսիկ Խաթէզօօլն կը կոչուի յն. *Ψύλλιον* (ի *Ψύλλα* = Լու բառէ),

գղ. Psyllium (կամ Psyllion), vulgairement Herbe aux puces, sorte de Plantain [= Ձղախոտ, Գաղտիկուր]։ Տես եւ ի Համարն ՃԾՁ, ծան. 6։

**ՄԴ.** 730. *Բողկ*, «Ջօխօ... տերեւն Սպանախի եւ Բողկի նմանի»։ Նոյնպէս յերես 677, ի թ. 715, *Բողկի*։

= Ես ընթերցած եմ ի Բժշկարանի ուրեք Ս. Ղազարու. «Առ զայն խոտն՝ որ Ջօխօ ասեն. Նշանքն այս է, կաթոտ լինի, տերեւն Սպաննախի եւ Բաղկէ նմանի»։ Բաղուկ է գղ. Bette (Հայբուսակ, թ. 276), Բողկ է գղ. Raifort (տես ի Համարն ՃԿ)։

**ՄԵ.** 3352. Լտ. Bursa pastoribus։

= Ուղիղն է կարծեմ Bursa pastoris ըստ թ. 1230. pastoris եւ Լիտրէ ի բառն Bourse, 13։

**ՄԶ.** *Գայլթիւ?*

= Անշուշտ սխալ գրուած կամ կարդացուած է փոխ. Գայլփսեա, որ պէտք է նոյն ըլլայ ընդ Գայլափսեա այլոց Բժշկարանի (կը ցաւիմ որ զտեղիս միայն նշանակած եմ, առանց զվկայութիւնն ընդօրինակելոյ)։ Գայլափսեա կամ Գայլփսեա է գղ. Vesse de loup կոչուած գարշահոտ Սունկն, որ կ՚ըսուի եւս յունական բառիւ Lycoperdon, զոր Հ. Ալիշան կը գրէ Lycoperde ի թ. 367։

**ՄԷ.** Լտ. Consiligo. Աշորախոտ = Consiligo, ըստ Ռոշքեանի, բայց այս լտ. անուամբ բուսաբանք կ՚իմանան Ելլեբորոս եւ

կամ անոր ազգակից բոյս մի, Veratrum „: [Տես Veratrum, գղ. Vératre, ի Համարն ՃՀԸ]:

= Զգիտեմ ուստի է Հ. Ալիշանի գրածն զConsiligo, բառէ: Pasini կ՚ըսէ. Consiligo, իտ. Consiligine, sorta d'erba che nasce tra la segala [Հաճար կամ Աշորայ].:

**ՄԸ.** 718, երես 173. Cresson alénoa:

= Ուղղելի alénois ըստ Թ. 1430:

**ՄԹ.** 1491. Cresson amère:

= Ուղղելի amer:

**ՄԺ.** 558. Դավարա, նոյնպէս եւ ի Թ. 716, 1715. եւ ի Շալակին, երես 676, Թ. 558:

= Գրելի է Դուաարայ. տես Հայկ. Բառարանն. երեսք 6—7, 64:

**ՄԺԱ.** 352. Զապալթ ըւ-ասվտա = Հացհամեմ:

= Կարդա՛ Հապպը ըւ-սավտա. որ ի Թ. 227 գրեալ է Հապպ-ուլ-սեվտա եւ Հապա սաւտա, եւ Հայերէն կը կոչուի Արջնդեղ: Կելսիոս (Հ. Բ. 70) կը գրէ արբ. Habb esewda, զոր կը թարգմանէ Granum nigrum, յն. կը կոչէ Μελάνθιον, Μελάνσπερμον, լտ. Git (կամ Gith), Nigella [գղ. Nigelle ou Nielle cultivée], որ ենն անուանք Արջնդեղոյ. իսկ Հացհամեմ է գղ. Fenugrec:

**ՄԺԲ.** Զուան չէչ-նէ. 321, երես 86. "Թուրքն՝ զայս խոտս [բարձունենեակ] Զուան չէչ-նէ անուանէ „:

= Կարդա՛ Ղուան չէչ-նէ, այս ինքն Գօ-վուն չիչէյի = Գնդածաղիկ (ըստ Պօզաճեանի), որ

է գղ. Armoise, մինչդեռ Բարձունենեակն է գղ. Aurone. տես ի Համարն ԳՋ։

**ՄԺԳ.** Erica. 168. "Աստրեակ = լտ. Erica = գղ. Roquette„։

= կարդա՛ Eruca, իսկ Erica է գղ. Bruyère, զոր տես ի Թ. 965։

**ՄԺԴ.** 985. Լտ. Foenix = Արմաւ։

= կարդա՛ Phoenix։

**ԺՄԵ.** 906, 1155. գղ. Germendrée, իսկ 2024, Germandré։

= Ուղղելի Germandrée։

**ՄԺԶ.** "784. Թընքըլ, ըստ Տրապիզոնեցեաց Ձղեար պտուղն է„։

= Ջնջէ՛ զգարշելի թուրքին բառդ Թընքըլ, որ է "Տէօնքէլ, Տէ–նքէլ. Ձղեար„, պօղաճ։

**ՄԺԷ.** 796. "Թնպլի, Թնօպլի, Թնըպու„. Հին բժշկարանն գրէ. "Խարիկոն՝ Թնօպլի, Սունկ„։

= Հ. Ալիշան սխալած է զբառսն Թնօղէ եւ Սունկ ստորակետիւ զատելով, որոյ հետեւանք եղած է զսեռական Թնօղէ՝ ուղղական համարել, եւ գրել Թնօպլի, Թնպլի, Թնըպու։ "Խարիկոն, Թնօղէ Սունկն„, կ'ըսէ բժշկ. Ա. այս ինքն խարիկոն [գղ. Agaric] այն Սունկն է՝ որ Թնօղ ծառոյ վերայ կը բուսանի։ Նոյն ծառն է անտարակոյս զոր այլ բժշկարան կը կոչէ Ղամալախ (Հայբուսակ, Թ. 1800)։ Թնօղ թուլի արաբերէն Tannub = լտ. Pinus minor (Կելսիոս, Հ. Ա., 111). ազգ փիճի ծառոյ։ Ի Թ. 1800 ուղիղ կը գրուի Թնօղէ Սունկ։

**ՄԺԸ.** 824. *Թրթում* = Աղտոր։
= կարդա՛ Թէֆլամ, պրս. Թէ-ֆլէ-մ, Աղտոր (Գէորգ), գղ. Sumac. որ ի Թ. 72 կը գրուի Թաֆլմ, Տամարամ։

**ՄԺԹ.** 851. *Իգամեղերդ, Մեղերդ.* "*Իգամեղերդոյ* տակ... Հա՛ն *զիգամեղերդի* տակն...: Տես *Մեղերդ*":
= կարդա՛ "Իփամեղերդոյ... Հա՛ն զիփամեղերդոյ տակն .. Մեղերդ"։

**ՄԻ.** "868. Իշու կաթնակ"։
= Անտարակոյս "Իշու կաթնակ", ինչպէս կը գրէ Գարեգին Վ. Սրուանձտեանց, Մանանայ երես 445։

**ՄԻԱ.** 118, երես 41. գղ. Ligustique, լտ. Ligusticum։
= գղ. բուն բառն է Livèche։

**ՄԻԲ.** Լօրէ ղուռն՝ է գղ. Tilleul, ինչպէս գրեալ է ի Թ. 926 [տպ. Tillzuil], եւ ի Թ. 795։ Ի Թ. 766, Լօրէ սխալմամբ նոյնացեալ է ընդ Թանթրունի, գղ. Sureau։

**ՄԻԳ.** 1613, երես 357. "Յն. *Λυχνίς Կապոյտ* նշանակէ"։
= Ըստ Լիտրէի՝ գղ. Lychnide կամ Lychnis կոչեցեալ. բազմազգի ծաղկանց անունն է ի յունականէն "*Λυχνις*, lampe, à cause de la forme de la fleur"։

**ՄԻԴ.** 1131. Խամիրէ բոյս. "Խամիրէ՝ արաբ. եւ պրս. ինչպէս եւ մեր լեզուաւ՝ խմոր նշանակէ. բայց Հարկ է որ բուսեղէն մ'այլ ըլլայ, որ ինձ անծանօթ է"։

= Ըստ Րէստէնի՝ արաբ. խամիրէ = լտ. Hermodactylus: Տես Hermodactylus ի Համարն ձկթ:

**ՄԻԵ.** 1014. "Խաթաթ = Սեւ թրթոյ տեսակ:", Տես եւ ի Հալակին, երես 678, թ. 1014:

= Պրս. "Խաթաթ [= Իշոյ թութ]. է տեսակ ինն թթոյ, որ յոյժ փոքր եւ անհամ լինի", Գէորգ: — "Խէրթաթ, թթու սեւ թութ", նոյն:

**ՄԻԶ.** 1028. "Խարզահրա? Թիւնաւոր նիւթոց կարգը գրուած է ի Բժշկարանի, եւ հաւանօրէն բոյս է... Թերեւս նշանակէ վայրի կամ գէշ Զահրայ (Baccharis)", [Տես Baccharis ի Համարն ԶԳ:]

= Պրս. Խարզէհրէ [= Իշոյ թոյն] կը նշանակէ երկու ինչ. "1. Է տեսակ ինն ծառոյ, որոյ տերեւն լինի երկայն նման տերեւոյ Ուռւոյ, բայց թանձր քան զնա. զ.ր թէ ուտեն անասունք՝ առ ժամայն սատակին. որ կոչի Աղաղաճի: 2. Քէդէան, այս ինքն Այն բոյսն, որ կոչի թուրքերէն Էշաճէհնլ փարփաղէ, եւ արաբերէն Հանդալ: Եւ է յոյժ ազդու լուծողական ի փարել զմաղձ", (Գէորգ): Երկրորդս է որ կը յիշուի ի թ. 1789 Հայքիմաքի, Զմերուկ վայրի, արաբ. Հանդալ... ի Քերման Խար-զահրա ասեն", գղ. Coloquinte [տպ. Coloquinthe]: Իսկ ի թ. 1028 յիշատակեալն Խարզահրա՝ է Գէորգայ առաջին նշանակութիւնն, որ է գղ. Laurier-rose, Oléandre, ձիթն. տես ի թ. 591 Հայքիմաքի.

«Գէֆլա, [ինքն] երկու ցեղ է...: Ասած է, թէ այս խոտիս՝ Սամ ըլ-հիմար (Իշու թոյն) կ'ասեն, եւ պարսկերէն Խար շահրա կ'ասեն»: Տես եւ Ճէնէ ի թ. 1915:

**ՄԻԷ.** 3330. «Խէրպուէ = Փոքր Ղագուլէն է, ըստ Ամիրտովլաթայ, որ եւ կը կոչէ զայն Հալ, Հէլ»:

= Ղագուլէ՝ է պրս. «Գագուլէ» [գղ. Cardamome]. է գեղ ինչ, որ ունի երկուս տեսակս. մինն մեծ, եւ միւսն փոքր. եւ ի նոցանց մեծն Հալ ասի, եւ միւսն Հէլ» (Գէորգ). որով զանազանելի են Ամիրտովլաթայն Հալ (մեծն) եւ Հէլ (փոքրն): Կը գրէ դարձեալ Գէորգ. «Հէյլ, Մանր համեմ ինչ. որ եւ ասի Հէլ». տես եւ ի թ. 1685 Հայքուաքի, Հէլ, Հէլ: Նմանապէս եւ Խէրպուէ՝ է պրս. «Խիյրպուայ, համեմ ինչ» (Գէորգ). զոր Ամիրտովլաթ կը նոյնացնէ ընդ Հէլ (Հէյլ, Հէլ), եւ «Փոքր Ղագուլէն է» կ'ըսէ. այս ինքն գղ. Petit Cardamome, ինչպէս նշանակած է եւ Հ. Ալիշան, լտ. Cardamomum minus: Այս Խէրպուէ (Խիյրպուայ) է որ կը գրուի յԱշխարհագրութեան Խորենացւոյ Հրբուաք (տպ. 1865, երես 615. իսկ տպ. 1881, երես 44, Աէհէրէքուայէք), անտես մնացեալ ի Հ. Ալիշանէ. «Լինի անդ [ի Հնդիկս]... Հալուէ, Փաղանգամուշկ, Քափուր, Ճանդան, Նայիրուակ, Հրբուաք»: Կայ եւ ի թրգմ. Գ՛ղոց. «Հէլ, Խորտակ կակուլա». Խուրթակ[1] է պրս. Խիարթ, Մանր, զոր տես եւ ի Համարն ՃԺԶ, «Խուրթակ Ծոթորուն»:

